# ՇԱՐԱԿԱՆՔ

# ՀԱՅ. Ս. ԵԿԵՂԵՑՒՈՅ

Ա.

ԱՇԽԱՐՀԱԲԱՐԻ ՎԵՐԱԾԵՑ

ԵՐՈՒԱՆԴ Տ. ԱՆԴՐԷԱՍԵԱՆ

Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՍԱՐԸՆԵԱՆ ԵՒ ԸՆԿ.
Պապը ալի ճատտէսի, Թիւ 38

1902

# ՃԱՐԱԿԱՆՔ

# ՀԱՅ. Ս. ԵԿԵՂԵՑԻՈՅ



ԱՇԽԱՐՀԱԲԱՐԻ ՎԵՐԱԾԵՑ

ԵՐՈՒԱՆԴ Տ. ԱՆԴՐԷԱՍԵԱՆ

معارف نظارت جلیله‌سنك و مطبوعات داخلیه مدیریت علیه‌سنك
٦٦٨ نومرولی رخصتیه طبع اولنمشدر .



Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՍԱՐՂԵԱՆ ԵՒ ԸՆԿ.
Պապը ալի ճատտէսի, Թիւ 38

1902



# ԿԸ ՆՈՒԻՐԵՄ ՅԻՇԱՏԱԿԻՆ

## ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ՀՕՐՍ

## ՄՀՏԻ. ԳՐԻԳՈՐ Տ. ԱՆԴՐԷԱՍԵԱՆ(*)

*ՈՐԴԻ*

## ՄՀՏԻ. ՅԱՐՈՒԹԻՒՆ Տ. ԱՆԴՐԷԱՍԵԱՆԻ(**)

*ԵՒ ԹՈՌ*

## Տ. ԱՆԴՐԷԱՍ ՔԱՀԱՆԱՅ ԱՂԱ ԳՐԻԳՈՐԵԱՆԻ(***)

ԵՐՈՒԱՆԴ Տ. ԱՆԴՐԷԱՍԵԱՆ

1902 *Հոկտ.* 1
*ՍԿԻՒՏԱՐ*

---

(*) Ծնեալ ի Պարտիզակ յամին 1820 եւ մեռեալ յամին 1895
(**) Ծնեալ ի Պարտիզակ յամին 1786 եւ մեռեալ յամին 1858
(***) Ծնեալ ի Պարտիզակ յամին 1761 եւ մեռեալ յամին 1803

# ՔԱՆԻ ՄԸ ԽՕՍՔ

Բարեպաշտ եւ եկեղեցասէր հանրութեան փոքր ծառայութիւն մը մատուցանելու նպատակաւ, համարձակեցայ աշխարհաբարի վերածել մեր նախնի եկեղեցական սուրբ հայրերու շարականներուն մէկ մասը: Այս առաջին հատորիկիս մէջ ամփոփուած են Ս. Ծննդեան Ճրագալոյցի եւ նոյն աւուրց, եւ Տեառնընդառաջի շարականները, գրաբար եւ աշխարհաբար: Երկրորդ հատորով պիտի հրատարակեմ Մեծ Պահոց երեք կիրակիներու շարականները, նաեւ «Այսօր անճառ»ի կարգը: Երրորդ հատորի մը մէջ պիտի ամփոփեմ Ծաղկազարդի եւ Ս. Յարութեան շարականները, նաեւ Հարսանեաց եւ Ննջեցելոց սովորական շարականները, աշխարհաբարը միշտ գրաբար բնագրին հետ: Վերջին չորրորդ հատորով մը պիտի հրատարակեմ Ս. Խաչի վերացման, Վարագայ Խաչի եւ Գիւտ Խաչի շարականները, նաեւ համառօտ տեղեկութիւններ շարականաց հեղինակներուն վրայ: Ջանացինք կարելի եղածին չափ պարզ եւ դիւրըմբռնելի կերպով աշխարհաբարի վերածել: Թէ ո՛րչափ յաջողած ենք, կը պարտինք զայն գրաբարի մեր մտադիր ընթերցման եւ Հ. Աւետիքեանի Շարականաց Մեկնութեան:

**Ե. Տ. ԱՆԴՐԷԱՍԵԱՆ**

# ՇԱՐԱԿԱՆՔ
# ՀԱՅ. Ս. ԵԿԵՂԵՑԻՈՅ

## ԿԱՆՈՆ ԱՍՏՈՒԱԾԱՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ ՃՐԱԳԱԼՈՅՑԻՆ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԲՁ. (դ)

Ուրախացիր, սրբուհի, Գաբրիէլի աւետեօքն, որ քարոզեացն զգալուստ արքային տեառն ի յերկնից:

Ողջոյն ընդ քեզ, Մարիամ, ի քեզ սուրբ հոգին եկեսցէ, եւ զօրութիւն բարձրելոյն ի վերայ քո հովանասցի:

Որ ծնանելոցն է ի քէն իսրայելի առաջնորդ, եւ ընդհանուր քարոզի Աստուած հզօր անմահ բանն:

Ուրախ լեր բերկրեալ ամենասուրբ կոյս, որ ծնար աշխարհի զարդարութեան արեգակն, որ լուսաւորեաց զազգս որդւոց մարդկան:

Ուրախ լեր բերկրեալ դուռն կնքեալ, որ ծնար աշխարհի զթագաւորն Քրիստոս, որ նստի ի վերայ անճառուեստ աթոռոյ:

Գեղմն իմանալի զոր ետես Գեդէոն, յառաջ քան զայս հաւատացեալ իմանամք զանճառելի ծնունդ, եւ երկրպագեմք որ ի կուսէդ մարմնացաւ Աստուած:

Հ Որ դասուց երկնաւորաց անիմանալի, այսօր
Տձ հողեղինաց յայտնեցեր զծածկեալ խորհուրդ, օրհնեալ տէր Աստուած հարցն մերոց:

Որ բազմաչեայ քրոբէից անտեսանելի, կերպացեալ զմերս ի սրբոյ կուսէն տնօրինաբար, օրհնեալ:

Որ առաւել բարձրացեալդ ես յաւիտենից, մշտն-ջենաբուղխ, լցուցիչ եւ աղբիւր կենդանարար, օրհնեալ:

գ Զտէր օրհնեցէք բարձր արարէք զնա յաւիտեան:

Որ զկերպարանս ծառայի էառ, եւ զմեղս ի մարմ-նի իւրում դատապարտեաց, անդադար գովելով բարձր:

Որ այսօր մարմնացաւ ի սրբոյ կուսէն յաղագս ա-նիծիցն, եւ եբարձ զպատուհաս նախաստեղծին, ժո-ղովուրդք առաւել բարձր:

Որ ելն ի բարձունս գերեալ զզօրութիւն մահու, այսօր բաշխի անապականութեան պարգեւք մարդկան, քահանայք հոգեւոր երգով առաւել բարձր:

Ո Անկանիմք առաջի քո, Աստուածածին, եւ աղա-
ՔՅ չեմք զանարատ զկոյսդ:

Բարեխօսեա վասն անձանց մերոց եւ աղաչեա զմիածին որդիդ:

Փրկել զմեզ ի փորձութենէ եւ յամենայն վտանգից մերոց:

Տ Օրհնեմք զքեզ, Աստուած, ընդ անմարմնոցն դա-սուց, որ ի բարձունսդ ես բնակեալ, խնայեա ի քո արարածս:

Գովեմք զքեզ միածին՝ որդի եւ բանդ Աստուած, որ ի կուսէն մարմնացար, խնայ:

Բարեբանեմք սուրբ զհոգիդ որ նորոգողդ ես եւ կեանք, եւ միաբան ասասցուք փա՛ռք ի բարձունս Աս-տուծոյ:

ՄԿ Ծագումն հրաշալի որ անյայտ էր ի մէնջ եւ բանն
ՓՅ հայրական անըմբռնելի, հուր փայլակնացեալ եւ ի մարմնի բնակեցաւ, անվնաս պահելով զարարածս ամենայն:

Ծագումն հրաշագործ որ ի կուսէն ծագեցաւ, նառագայթելով զարարածս ամենայն, երկինք ցնծային եւ երկիրս ուրախանայր, եւ Քրիստոս Աստուած ընդ մարդկան շրջեցաւ:

Առ քեզ ապաւինիմք ամենասուրբուհի, գերագոյն եւ հրաշալի եւ բաշխող բարութեանց, աղբիւր ես ծարաւեաց եւ հանգիստ աշխատելոց, եւ եղեր վերընկալ աստուածային բանին:

ձՇ Զանճառելի լուսոյ մայր եւ զբնակարան անըս-
ԽՅ կզբնակից որդւոյն օրհնութեամբ մեծացուցանեմք:

Զանհաս տնօրէնութեան մայր, եւ զանձնաւոր տաճար Աստուծոյ բանին, օրհ.:

Զբոլորից փրկութեան մայր, որ զանտանելին էից ի յարգանդի եբարձ, զնա ամենեքեան օրհ:

---

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Ուրախ եղիր, ո՛վ սրբուհի, Գաբրիէլի բարի լուրին վրայ, որ քարոզեց երկնաւոր Թագաւորին գալուստը:*

*Ողջո՛յն քեզ, ո՛վ Մարիամ, սուրբ հոգին քու վրայ պիտի գայ, և բարձրեալ Աստուծոյ զօրութիւնը հովանի պիտի ըլլայ քու վրայ:*

*Նա որ պիտի ծնի քեզմէ իսրայէլի առաջնորդն է, բայց աշխարհի ամէն կողմերը պիտի քարոզուի նաև իբրև հզօր Աստուած, և իբրև անմահ բանն Աստուծոյ:*

*Ուրախ եղի՛ր և ցնծա՛, ո՛վ ամենասուրբ կոյս, որ արդարութեան արեւը ծնար աշխարհի համար, ա՛յն արեւը որ մարդկային ազգը լուսաւորեց ։*

*Ուրախ եղի՛ր և ցնծա՛, ո՛վ կնքուած դուռ, որ աշխարհի համար ծնար Քրիստոս Թագաւորը, որ անձեռագործ աթոռի վրայ կը նստի ։*

*Կը հաւատանք թէ անկէց առաջ Գեդէոնի տեսած հոգեւոր գզաթը այս անպատմելի ծնունդին նշանն էր, և կ'երկրպագենք Աստուծոյն որ քեզմէ՝ կոյսէդ մարմին առաւ ։*

*Հ* Դու որ անիմանալի ես երկնաւոր հրեշտակներուն, այսօր հողեղէն մարդոց յայտնեցիր մարդեղութեան ծածուկ խորհուրդը, օրհնեալ ես, ո՛վ մեր հայրերուն տէր Աստուածը ։

*Դու որ բազմաչեայ քերոբէներուն անտեսանելի ես, սուրբ կոյսէն մեր կերպարանքը առիր աստուածային կարգադրութեամբ, օրհ ։*

*Դու որ յաւիտենապէս բարձր ու փառաւոր ես, մշտաբուխ և կենդանարար աղբիւր, և կը լեցնես մարդկային կարօտութիւնը, օրհ ։*

*Օրհնեցէք Տէրը, և ի սպառ փառաւորեցէք զայն։*

*Միշտ գովեցէք և փառաւորեցէք զայն որ ծառայի կերպարանք առաւ, և իր մարմնոյն վրայ ջնջեց ադամական մեղքը ։*

*Ո՛վ ժողովուրդներ, փառաւորեցէք զայն որ այսօր սուրբ կոյսէն մարմին առաւ ադամական անէծքին պատճառաւ, և վերցուց նախաստեղծին տրուած պատիժը ։*

*Ո՛վ քահանաներ, հոգեւոր երգով փառաւորեցէք զայն որ երկինք ելաւ մահուան ոյժը գերի առնելով, և որ այսօր մարդոց կը բաշխուի իբրև անապական պարգև։*

Ո *Կը խոնարհինք քու առջեւդ, ո՛վ աստուածածին, և կ՚աղաչենք անարատ կոյսիդ։*

*Բարեխօսէ՛ մեր անձերուն համար, և աղաչէ՛ միածին որդւոյդ։*

*Որպէս զի փորձութիւններէ փրկէ զմեզ, ինչպէս նաև մեր բոլոր վտանգներէն։*

Տ *Կ՚օրհնենք զքեզ, ո՛վ Աստուած, անմարմին հրեշտակներուն հետ. քու արարածներուդ խնայէ՛ դուն որ երկինքը կը բնակիս։*

*Ո՛վ միածին որդի և բանդ Աստուած, կը գովենք զքեզ, որ կոյսէն մարմին առիր. խնայէ՛ քու արարածներուդ։*

*Կը դրուատենք զքեզ, ո՛վ սուրբ հոգի, որ կը նորոգես և կեանք կուտաս, և միաբերան ըսենք, փառաւորեա՛լ թող ըլլայ Աստուած որ երկինքը կը բնակի։*

ՄԿ *Հրաշալի ծագումը (Քրիստոս), որ մարդոցմէ անտեսանելի էր, հօր Աստուծոյ անըմբռնելի բանը (Քրիստոս), կրակի պէս երկինքէն փայլատակելով մարդկային մարմինի մէջ բնակեցաւ, առանց ո և է մնաս պատճառելու արարածներուն։*

*Նոյն հրաշալի ծագումը կոյսէն ալ ծագեցաւ լուսաւորելով բոլոր արարածները, երկինք կը խայտար և երկիրը կ՚ուրախանար, որովհետև Քրիստոս Աստուած մարդոց հետ պտըտեցաւ, անոնց մարմինն առնելով։*

*Քու բարեխօսութեանդ կ՚ապաւինինք, ո՛վ սուրբ Մարիամ, որ բոլոր արարածներէն բարձր ես, հրաշալի*

*եւ, բարիք կը սփռես, ծարաւիներուն աղբիւր ես, եւ յոգնածներուն ալ հանգստարան, որովհետեւ արգանդիդ մէջ ընդունեցիր Քրիստոսը ։*

ԺԶ *Օրհնենք ու փառաւորենք անպատմելի լոյսին մայրը, որ Աստուծոյ էակից որդւոյն բնակարան եղաւ։*

*Աստուածային անհասանելի կարգադրութեան մայրը, եւ Աստուածորդւոյն կենդանի տաճարը ։*

*Ամենքս կ՚օրհնենք ու կը փառաւորենք բոլոր արարածներուն փրկութեան մայրը, որ իր արգանդին մէջ կրեց ղայն զոր բոլոր արարածները չէին կրնար իրենց մէջ բովանդակել ։*



# ԿԱՆՈՆ ԾՆՆԴԵԱՆ ՔՐԻՍՏՈՍԻ

## ԱՌԱՋՆՈՅ ԱՒՈՒՐՆ

---

Աչ գէ ե Խորհուրդ մեծ եւ սքանչելի, որ յայսմ աւուր յայտնեցաւ, հովիւքն երգեն ընդ հրեշտակս, տան աւետիս աշխարհի:

Ծնաւ նոր արքայ ի Բեթղեհեմ քաղաքի, որդիք մարդկան օրհնեցէք զի վասն մեր մարմնացաւ:

Անքաւելին երկնի եւ երկրի ի խանձարուրս պատեցաւ, ոչ մեկնելով ի հօրէ ի սուրբ այրին բազմեցաւ:

Այսօր ցնծան երկինք ի վերուստ մեծապայծառ աւետօք, եւ արարածք ամենայն զգեցան հանդերձ փրկութեան:

Այսօր յայրին ընծայեցաւ Քրիստոս որդին Աստուծոյ, եւ հրեղինաց բազմութիւնքն յերկնից յերկիր վայր իջեալ:

Այսօր հովուացն տեսեալ զարդարութեան արեգակն, եւ ընդ հրեշտակս երգէին փառք ի բարձունս Աստուծոյ:

Ի հօրէ ծագեցար լուսաւորել զարարածս, արդարութեան արեգակն տէր փառք քեզ:

Ծնար ի յայրին, ընծայեցար Բեթղեհեմ, ար:

Հովուաց յայտնեցար երկրպագեալդ ի մոգուց, ար:

Եւ մեք երգեսցուք որ ի կուսէն մարմնացար, ար:

հ էջ Անսկիզբն էակից բանդ հօր, որ էիր յառաջ քան զյաւիտեանս, եւ եկիր ի փրկութիւն ստեղծուածոց քոց, զքեզ օրհնեմք Աստուած հարցն մերոց:

Ծնար ի կուսէ անճառ միութիւն, անբաժանելի եւ միշտ գոլով ոչ մեկնեցար ի հայրական ծոցոյ, զքեզ:

Ցնծութեամբ տօնեսցուք զծնունդ քո սուրբ, որ յայտնեցար մեզ լոյս ի լուսոյ, եւ լուսովդ քո լցեր զտիեզերս, զքեզ:

գ Գործք տեառն զտէր օրհնեցէք, եւ բարձր արարէք զնա յաւիտեան:

Զծնեալն ի սրբոյ կուսէն օրհնեցէք, եւ:

Զանճառելի զծնունդ փրկչին գովեցէք, եւ առաւել բարձր արարէք զնա յաւիտեան:

մ Ուրախ լեր աստուածածին, լոյս եւ փրկութեան մայր, զքեզ ընդունող լուսոյ մեծացուցանեմք:

Զքեզ լուսոյ մայր եւ կոյս, զքեզ զանձդ կենաց աստուածային, ձայնիւ ցնծութեամբ մեծացու:

Մայր սուրբ անարատ լուսոյն, հրեշտակային օրհնութեամբ պատուեալ զքեզ մեծացու:

ո Ամենիմաստ ամենից հայր բազմազեղ խնամող ստեղծող եւ տէր բոլորից, անեղ եւ էիցս էակ, զոր միշտ օրհնեն դասք անմարմնականացն յաւէժաբար հընչմամբ:

Որ կերպարան եւ կնիք հօր, առեալ վասն մեր ծառայի կերպ ի կուսէն, որ էն ի յաթոռ փառաց անտես վերնոցն, ի յայրին իջեալն եւ ի մսուր անբանից բազմեալ:

Զ'ի կուսէն մարմնացեալ բանն եկայք ժողովուրդք ընդ հովիւսն բարեբանեսցուք, եւ ընդ մոգուցն երկրպագեսցուք, ընդ երկնայինն զօրսն երգեսցուք փա՛ռք ի բարձունս Աստուծոյ:

տ Ճառագայթ եւ կերպարան էութեան հօր բանդ Աստուած, զքեզ բարեբանեմք ասելով, փա՛ռք ի բարձունս Աստուծոյ:

Որ միացար ի մարմնի անճառապէս ճշմարիտդ Աստուած զքեզ :

Որ զանիծիցն բարձեր զդատապարտութիւն, Քրիստոս Աստուած, զքեզ :

ՃԸ Սուրբ զաստուածածինն օրհնութեամբ մեծացու-
Ժ ցանեմք :

ԿՅ Աւետաւոր հրեշտակն աւետարանէր զծնեալ փրկիչըն ի սրբոյ կուսէն :

Ասէ ուրախ լեր բերկրեալդ, քանզի տէր տերանց է ընդ քեզ :

---

# ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Ո՜րքան մեծ և զարմանալի է այն խորհուրդը որ այսօր յայտնուեցաւ, հովիւները հրեշտակներուն հետ կ'երգեն, բարի լուր կուտան աշխարհի :*

*Բեթղեհէմ քաղաքին մէջ ծնաւ նոր Թագաւոր (Քրիստոս). ո՛վ մարդիկ, գոհութիւն մատուցէք, որովհետև մեզի համար մարմին առաւ :*

*Լաթի կտորուանքներու մէջ փաթթուեցաւ Նա զոր երկինք ու երկիր չէին կրնար կրել, հօրմէն չբաժնուելով նստաւ Բեթղեհէմի սուրբ պանդոկին մէջ :*

*Այսօր երկնային հրեշտակները կը խայտան վերէն, մեծ ու փառաւոր լուրը տալով, և բոլոր արարածները փրկութեան զգեստ հագան :*

*Այսօր աստուածորդին Քրիստոս նուէրներ ընդու-*

*-նեաց պանդոկին մէջ, և հրեղէն հրեշտակներուն բազում գունդերը երկինքէն երկիր իջան ։*

*Այսօր հովիւները արդարութեան արեւը տեսնելով հրեշտակներուն հետ կ'երգէին, փառաւորեա՛լ Թող ըլլայ Աստուած որ երկինքը կը բնակի ։*

*Ո՛վ Տէր, արդարութեան արև, փառաւորեալ եղի՛ր, որ հօր Աստուծմէ ծագեցար արարածները լուսաւորելու համար ։*

*Պանդոկին մէջ ծնար, ընծաներ ընդունեցիր Բեթղեհէմի մէջ, ո՛վ Տէր, արդարութեան արև, փառաւորեալ եղի՛ր ։*

*Հովիւներուն յայտնուեցար, մոգերէն երկրպագութիւն ընդունեցիր, ո՛վ Տէր, արդա ։*

*Մենք ալ երգեր երգենք քեզ, որ կոյսէն մարմին առիր, ո՛վ Տէր, արդա ։*

Է *Ո՛վ անսկիզբ և հօր Աստուծոյ հետ էակից եղող բան (Քրիստոս), որ յաւիտենապէս կայիր աշխարհի գոյութենէն առաջ, եկար հիմա փրկելու քու արարածները, կ'օրհնենք զքեզ, ո՛վ մեր հայրերուն Աստուածը։*

*Կոյսէն ծնար, ո՛վ անպատմելի միութիւն, առանց բաժնուելու և միշտ նոյն մնալով հայրական ծոցէն չզատուեցար, կ'օրհնենք ։*

*Ուրախութեամբ տօնե՛նք քու սուրբ ծնունդդ, որ լոյս յայտնուեցար մեզի լոյս Աստուծմէն, և քու լուսովդ լեցուցիր տիեզերքը, կ'օրհնենք ։*

*Ո՛վ տիրոջ արարածներ, գոհութիւն մատուցէք տիրոջ, և ի սպառ փառաւորեցէք զայն ։*

*Օրհնեցէք զայն որ սուրբ կոյսէն ծնաւ, և ի սպառ փառաւ ։*

*Գովեցէք փրկչին անպատմելի ծնունդը, և ի սպառ փառաւորեցէք զայն ։*

Մ *Ուրախ եղի՛ր, ո՛վ աստուածածին, որ լոյս ես քեզի ապաւինողներուն և փրկութեան մայր ես. կը փառաւորենք զքեզ որ լոյս Քրիստոսը ընդունեցիր ։*

*Ուրախութեամբ կը փառաւորենք զքեզ ո՛վ կոյս և լոյսին մայրը, աստուածային կեանքին գանձարանը ։*

*Ո՛վ անարատ լոյսին սուրբ մայրը, հրեշտակային օրհնութեամբ կը պատուենք և կը փառաւորենք զքեզ ։*

Ո *Ո՛վ ամէնուն ամենիմաստուն հայրը, որ բոլոր արարածները բազում գթութեամբ կը խնամես, դու ո՛չ մէկէն ստեղծուեցար, այլ բոլոր արարածները ստեղծեցիր. անմարմին հրեշտակները կ՚օրհնեն զքեզ մշտնջենաւոր ձայնով ։*

*Նա որ հօր Աստուծոյ կերպարանքն ու դրոշմն էր, մեզի համար ծառայի կերպարանք առաւ կոյսէն. նա որ հրեշտակներուն անտեսանելի է և փառքի աթոռին վրայ կը նստի՝ Բեթլեհէմի պանդոկին մէջ կ՚իջնէ և անբան անասուններուն մսուրին մէջ կը նստի ։*

*Ո՛վ ժողովուրդներ, եկէք հովիւներուն հետ գովաբանենք կոյսէն մարմին առնող բանը, և մոգերուն հետ երկրպագութիւն ընենք անոր, և երկնային զօրքերուն հետ երգենք. թող փառաւորեա՛լ ըլլայ Աստուած որ երկինքը կը բնակի ։*

Տ *Ո՛վ բանդ Աստուած, որ հօր Աստուծոյ բուն կերպարանքն ու անոր ճառագայթն ես, կը գովաբանենք զքեզ ու կ՚ըսենք. փառաւորեա՛լ թող ըլլայ Աստուած որ երկինքը կը բնակի ։*

*Ո՛վ ճշմարիտ Աստուած որ անպատմելի կերպով*

*մարդկային մարմինին միացար, կը գովաբանենք զքեզ ու կ'ըսենք. փառա։*

*Ո՛վ Քրիստոս Աստուած, որ ադամական անէծքին դատավճիռը վերցուցիր, կը գովաբանենք զքեզ ու կ'ըսենք. փառաւորեա՛լ Թող ըլլայ Աստուած որ երկինքը կը բնակի։*

ՃԸ *Օրհնե՛նք ու փառաւորե՛նք սուրբ աստուածածինը։*

*Բարի լուր տուող հրեշտակը կը քարոզէր սուրբ կոյսէն ծնած փրկիչը։*

*Կ'ըսէ. ուրախ եղի՛ր և ցնծա՛, որովհետև երկրաւոր տէրերուն տէրը քեզի հետ է։*



# ԿԱՆՈՆ ԵՐԿՐՈՐԴԻ ԱՒՈՒՐՆ

---

Աձ Այսօր բանն ի Հօրէ անմեկնելի եւ անճառելի
Գձ խորհրդով, ի ձեռն կուսական որովայնի տնօրի-
Ն նաբար յերկրի երեւեալ:

Մանուկ անժամանակ ի Հօրէ անսերմն ի կուսէ, ի գիրկս մօր գգուեցաւ այսօր արարիչն երկնի եւ երկրի:

Որ մաքրեացն զյորդանան եւ լուաց զմեղս աշխարհի, զոր օրհնեն անդադար արարածք ամենայն զէակիցն Հօր եւ Հոգւոյն:

Լոյս ի լուսոյ ծագեալ ի Հօրէ, եւ լուսաւորեաց զտիեզերս, ծնունդ անապական յանտուեր լուսոյն, զոր միշտ փառաւորեն դասք անմարմնոցն:

Յայտնի է ի Հրէաստանի Աստուած եւ ի Բեթղեհէմ ծնեալ յայրին, մանուկ անժամանակ ի Հօրէ, եւ ժամանակաւ գոյացեալ ծնեալ լինի Աստուած եւ մարդ:

Եւ Հովուացն տեսեալ զհրաշալի ծագումն աստեղն, փութապէս եկեալ տեսին մանուկ յանբանից մսուր, զոր միշտ փառաւորեն դասք անմարմնոցն:

Խնդա եւ ուրախ լեր անհարսնացեալ Մարիամ, քանզի որ ի քէն ծնաւ փրկիչ՝ տէր է օծեալ ի քաղաքի Դաւթի, զոր միշտ փառաւորեն դասք երջանիկ Հովուացն:

⁝ Ի կուսական որովայնէ ծնեալ մարմնով որ յա-
Գյ ռաջ քան զյաւիտեանս բանդ ի Հօրէ երգեսցուք,
տէր Աստուած, փառաւորեալ է անուն քո:

Ի քերոբէս բազմեալ ընդ Հօր անսկիզբն որդի անճառաբար տղայացեալ ի խանձարուրս պատեցար. երգես:

Ամենայն բարութեանց տուող ազգի մարդկան, եւ ի մոգուցն այսօր ընծայեցար. երգեա:

Գ Զտէր օրհնեցէք բարձր արարէք զնա յաւիտեան:

Որ յանճառելի աթոռ ընդ հօր փառակից բանն ի յերկրի երեւեցաւ. օրհ:

Որ ի կուսէ անապական թագաւոր ծնաւ Քրիստոս, եւ ի հրեշտակաց անդադար փառաբանելի Աստուած. Քահանայք օրհնեցէք:

Մ Լոյս լուսոյ մայր եւ կենարար բանին բնակարան, քեզ երանեցեն ազգ եւ ազինք ամենայն:

Ստեղծողին մայր եւ հնութեան կերպի նորոգողին, քեզ երա:

Լոյս ծագեցաւ ի քէն նստելոցս ի խաւարի. քեզ երա:

Ո Զահաւոր բարբառս վերնոցն հոգեւոր հնչմամբ երգով, ընկալեալ հովուացն օրհնէին զծնունդ եւ զծագումն յանմեկնելի լուսոյն:

Հրեշտակապետին աւետեօքն ընթացեալք ի յայրն տեսին զի նուաստացեալ էր անտեսն սերոբէից, մանուկ եդեալ յանքանից մսուր:

Դիտելով մոգուցն զփայլումն աստեղն, սա զԱստուած զուցակեալ լինի, զի ի տեսիլ մարմնացելոյն ժամանեալ նմա մատուցանելով զերկրպագութիւն:

Տ Դասք անմարմնականք երկնաւոր զօրացն ի մէջ հովուացն օրհնէին զծագումն լուսոյ մեծին ի հօրէ մեզ ի փրկութիւն:

Եւ մոգքն աստեղբ նշանաւ եկին ի Բեթլեհէմ երկրպագին տեառն եւ ի յայրին մատուցին զընծայս խորհրդոյ:

Եւ հովիւքն երգեն ընդ հրեշտակս փառք ի բարձունս մեծին Աստուծոյ, որ եկիր եւ փրկեցեր զտիեզերս քոյով յայտնութեամբդ:

ձշ Ամենազովելի եւ քան զերկինս բարձրագոյն, որ
կւ զանհասանելի զտէրն յորովայնի քում կրեցեր եւ ցնծութիւն աշխարհի ծնար. վասն որոյ ամենեքեան զքեզ միշտ մեծացուցանեմք:

Ամենապայծառ բերկրեալ միշտ կոյս, որ զանբաւելի զբանն անճառաբար յղացար, եւ զմարմնացեալն Աստուած ծնանելով ի քէն. վասն որոյ:

Ի լեռնէ վիմն առանց ձեռին հատեալ, Դանիէլ զուշակեաց զանսերմն զծնունդ քո հարսն երկնաւոր, մայր եւ յետ ծննդեան մնալով կոյս. վասն որոյ:

---

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Այսօր բանն Աստուած անքացատրելի և անպատմելի խորհրդով, կուսական որովայնին միջոցաւ երկրի վրայ երեւցաւ աստուածային տնօրինութեամբ։*

*Այսօր երկնքի և երկրի արարիչը մօր մը գրկին մէջ փայփայուեցաւ իբրև մանուկ, որ հօր Աստուծմէն առանց ժամանակի և կոյսէն ալ առանց սերմի ծնաւ։*

*Նա որ մաքրեց Յորդանանը և լուաց աշխարհի մեղքը, բոլոր արարածներէն անդադար կ'օրհնուի իբրև հօր Աստուծոյ և հոգի Աստուծոյ էակից։*

*Լոյս Քրիստոսը լոյս Աստուծմէն ծագելով տիեզերքը լուսաւորեց, ինք որ ծնած էր անխաւար լոյսէն. անմարմին հրեշտակները միշտ կը փառաւորեն զայն։*

*Բեթլէհէմի պանդոկին մէջ ծնելով իբրև Աստուած կը յայտնուի հրէաստանի մէջ. հօր Աստուծմէ առանց ժամանակի ծնած, այսօր ժամանակով կը ծնի իբրև Աստուած և իբրև մարդ։*

*Եւ հովիւները աստղին զարմանալի ծագումը տեսնելով, փութով եկան անբան անասուններուն մսուրին մէջ տեսնել մանուկը, զոր միշտ կը փառաւորեն հրեշտակները։*

*Ուրախ եղի՛ր և հրճուէ՛, ո՛վ Մարիամ, որ ամուսին չճանչցար, որովհետև քեզմէ ծնած փրկիչը օծեալ թագաւոր է, զոր միշտ կը փառաւորեն երջանիկ հովիւները։*

Հ *Երգեր երգե՛նք քեզ, ո՛վ բանդ Աստուած, որ հօրմէն ծնար յաւիտենապէս, աշխարհի գոյութենէն առաջ, և հիմակ ալ մարմինով ծնար կոյսին որովայնէն. ո՛վ տէր Աստուած, քու անունդ փառաւորեալ է։*

*Երգեր երգե՛նք քեզ, ո՛վ անսկիզբ որդի, որ հօր Աստուծոյ հետ քերովբէներուն վրայ կը նստիս, և անպատմելի կերպով մարդ ըլլալով լաթի կտորուանքներու մէջ փաթթուեցար. ո՛վ տէր Աստուած, փառա։*

*Երգեր երգե՛նք քեզ, որ մարդկային ազգին կուտաս ամէն բարութիւնները, և այսօր նուէրներ ստացար մոգերէն. ո՛վ տէր Աստուած, փառա։*

*Օրհնեցէք տէրը և ի սպառ փառաւորեցէք զայն։*

*Օրհնեցէք և փառաւորեցէք բանն Աստուածը, որ հօրը հետ միեւնոյն փառքով անպատմելի աթոռին վրայ ըլլալով՝ երկրի վրայ երեւցաւ։*

*Ո՛վ քահանաներ, օրհնեցէք Քրիստոսը, որ անապական կոյսէն թագաւոր ծնաւ, և իբրև Աստուած անդադար կը փառաբանուի հրեշտակներէն։*

Մ *Ո՛վ լոյս Քրիստոսին լոյս մայրը, և կենդանաբար բանին բնակարանը, բոլոր ազգերն ու ցեղերը քեզի երանի պիտի տան։*

*Դու որ մայր եղար ստեղծողին և աղամական հին կերպարանքը նորոգողին, բոլոր ազգերն ու ցեղերը քեզի երանի պիտի տան։*

*Քեզմէ լոյս ծագեցաւ մեզի որ խաւարի մէջ նըստած էինք. բոլոր ազգերն ու ցեղերը քեզի երանի պիտի տան,*

Ո *Հովիւները հրեշտակաց հոգեւոր երգերուն անհաւոր ձայները լսելով կ'օրհնէին Քրիստոսը, որ ծնաւ և ծագեցաւ հօր Աստուծոյ անբաժանելի լոյսէն։*

*Հրեշտակապետին տուած բարի լուրին վրայ պանդոկը վազելով, տեսան որ խոնարհած էր նա որ սերովբէներէն անտեսանելի է, և իբրև մանուկ՝ անբան անասուններու մսուրին մէջ զետեղուած էր։*

*Մոգերը տեսնելով աստղին փայլիլը, հասկցան թէ անիկա կը ցուցնէ որ Աստուած ծնած է, որպէսզի հասնին շուտով և տեսնեն մարմին առնողը, և երկրպագութիւն ընեն անոր։*

Ց *Երկնաւոր զօրքերուն անմարմին դունդերը հովիւներուն մէջտեղ կեցած կ'օրհնէին մեծ լոյսը (Քրիստոս), որ հօրմէն ծագեցաւ զմեզ փրկելու համար։*

*Եւ մոգերը աստղին նշանին վրայ Բեթլէհէմ գալով երկրպագութիւն ըրին տիրոջ, և պանդոկին մէջ անոր մատուցին խորհրդաւոր նուէրները։*

*Եւ հովիւները կ'երգեն հրեշտակներուն հետ. փառաւորեալ եղի՛ր, ո՛վ մեծդ Աստուած, որ երկինքը կը բնակիս, որ եկար և յայտնուելով տիեզերքը փրկեցիր։*

ՃՆ *Ո՛վ Մարիամ, որ կը գովուիս ամէնէն և երկնային հրեշտակներէն ալ բարձր ես, որ քու որովայնիդ մէջ կրեցիր անհիմանալի տէրը, զոր աշխարհի ուրախու-*

*թեան համար ծնար . ուստի մենք ամենքս միշտ կը փառաւորենք զքեզ ։*

*Ո՛վ դու, որ բոլորովին պայծառ ես և ուրախ, և միշտ կոյս մնացիր, որ անպատմելի կերպով յղացար անչափելի բանն Աստուածը, և քեզմէ ծնար մարմնառնող Աստուածը . ուստի ։*

*Ո՛վ երկնաւոր հարս, Դանիէլ մարգարէն գուշակեց թէ առանց սերմի պիտի ծնէիր դուն ; ասոր իբրև նշան ցոյց տալով այն քարը, որ լեռնէն փրթաւ առանց մարդու գործակցութեան (Նաբուգոդոնոսորի երազին մէջ), մայր եղար և կոյս մնացիր ծնելէդ վերջն ալ . ուստի մենք ամենքս միշտ կը փառաւորենք զքեզ ։*



# ԿԱՆՈՆ ԵՐՐՈՐԴԻ ԱՒՈՒՐՆ

ԱՀ Էակից հօր եւ հոգւոյն անսկիզբն որդի, ան-
ՓԷ մայր յառաջնումն անդրանիկ եւ ընդ հօր յա-
Ե ւիտեան:

Ի ծոցոյ հօր առաքեալ եղեալ ի մսուր անբանից, բանդ Աստուած յայտնեալ:

Քրիստոս ծնեալ ի քաղաքի Դաւթի, քարոզեն հովիւքն ընդ հրեշտակս, եւ մոգք հանդերձ աստեղբն:

Որ զմարմնացեալն տիրաբար ի յորովայնի քում կրեցեր, ուրախ լեր, անհարսնացեալ մայր:

Որ զանստանելին էից ի յարգանդի անապականաբար կրեցեր, ուրա:

Որ զարարչական բանն գոյացեալ ստուգապէս աշխարհի ծնար, ուրա:

Հ Սքանչելագործ Աստուած զքեզ բարեբանեմք, որ
ՐԷ ի քրոբէական աթոռդ նստիս, Աստուա՛ծ հարցն մերոց:

Որում ոչ բաւեն երկինք ընդունիլ զանքաւելի ըզքնութիւնդ, յարգանդի կուսին բնակեցար, ծնար անճառապէս, Աստուած հարց:

Յոր վեցթեւեանն սրովբէքն ոչ իշխէին հայիլ ի քո աստուածութիւնդ, տեսանելով ի գիրկս կուսին զարմացեալք օրհնէին զքեզ, Աստուած հարց:

Գ Զտէր օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան:

Որ ի կուսէ անապական բազմաւոր ծնաւ Քրիստոս Աստուած, յորմէ դողան իմանալի զօրութիւնքն, օրհնեցէք ժողովուրդք եւ բարձր:

Որ մկրտեցաւն ի յորդանան եւ լուաց զտիեզերս ի մեղաց, վկայեալ ձայնիւ հօր եւ երեւմամբ սուրբ հոգւոյն, օրհնեցէք քահանայք, առաւել բարձրացուցէք զնա յաւիտեան։

Մ Աստուածածին սուրբ կոյս անհարսնացեալ Մարիամ, որ օրհնեալդ ես ի կանայս, զքեզ օրհնեմք միշտ որ արժանիդ ես մեծացուցանեմք։

Անապական տաճար եւ առագաստ լուսոյ, ի քեզ փեսայացեալ բանն կենաց բնակեցաւ, զքեզ։

Հուրն կենդանի որ ի մորենին վառեցաւ, զոր անվնաս յարգանդի քում կրեցեր եւ ծնար Աստուած եւ մարդ, զքեզ։

Ո Որ կերպարան հօր եւ արարչական բանդ, վասն փրկութեան ազգի մարդկան այսօր ի կուսէ զկերպարանս ծառայի զգեցար մարդասիրապէս, քո ամենակեցոյց գալստեամբդ ողորմեա՛ մեզ Աստուած։

Որ յանմատոյց լուսոյ ծագեցեալ ընդ հօր եւ սուրբ հոգւոյն, ի քրովբէականն հանգչէիր յաթոռ, այսօր խանձարրօք պատեցար եւ յանբանից մսուր եդար, մարդասիրապէս։

Որ եկիր ի փրկութիւն ազգի մարդկան բազմաւոր փառաց քո անճառ խոնարհութեամբդ, այսօր զմեղօք դատապարտեալ անձն իմ ի մահ նորոգես ի կեանդ յաւիտենից, մարդասէր։

Տ Քրիստոս ծնեալ այսօր ի Բեթղեհեմ՝ ի յայրին, եւ դասք վերին զուարթնոցն սոսկացեալ զարմացեալ կային, զի տեսին մարմնով ծնեալ զբանն Աստուած։

Նոր սքանչելիք եղեն այսօր ի Բեթղեհեմ 'ի յայրին, կուսի ծնանիլ Աստուած եւ մարդ, անապական մնալով կուսական որովայնին, զի տեսին։

Աստղն զուշակեր մոգուցն առ ի բերել զընծայս աստուածութեանն, եւ հովիւքն ընդ հրեշտակս երգէին ասելով, փա՛ռք ի բարձունս Աստուծոյ, որ առաքեաց ի փրկութիւն մեզ զԲանն Ա՛ստուած:

ՃՇ Անսկզբնական բանին հօր բնակարան, տաճար
ԻՅ եւ առագաստ տեղի անտանելի լուսոյն, զքեզ
Ս մեծացուցանեմք արժանապէս երգով, աստուածամայր եւ կոյս:

Յորմէ կենդանաստեղծեալ յանեղէն հաստեցան ամենայն եղականքս, անսերմնապէս տղայացաւ յորովայնի քում, եւ ծնաւ առ ի քէն մարմնացեալ Աստուածն բոլորից, զքեզ:

Յորմէ զարհուրեալ դողային դասք վերին զուարթնոցն, տղայապէս առ ընկալեալ բարձեր ի գիրկս, եւ արբուցեր որպէս մայր ստացողին զքեզ զկուսական քո սուրբ զկաթն, զքեզ:

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Ո՛վ անսկիզբ որդի, որ հօր Աստուծոյ և հոգի Աստուծոյ հետ էակից ես, առաջին անգամ առանց մօր ծնար հօր Աստուծմէ իբրև միածին, և յաւիտենապէս հօր Աստուծոյ հետ ես:*

*Ո՛վ բանդ Աստուած, հօր ծոցէն ղրկուելով յայտնապէս դրուեցար անբան անասուններու մսուրին մէջ:*

*Հովիւները հրեշտակներուն հետ և մոգերը աստղին հետ կը քարոզեն թէ Քրիստոս ծնաւ Դաւիթի քաղաքին մէջ:*

Ուրախ եղի՛ր, ո՛վ մայր, որ ամուսին չճանչցար, և քու որովայնիդ մէջ կրեցիր զայն որ մարմին առաւ իր ազատ կամքով ։

Որ առանց ապականութեան արգանդիդ մէջ կրեցիր զայն, զոր չեն կրնար կրել աշխարհի բոլոր արարածները, ուրախ եղի՛ր, ո՛վ մայր, որ ամուսին չըճանչցար ։

Որ ստուգիւ կեանք տալով ծնար զայն, Բանը, որ աշխարհի ստեղծագործութեան մասնակից է. ուրախ եղիր ո՛վ մայր, որ ամուսին չճանչցար ։

Հ  Կը գովաբանենք զքեզ, հրաշագործ Աստուած որ քերոբէներու աթոռիդ վրայ կը նստիս, ո՛վ մեր հայրերուն Աստուածը ։

Կոյսին արգանդին մէջ բնակեցար և անպատմելի կերպով ծնար դուն, որուն անչափելի բնութիւնը չի կրնար կրել երկինք, ո՛վ մեր ։

Վեցթեւեան սերոբէները չէին համարձակեր քու աստուածութեանդ նայիլ, հիմա կոյսին գրկին մէջ տեսնելով զքեզ զարմանքով կ'օրհնէին, ո՛վ մեր ։

Օրհնեցէք տէրը և ի սպառ փառաւորեցէք զայն ։

Ո՛վ ժողովուրդներ, օրհնեցէք և փառաւորեցէք Քրիստոս Աստուածը, որ անապական կոյսէ թագաւոր ծնաւ, որմէ կը դողան երկնային զօրքերը ։

Ո՛վ քահանաներ, օրհնեցէք և ի սպառ փառաւորեցէք զայն որ Յորդանանի մէջ մկրտուեցաւ և տիեզերքը մեղքերէն լուաց, հօր Աստուծոյ ձայնը վկայեց, և սուրբ հոգին երեւցաւ ։

Մ  Ո՛վ աստուածածին սուրբ կոյս Մարիամ, որ ամուսին չճանչցար, կիներուն մէջ օրհնուած ես դուն -

զքեզ միշտ կ՚օրհնեմք եւ կը փառաւորեմք, որովհետեւ արժանի ես ։

Անապական տաճար ես դուն եւ լոյսին բնակարանն ես, կեանք տուող բանն Աստուած փեսայանալով քու մէջդ բնակեցաւ. զքեզ միշտ կ՚օրհ ։

Առանց վնասուելու քու արգանդիդ մէջ կրեցիր կենդանի կրակը, որ Մովսէսի տեսած մորենիին մէջ վառեցաւ, եւ զայն ծնար իբրեւ Աստուած եւ մարդ. զքեզ միշտ կ՚օրհ ։

Ռ Ո՛վ բանդ Աստուած որ հօր Աստուծոյ կերպարանքը կը կրես եւ ստեղծագործութեան մասնակից եղար, այսօր ալ մարդկային ազգին հոգեւոր փրկութեանը համար մարդասիրութեամբ ծառայի կերպարանք առիր կոյսէն. ո՛վ Աստուած, ողորմէ՛ մեզի շնորհիւ քու գալուստիդ որ կեանք կուտայ ամէնուն ։

Դու որ հօր Աստուծոյ եւ սուրբ Հոգիին հետ անմատչելի լուսով ծածկուած՝ քերոբէներու աթոռին վրայ կը հանգչէիր, այսօր մարդասիրութեամբ լաթի կտորուանքներով փաթթուեցար, եւ անբան կենդանիներու մսուրին մէջ դրուեցար. ո՛վ Աս ։

Դու, ո՛վ փառաւոր Թագաւոր, որ անպատմելի խոնարհութեամբ եկար մարդկային ազգին հոգիները փրկելու, այսօր ալ մարդասիրութեամբ յաւիտենական կեանքովդ նորոգէ՛ իմ անձս, որ մեղքերով մահուան դատապարտուած է. ո՛վ Աստուած, ողորմէ՛ մեզի շնորհիւ քու գալուստիդ որ կեանք կուտայ ամէնուն ։

Տ Այսօր Քրիստոս ծնաւ Բեթլէհէմի պանդոկին մէջ, եւ երկնային հրեշտակներուն գունդերը սարսափած զարմացած կը մնային, որովհետեւ տեսան որ բանն Աստուած մարմինով ծնած էր ։

*Այսօր Նոր հրաշք մը տեղի ունեցաւ Բեթլեհէմի պանդոկին մէջ. կոյս մը մէկը ծնաւ որ թէ՛ Աստուած է և թէ մարդ, և իր կուսական որովայնն ալ անապական մնաց, որովհետև։*

*Աստղը նշան մ՛էր մոգերուն՝ աստուածութեան յատուկ ընծաներ բերելու համար, և հովիւները հրեշտակներուն հետ կ՛երգէին ըսելով. փառաւորեա՛լ թող ըլլայ Աստուած որ երկինքը կը բնակի, և բանն Աստուածը ղրկեց զմեզ փրկելու համար։*

ԺԸ *Ո՛վ սուրբ կոյս որ բնակարան եղար անեղին Աստուածորդւոյն, և անչափելի լոյսին տաճար եղար և ներքին սենեակ. արժանաւոր երգերով կը փառաւորենք զքեզ իբրև աստուածամայր և իբրև կոյս։*

*Առանց սերմի քու որովայնիդ մէջ յղացաւ Նա որմէ ստեղծուեցան բոլոր արարածները՝ ինք առանց ստեղծուած ըլլալու, և բոլոր արարածներուն Աստուածը քեզմէ ծնաւ մարմին առնելով. արժանաւոր երգերով կը փառաւորենք զքեզ իբրև աստուա։*

*Գրկիդ մէջ առնելով կրեցիր իբրև մանուկ զայն որմէ կը սոսկային և կը դողային երկնային հրեշտակները, և քու կուսական սուրբ կաթդ իբրև մայր խըմցուցիր անոր որ զքեզ ստեղծեց. արժանաւոր երգերով կը փառաւորենք զքեզ իբրև աստուածամայր և իբրև կոյս։*



# ԿԱՆՈՆ ՉՈՐՐՈՐԴԻ ԱՒՈՒՐՆ

---

ԱՀ Այսօր Գաբրիէլ ցնծութեամբ երգեաց սրբոյ կու-
Փձ սին աւետիս բերկրեաց ասելով, որ ծնաւ զփըր-
Բ կիչ անձանց մերոց:

Անքաւելին երկնի եւ երկրի ի կուսական արգանդէ մեզ կեանք յայտնեցաւ, Աստուած այցելու մարդկան:

Յառաջընթաց փայլումն լուսատեսիլ աստեղն մոգուցն հետեւելով նշանի ի ծնունդ աստուածորդւոյն:

Այսօր Գաբրիէլ հրեշտակն ցնծութեամբ երգեաց առ կոյսն սուրբ, ասէ, ուրախ լեր բերկրեալդ տէր ընդ քեզ:

Այսօր աւետիք հրեշտակապետին ցնծութեամբ լցին զկոյսն սուրբ, քանզի էջ միածինն յարգանդ կուսին:

Այսօր տիեզերք պայծառացան աւետեօք սրբոյ կուսին, քանզի բանն մարմին եղեւ եւ բնակեաց ի մեզ:

Հ Որ ի ծոցոյ հօր բանդ Աստուած անսկիզբն, յար-
Տէ գանդի կուսին բնակիլ յանձն առեր, զքեզ բա-
րեբանեմք Աստուած հարցն մերոց:

Որ յանարուեստ աթոռ նստիս եւ ընդ հօր ես յէութեան, յանբանից մսուր եդար թագաւոր փառաց, զքեզ:

Որ ի քառակերպիցն երեքսրբեան ձայնիւ անդադար օրհնաբանիս, ի մոգուց պատարագօք պատուեցար յայրին, զքեզ:

Գ Զտէր օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան:

Զթագաւորն անմահ Քրիստոս զէակից հօր եւ հոգւոյն որ տղայացաւն այսօր յանարատ ի սուրբ կուսէն. փրկելով զմեզ, ժողովուրդք օրհ:

Արարիչն արարածոց Քրիստոս փառակից Հօր եւ Հոգւոյն, այսօր մկրտիլ ի յանձն էառ ի ձեռաց հողեղինին՝ սրբելով զմեզ, քահանայք օրհնեն:

Մ Զքեզ աստուածածին աղբիւր անսպառ լուսոյն որ լուսաւորէ զհաւատացեալս, միաբանական ձայնիւ երգով մեծացուցանեմք:

Դու պարծանք կուսութեան մարդկան, դու ուրախութիւն հրեշտակաց, դու բարձող անիծիցն, վասն որոյ զքեզ աստուածածին մեծացուցանեմք:

Դու ճշմարիտ արեւելք արեգականն արդարութեան յորմէ ծագեաց փրկութիւն տիեզերաց, միա:

Ո Զքեզ աղաչեմք անսկզբնակից Հօր որդի, որ այսօր նախաստեղծին բնութեամբ ի կուսէն ծնար Աստուած եւ մարդ, ողորմեա մեզ:

Առ քեզ պաղատիմք էակից Հօր որդի որ այսօր ի մսուր եղար եւ ի հրեշտակաց պաշտուեցար Աստուած եւ:

Ի քէն հայցեմք ճշմարիտ սուրբ հոգի, որ այսօր աղաւնակերպ երեւմամբ յայտնեցար աշխարհի Աստուած, ողորմեա մեզ:

Տ Որ ի հրեղէն աթոռ ընդ Հօր ես բնակեալ եւ ի հրեշտակաց սպասաւորեալ, այսօր կամաւ Հօր ի յերկրի երեւեցար մարմնով կուսական ծննդեամբ, զքեզ ընդ զօրս անմարմնոցն անդադար օրհնաբանեմք:

Յորմէ զարհուրեալ դողան սրոբէագունդ չորք աթոռոց, թեւասքօղելով ծածկեն զերեսս իւրեանց, այսօր տղայաբար ի կուսական ստեանցն կերակրեցար մարդասիրապէս, զքեզ:

Որ յանպատում փառաց խոնարհեցար յերկիր, ախտակիր եղեր հողեղէն բնութեանս, այսօր զմեղուցեալ

զնախահայրն կենագործեցեր ի կեանս յաւիտենից մարդասիրապես , զքեզ :

ձէ Զքեզ կոյս եւ մայր եւ բնակարան աստուածա-
բյ յին ներմարդութեան , զոհաբանեմք եւ վերոր-
ր հնեմք զեղեալ փրկող կենդանութեան ազգի մարդկան , վասն որոյ զքեզ աստուածածին եւ կոյս բարեբանեմք զմայր եւ զաղախին փրկչին մերոյ :

Ծնունդն հօր եւ հինաւուրց անժամանակն յաւիտենից , ժամանակաւ յորովայնի քում բնակեցաւ եւ ի հօրէ ոչ մեկնեցաւ , վասն որոյ զքեզ :

Ծնեալն ի քէն ի խաչ ելեալ , եւ ի յաթոռ փառաց ընդ հօր , անարգեալ ի մարդկանէ , փառաւորութեամբ էութեամբ երկրպագեալ , վասն :

Զքեզ ոչ միայն որդիք մարդկան՝ այլ եւ վերին զօրութիւնք , դասք անմարմնոց հոգեղինաց հրեղինաց զըուարթնոց եւ հրեշտակաց , զոհաբանեն եւ վերորհնեն եւ փառաւորեն զմայր եւ զաղախին փրկչին մերոյ :

---

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Այսօր Գաբրիէլ հրեշտակը ուրախութեամբ բարի լուր մը երգեց , « ուրախ եղի՛ր » ըսելով սուրբ կոյսին, որ մեր անձերուն Փրկիչը ծնաւ :*

*Աստուած մարդոց այցելութեան եկաւ , և Նա զոր երկինք և երկիր չէին կրնար կրել , կոյսին արգանդէն երեւան եկաւ իբրեւ կենսատու :*

*Մոգերը հետեւեցան իրենց առջեւէն գացող լուսապայծառ աստղին , աստուածորդւոյն ծնունդին նշան համարելով զայն :*

*Այսօր Գաբրիէլ հրեշտակը ուրախութեամբ երգեց սուրբ կոյսին, ըսաւ՝ ուրախ եղի՛ր և՛ խնդա՛, Տէրը քեզի հետ է ։*

*Այսօր հրեշտակապետին տուած բարի լուրը խնդութեամբ լեցուց սուրբ կոյսը, որովհետև Աստուծոյ միածին որդին կոյսին արգանդին մէջ իջաւ ։*

*Այսօր աշխարհ համօրէն ուրախութենէն փայլեցաւ սուրբ կոյսին տրուած բարի լուրին վրայ, որովհետև բանն Աստուած մարմին եղաւ և մեր մէջ բնակեցաւ ։*

Հ *Ո՛վ անսկիզբ բանդ Աստուած, որ Հօր ծոցէն ծնունդ առիր, հիմակ ալ յանձն առիր կոյսին արգանդին մէջ բնակիլ. կը գովաբանենք զքեզ, ո՛վ մեր հայրերուն Աստուածը ։*

*Ո՛վ փառաւոր Թագաւոր, որ անձեռագործ աթոռի վրայ կը նստիս, և Հօր Աստուծոյ հետ էակից ես, այսօր անբան անասուններու մսուրին մէջ դրուեցար. կը գովաբանեմք ։*

*Մոգերէն պատուուեցար պանդոկին մէջ դու, զոր կ՚օրհնեն միշտ չորեքկերպեան հրեշտակները, երեք անգամ աղաղակելով, սո՛ւրբ, սո՛ւրբ, սո՛ւրբ. կը գովա ։*

*Օրհնեցէք Տէրը, և ի սպառ փառաւորեցէք զայն ։*

*Ո՛վ ժողովուրդներ, օրհնեցէք և ի սպառ փառաւորեցէք Քրիստոս անմահ Թագաւորը, որ Հօր Աստուծոյ և Հոգիի Աստուծոյ հետ էակից է, և այսօր սուրբ կոյսէն ծնաւ և զմեզ փրկեց ։*

*Ո՛վ քահանաներ, օրհնեցէք և ի սպառ փառաւորեցէք արարածներուն արարիչ Քրիստոսը, որ Հօր Աստուծոյ և Հոգիի Աստուծոյ հետ միևնոյն փառքն ունի, և այսօր յանձն առաւ հողեղէն մարդու ձեռքերէն մկրտուիլ և սրբեց զմեզ ։*

Մ Միաբերան երգերով կը փառաւորենք զքեզ ո՛վ աստուածածին, անապականելի լոյսին աղբիւրը, որ հաւատացեալները կը լուսաւորէ։

Դու մարդոց մէջ կուսութեան պարծանքն ես, դու ուրախութիւն պատճառեցիր հրեշտակներուն, դու աղամական անէծքը վերցուցիր. ուստի, ո՛վ աստուածածին, կը փառաւորենք զքեզ։

Արդարութեան արեւը ճշմարտապէս քեզմէ ելաւ, և քեզմէ ծագում առաւ տիեզերքին փրկութիւնը. միաբերան երգերով կը փառաւորենք։

Ո Կ'աղաչենք քեզի, ո՛վ որդի, որ հօրդ պէս սկիզբ չունիս, և այսօր Ադամին բնութեամբ կոյսէն ծնար թէ՛ իբրև Աստուած և թէ իբրև մարդ. ողորմէ՛ մեզի։

Կը պաղատինք քեզի, ո՛վ որդի, որ հօրդ հետ նոյն էութիւնը ունիս և այսօր մսուրին մէջ դրուեցար եւ հրեշտակներէն պատուուեցար թէ՛ իբրեւ Աստուած և թէ՛ իբրեւ մարդ. ողորմէ՛ մեզի։

Կը խնդրենք քեզմէ, ո՛վ ճշմարիտ սուրբ Հոգի, որ այսօր աղաւնիի պէս երեւելով՝ իբրեւ Աստուած յայտնուեցար աշխարհին. ողորմէ՛ մեզի։

Տ Դու որ հօր Աստուծոյ հետ հրեղէն աթոռի վրայ կը բնակիս և հրեշտակներուն իբրեւ սպասաւոր կը գործածես, այսօր հօր Աստուծոյ յօժարութեամբ երկրի վրայ մարմինով երեւցար կոյսէն ծնելով. անմարմին հրեշտակներուն հետ զքեզ միշտ կ'օրհնենք ու կը գովենք։

Քեզմէ կը զարհուրին և կը դողան սերովբէներուն զունդերը, եւ իրենց թեւերով երեսնին կը ծածկեն. բայց այսօր ի՜նչ քու մարդասիրութեանդ տղու մը պէս կոյսին ստինքներէն կերակրուեցար, անմահ։

*Դու որ անպատմելի փառքէդ երկրի վրայ իջար, մեր հողեղէն բնութեան ախտերը կրեցիր, այսօր մարդասիրութեամբ յաւիտենական կեանքիդ մէջ նորոգեցիր մեղաւոր Ադամը. անմար։*

ձՇ *Կ'օրհնենք ու կը գովենք զքեզ, ո՛վ կոյս, աստուածային մարդեղութեան մայր ու բնակարան, որ մարդկային ազգին կենդանութեան գործիքը եղար. ուստի կը գովաբանենք զքեզ, ո՛վ աստուածածին եւ կոյս, մեր Փրկչին թէ՛ մայրը և թէ աղախինը։*

*Հօր Աստուծոյ ծնունդը, որ յաւիտենական է եւ անժամանակ է, ժամանակի մը համար քու որովայնիդ մէջ բնակեցաւ, բայց հօր Աստուծմէ չզատուեցաւ. ուստի կը գովաբան։*

*Քեզմէ ծնածը թէև խաչ ելաւ, սակայն հօր Աստուծոյ հետ փառքի աթոռին վրայ էր. թէև մարդոցմէ անարգուեցաւ, սակայն իր աստուածային էութեան համար հրեշտակները երկրպագութիւն կ'ընէին և փառք կուտային անոր, ուստի կը գովաբ։*

*Ո՛չ միայն մարդիկ, այլ և երկնային զօրքերը, անմարմին, հոգեղէն, հրեղէն, արթուն հրեշտակներուն գունդերը կը գովաբանեն, կ'օրհնեն և կը փառաւորեն զքեզ, մեր Փրկչին թէ՛ մայրը և թէ աղախինը։*



# ԿԱՆՈՆ ՀԻՆԳԵՐՈՐԴԻ ԱՒՈՒՐՆ

Աձ ձյ Բ Այսօր որ յաթոռ փառաց ընդ հօր ծնանի ի սըր-բոյ կուսէն, մարմնացեալ բանն ծնանելով ըզ-տիեզերս յորդեգրութեան շնորհն :

Այսօր անպարագրելի բանն հօր բազմի ի մսուր անբանից բոլորից տէրն, եւ ի վերայ քերովբէիցն հանգչի:

Որ նոյն ինքն է ճառագայթ փառացն հօր, ի յով-հաննէ հայցէր մկրտիլ ի յորդանանու յորձանսն, առա-քելական կոչմամբ զտիեզերս հրաւիրելով :

Զծնեալն ի սրբոյ կուսէն ընկալցուք ի սիրտս մեր հաւատով, որպէս երբեմն ի գիրկսն Սիմէոն :

Օրհնեսցուք զառաքեալն ի հօրէ, որ ի խանձարուրս պատեցաւ վասն մեր, եւ փրկեաց զմեզ յանիծիցն Ա-դամայ :

Ուրախ լեր անապատ ծարաւի եւ ծաղկեա հաւա-տով երանութեամբ յայսմհետէ, քանզի Քրիստոս լոյս յայտնեցաւ հեթանոսաց :

Հ րդ Որ յանճառելի ծոցոյ հօր էութենէ ծագեցար ա-ռեգակն արդարութեան անսկիզբն Աստուած, զքեզ ընդ հրեշտակսն բարեբանեմք Աստուած հարցն մերոց :

Որ խոնարհեցար յերկնից փրկել զարարածս անյե-ղապէս, մարմնացար ի կուսէն էակից բանդ հօր, զքեզ :

Որ ի խանձարուրս պատեցար անեղանելիդ, ոչ մեկնելով յանքննին փառաց հօր, իսկակից սուրբ հոգ-ւոյն, զքեզ :

Գ · Զտէր միաբանութեամբ օրհնեցէք եւ առաւել բարձր արարէք զնա յաւիտեանս :

Զառաքեալն ի հօրէ զբանն եւ զմարմնացեալն ի կուսէն զանճառելին , միաբանու :

Ծնեալն ի սրբոյ կուսէն եւ յանբանից մսուր եդեալ զհաց կենաց , միաբանու :

Զերկրպագեալն ի մոգուց եւ զմկրտեալն ՚ի յորդանան ի յովհաննէ , միաբանու :

Մ Աստուածածին եւ սրբուհի որ զբանն Աստուած անսերմն յղութեամբ յարգանդի կրեցեր , անդադար եգով մեծացուցանեմք :

Զքեզ մայր կուսութեան եւ յղութեան լուսոյ , եւ առագաստ անճառելոյ բնակողին ի քեզ փեսայացեալ բանին , անդա :

Քեւ լուծան կնիք դատապարտութեան , եւ քեւ կանգնեցաւ մեղուցեալ մայրն գլորեալ , վասն որոյ զքեզ Աստուածածին եւ կոյս , անդա :

Ո Որ էրն ի սկզբանէ առ Աստուած եւ Աստուած բանն , կերպարան անեղին եւ համագոյ սուրբ հոգւոյն , ի վերջին աւուրս ծանուցեալ , մարմնանալ յանձն առու ի կուսական արգանդէ , վասն փրկութեան ազգի մարդկան :

Ցառաջ քան զյաւիտեանս որդի նախայաւիտեան , այսօր յերկրի երեւեալ Աստուած եւ մարդ կատարեալ , խանձարրօք պատի , եդանի եւ դնի յանբանից մսուր , վասն :

Ի Բեթլեհեմ հրէաստանի երեւի արդարութեան արեգակն , այսօր երկրպագի անեղն յարեւելից եկեալ մոգուցն , եւ փառաբանի յերջանիկ ի բացօթեայ հովուացն , վասն :

Տ Որ անտես եւ անքննին քառակերպիցն վեհագոյն, ի փրկել զմեզ եկեալ անմահից թագաւորն, օրհնութիւն առաքողին:

Առաքի հրեշտակապետն առ սերոբէն հողեղէն, ասէ Տէրն եւ արարողն առաքեալ ի հօրէ մարմնանալ ի քէն փրկողն:

Մկրտի ի յորդանան վկայելով հօր եւ հոգւոյն, ովսաննա ի բարձունս երգէին մանկունքն օրհնութիւն որդւոյ Դաւթի:

ՁԸ ԲՅ Ժ Անթառամ ծաղիկ անդաստապարս շառաւիղ, վերաբուսեալ յարմատոյն յեսսեայ, զքեզ եսայիաս կանխաւ վերագոչեաց եօթնարփեան շնորհաց հոգւոյն ընդունարան գոլ. աստուածածին եւ կոյս, զքեզ մեծացուցանեմք:

Համեղաճաշակ պտղոյն բանաւոր բարունակ, յորմէ կթեցաւ մեզ ողկոյզն անսպառ յուրախութիւն տրտմեցելոցն ի ճաշակմանէ ծառոյն գիտութեան. սրբուհի անարատ, ամենեքեան զքեզ:

Քաղաքավարեալ ի մարմնի անարատս վարուք, այսօր յառաքելոցն ամփոփեալ վերին ակնարկութեամբն վերափոխեցար յարքայութիւն որդւոյ քո եւ Աստուծոյ մերոյ, բարեխօս խոստովանողացս. զքեզ:

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Այսօր բանն Աստուած, որ հօր Աստուծոյ հետ փառքի աթոռին վրայ նստած է, սուրբ կոյսէն կը ծնի, եւ մարմին առնելով ամբողջ աշխարհս ալ իր որդեգրութեան շնորհքին մէջ կը ծնի:*

*Այսօր Աստուածորդին, որ տեղ մը չի բովանդակիր. բոլոր արարածներուն տէրը, անբան կենդանիներու մսուրին մէջ կը նստի, բայց կը հանգչի քերովբէներուն վրայ։*

*Նա որ իր հօր փառքին ճառագայթն է, կը խնդրէր որ Յովհաննէս զինքը մկրտէ Յորդանանու ջուրերուն մէջ, և ամբողջ աշխարհը կը հրաւիրէր՝ յատկապէս ղրկուած ըլլալով Աստուծոյ կողմէն։*

*Հաւատքով մեր սիրտերուն մէջ ընդունինք զայն որ սուրբ կոյսէն ծնաւ, ինչպէս երբեմն Սիմէոն ընդունեց իր գրկին մէջ։*

*Օրհնենք հօր Աստուծմէ ղրկուածը, որ մեզի համար լաթի կտորուանքներու մէջ փաթթուեցաւ, եւ Ադամի անէծքէն փրկեց զմեզ։*

*Ուրախ եղի՛ր, ո՛վ անջրդի անապատ, և այսուհետև չէնցի՛ր երանութիւն տուող հաւատքով, որովհետեւ Քրիստոս կռապաշտներուն լոյս յայտնուեցաւ։*

Հ *Ո՛վ անսկիզբ Աստուած, արդարութեան արեւ, որ հօր Աստուծոյ էութեան անբացատրելի ծոցէն ծագեցար. հրեշտակներուն հետ կը գովաբանենք զքեզ, ո՛վ մեր հայրերուն Աստուածը։*

*Որ առանց ոև է փոփոխութեան երկինքէն իջար արարածները փրկելու, և դուն որ հօր Աստուծոյ հետ նոյն էութիւնն ունիս, մարմին առիր կոյսէն. հրեշտակներուն հետ զքեզ կը գովաբանենք։*

*Դուն որ ո՛չ մէկէն ստեղծուած ես, և սուրբ Հոգիին հետ նոյն բնութիւնը ունիս, լաթի կտորուանքներու մէջ փաթթուեցար, չբաժնուելով հօր Աստուծոյ անքննելի փառքէն. հրեշտակներուն հետ զքեզ։*

Միաբերան օրհնեցէք տէրը և ի սպառ փառաւորեցէք զայն ։

Բանն Աստուածը, որ հօրմէն զրկուեցաւ և անքննելի կերպով կոյսէն մարմին առաւ, միաբերան օրհ ։

Զայն որուն մոգերը երկրպագութիւն ըրին, եւ որ Յովհաննէսէն մկրտուեցաւ Յորդանանու մէջ, միաբերան օրհ ։

Մ Ո՛վ աստուածածին և սուրբ Մարիամ, որ արգանդիդ մէջ կրեցիր բանն Աստուածը առանց սերմի յղանալով, անդադար երգերով կը փառաւորենք զքեզ ։

Որ կուսութեամբ մայր եղար և լոյսը յղացար, և քեզի միաւորուող և անբացատրելի կերպով քու մէջդ ապրող բանն Աստուծոյ ներքին սենեակ եղար, անդա ։

Քեզմով քակուեցաւ ադամական դատապարտութեան վճիռը, և քեզմով ոտք ելաւ դարձեալ մեղքով գլորող մայրը (Եւան). ուստի ո՛վ աստուածածին և կոյս, անդա ։

Ո Նա որ սկիզբէն Աստուծոյ քով էր և բանն Աստուած էր, սուրբ Հոգւոյն հետ նոյն գոյութիւնն ունէր, և կերպարանքն էր հօր Աստուծոյ որ ոչ մէկէն ստեղծուած է, որոշեալ ժամանակին մէջ յանձն հ՚առնէ կուսական արգանդէն մարմին առնել մարդկային ազգը փրկելու համար ։

Բոլոր ժամանակներէն առաջ և յաւիտենապէս գոյութիւն ունեցող որդին՝ իբրև կատարեալ Աստուած և մարդ այսօր երկրի վրայ երեւելով՝ լաթի կտորուանքներով կը փաթթուի, մարդ կ՚ըլլայ և անբան կենդանիներու մսուրին մէջ կը դրուի, մարդկային ազգը փրկելու համար ։

Արդարութեան արեւը Բեթլէհէմի մէջ կ՚երեւի, ո՛չ

մէկէն ստեղծուածին այսօր երկրպագութիւն կ'ընեն արեւելքէն եկող մոգերը, և կը փառաւորեն զայն բաց դաշտի վրայ ապրող երջանիկ հովիւները ։

Տ Օրհնեա՛լ ըլլայ այն որ մեր փրկութեանը համար զրկեց անմահ և չորեքկերպեան վեհ հրեշտակներէն անքննելի և անտեսանելի Թագաւորը ։

Հողեղէն սրովբէին (Մարիամու) կը զրկուի հրեշտակապետը, որ կ'ըսէ անոր․ արարածոց տէրն ու արարիչը ու փրկիչը հօր Աստուծոյ կողմէ զրկուելով մարմին կ'առնէ քեզմէ ։

Յորդանանու մէջ կը մկրտուի, հայր Աստուած և հոգին Աստուած կը վկայեն, մանուկները կ'երգէին․ օրհնեալ ըլլայ Դաւիթին որդին ։

ՑՇ Ո՛վ անթառամելի ծաղիկ, Եւայի դատապարտութենէն զերծ բողբոջ, որ Յեսսէի արմատէն բուսար․ Եսայի մարգարէն կանուխ աղաղակեց թէ դուն սուրբ Հոգիին եօթն շնորհքներուն ընդունարան պիտի ըլլաս․ ո՛վ աստուածածին և կոյս, կը փառաւորենք զքեզ ։

Համեղ պտուղին (Քրիստոսի) հոգեւոր որթատունկն ես դուն, քեզմէ կթեցինք մենք անապական ողկոյզը, որ ուրախացուց զանոնք որք ճաշակած էին գիտութեան ծառին պտուղէն․ ո՛վ անարատ որբուհի, ամենքս կը փառաւորենք զքեզ ։

Անարատ վարքով մարմնաւոր կեանքդ վարեցիր, և այսօր առաքեալները Աստուծոյ հրամանաւ ամփոփեցին քու մարմինդ և փոխադրուեցար քու որդւոյդ և մեր Աստուծոյ արքայութիւնը, բարեխօս ըլլալու մեզ ամէնուս որ կը ճանչնանք զքեզ ։



## ԿԱՆՈՆ ՎԵՑԵՐՈՐԴԻ ԱՒՈՒՐՆ

ԱՀ Անսկզբնական տեսիլ փառաց քոց տուող, որ ի
ԵՂ մեզ հրաշագործեցաւ երեւելով անճառաբար
Կ ծնունդ, այսօր ցնծութիւն յայտնեցաւ տիեզերաց:

Անմարմնական հոգեղինացն երգակցելով բոցեղէն փայլմամբ, թափանցիկ հրածին ամպոյն սիւն գործեալ յայրին, այսօր դասակից եղեն հովիւքն հանդիսի վերնոցն:

Ընդհանուր ծաւալեցաւ ծագումն լուսոյ, մոգուցն հետեւելով աստեղքն գուշակեալ զծնունդ յայրին, անդ մատուցանէին զընծայս աստուածային ծննդեանն:

Որ յղութեանդ ես ընդ հօր եւ սուրբ հոգւոյն անսկիզբն որդի, խոնարհեցար ի հայրական ծոցոյ, մարդ եղեալ մարմնացար ի կուսէն, բառնալով զյաղթումն մահու յանցանաց նախահօրն, քեզ երգեմք ընդ զօրս հրեշտակացն ի մէջ հովուացն, օրհնեալ ես Քրիստոս նախայաւիտեան բանդ:

Այսօր ծնար որ ի հօրէ յառաջ քան զյաւիտեանս որդի, ճառագայթ փառաց եւ ծագումն յանմեկնելի լուսոյն, աստղագուշակ տեսլեամբքն յայրին իջեւանի եւ 'ի մսուր անբանից բազմեալ, քեզ երգեմք:

Թագաւոր փառաց Քրիստոս եւ արարիչ բոլորից, Աստուած հզօր իշխան հայր հանդերձեալ լուսոյն, մանուկ երեւեալ այսօր անփոփոխելիդ ի յղութեան, քեզ երգեմք:

Հ Որ խոնարհեցար ի հայրական ծոցոյ բնակիլ յար-
ՐԷ գանդի կուսին, Աստուած հարցն մերոց:

Որ գթացար յերկիր եւ ծնար անախտ, ազատելով զախտի զծնունդս, Աստուած հարցն մերոց:

Բարեբանեմք զէակիցդ հօր եւ հոգւոյն անդադար հոգեւոր երգով, Աստուած հարցն մերոց:

Գ Զառաքեալն ի հօրէ լոյս իմաստութիւն եւ բան, զէակիցն հօր եւ հոգւոյն, օրհնեցէք եւ բարձր արարէք:

Զծնեալն ի սրբոյ կուսէն զխոստովանեալ բազաւորն, զերկրպագեալն ի մոգուցն, օրհ:

Որ իջանելով ի ջուրսն սրբեաց զյորդանան, եւ զմկրտեալն ի յովհաննէ, օրհ:

Մ Որ զանձնառելին ծնար սուրբ աստուածածին կոյս, օրհնեալ ես յաւիտեան:

Որ զարարչակիցն հօր զ'ի սկզբանէ զբանն Աստուած յորովայնի քում կրեցեր, օրհ:

Զքեզ եզեկիէլ եսես երկնային դուռն եւ հարանց անփորձ, օրհ:

Ո Հրաշափառ ծնունդ քո ի սուրբ կուսէն այսօր

Կ ցուցաւ ազգի մարդկան, անսկզբնակից բանդ էակից հօր:

Ցայտնութեամբ քո տէր ցնծացաւ երկիր, եւ նորոգեալ եղեւ Ադամ յառաջին յանցանաց ի մեղաց իւրոց:

Դաւք հովուացն յերկրի փառաւորէին զքո ամենակեցոյց գալուստդ, որ երեւեցար քո արարածոցս:

Տ Այսօր յայտնեցաւ մեզ բարձրեալն բազմեալ բանն յանբանից մսուր, զառն եւ երկնաւոր հաց:

Այսօր ցնծան զուարթունք երկնից տեսանելով զանհաւոր զահագին եւ զհրաշալի ծնունդն, որ լոյս աշխարհի ցուցաւ:

Ընդ իջանել զուարթնոցն ի փառաբանութիւն, տե-

տանէին ամպ լուսոյ սիւն գործեալ ի հրալից վիմին, դասք երջանիկ հովուացն:

ձէ Զքեզ հայր յառաջ քան զյաւիտեանս բարեբանեն
բյ դասք անմարմնոց հրեշտակաց, ձայնիւ երգով
՛ գոչեն եւ աղաղակեն՝ Աստուած աստուածոց եւ
տէր տերանց փրկիչ գոլով:

Առաքեցեր զքո միածինդ մարմնանալ ի սուրբ կուսէն եւ անարատ ծնանիլ յորովայնէ անապականն, բառնալով զմեր նեղութիւնս, Աստուած:

Շնորհք բարի յերուսաղէմ երեւեցաւ հեթանոսաց, զի արարիչն յաւիտենից տղայ եղեալ յորդեգրութիւն կենաց կոչէ, Աստուած:

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Քու փառքդ ցոյց տուող անսկիզբ տեսիլը (Քրիստոս), որ զարմանալի կերպով մեր մէջ երեւցաւ, անբացատրելի կերպով ծնելով, այսօր բոլոր աշխարհի ուրախութիւն պատճառեց։*

*Այսօր անմարմին հրեշտակները բոցեղէն պայծառութեամբ միասին երգեցին, և իրենց լուսաւորութեան թափանցիկ հրեղէն ամպը սիւն մը ձեւացուց պանդոկին մէջ, և հովիւներն ալ մասնակից եղան երկնաբնակներուն հանդէսին։*

*Ծագած լոյսը ամէն կողմ ծաւալեցաւ, մոգերը աստղին հետեւեցան, որ կը ծանուցանէր պանդոկին մէջ կատարուած ծնունդը, և հոն կը մատուցանէին աստուածային ծնունդին նուէրները։*

*Ո՛վ անսկիզբն որդի, որ Հօր Աստուծոյ և սուրբ Հոգւոյն հետ նոյն էութեան մէջ ես, հայրական ծոցէն վար իջար, մարդ ըլլալով մարմին առիր կոյսէն, Նախահօր (Ադամին) մահաբեր յանցանքին յաղթութիւնը կատարեցիր. հովիւներուն մէջ տեղ կեցած հրեշտակային դասերուն հետ կ'երգենք և կ'ըսենք. օրհնեալ ես դուն, ո՛վ Քրիստոս բանն Աստուած, որ ամէն ժամանակներէ առաջ յաւիտենապէս գոյութիւն ունիս։*

*Այսօր ծնար դուն որ յաւիտենապէս Հօր Աստուծոյ որդին ես, անոր փառքին ճառագայթն ես, և անբաժանելի լոյսին ծագումն ես. աստղին միջոցաւ գուշակուած տեսիլքով պանդոկին և անբան կենդանիներու մսուրին մէջ կը բազմիս. հովիւնե։*

*Ո՛վ Քրիստոս, փառաւոր Թագաւոր, և տէր բոլոր արարածներուն, աստուած, հզօր, իշխան, և երկնաւոր լոյսին հայր, այսօր իբրև մանուկ երեւցար առանց փոփոխութիւն կրելու էութեանդ մէջ. հովիւներուն։*

Հ *Հայրական ծոցէն վար իջար Կոյսին արգանդին մէջ բնակելու համար, ո՛վ մեր հայրերուն Աստուածը։*

*Մեղքցար այս աշխարհին, և առանց ախտի ծնար, ախտաւոր մարդիկը ազատելով. ո՛վ մեր։*

*Միշտ հոգեւոր երգեր երգելով կը գովաբանենք զքեզ, որ հօր Աստուծոյ և հոգւոյ Աստուծոյ հետ նոյն էութիւնն ունիս. ո՛վ մեր։*

*Օրհնեցէք և փառաւորեցէք զանի որ հօրմէն ղրկուեցաւ, իմաստութիւնը, լոյսը, բանականութիւնը։*

*Զայն որ սուրբ կոյսէն ծնաւ և իբրև երկնաւոր թագաւոր կը դաւանինք, և որուն երկրպագութիւն ըրին մոգերը։*

*Որ ջուրերուն մէջ իջնելով՝ սըբեց Յորդանանը, և մկրտուեցաւ Յովհաննէսէն :*

Մ *Ո՛վ սուրբ կոյս աստուածածին, որ անբացատրելի էակին ծնունդ տուիր, յաւիտեան օրհնեալ ես :*

*Որ որովայնիդ մէջ կրեցիր բանն Աստուածը, որ սկիզբէն հօր Աստուծոյ հետ ստեղծագործութեան մասնակցեցաւ, յաւիտ :*

*Եզեկիէլ մարգարէն զքեզ տեսաւ կանուխէն իբրև երկինք տանող ճամբուն դուռը և իբրև անփորձ կին, յաւիտ :*

Ո *Ո՛վ անսկիզբ և հօր հետ էակից եղող բանդ Աստուած, այսօր մարդկային ազգին յայտնուեցաւ սուրբ-կոյսէն քու հրաշափառ ծնունդդ :*

*Ո՛վ տէր, երկիրը հրճուեցաւ քու յայտնուելուդ վրայ, և Ադամը նորոգուեցաւ իր առաջին յանցանքէն, իր մեղքէն :*

*Հովիւները երկրի վրայ կը փառաւորէին քու գալուստդ, որ ամէնուն փրկութիւն եղաւ, երբ երեւցար մեզի՝ քու արարածներուդ :*

Տ *Այսօր բարձրեալ բանն Աստուած ինքզինք յայտնեց, անբան անասուններու մսուրին մէջ նստած, թէ գառնուկն է և երկնաւոր հացն է :*

*Այսօր երկնից հրեշտակները կը խայտան տեսնելով անճառ, սքանչելի և հրաշալի ծնունդը, որ աշխարհի լոյս յայտնուեցաւ :*

*Երբ հրեշտակները վար իջան փառաբանութիւն տալու համար, երջանիկ հովիւները կը տեսնէին որ լուսեղէն ամպ մը սիւն կը ձեւացնէր բոցեղէն պանդոկին մէջ :*

ՃԵ *Անմարմին հրեշտակները կը գովաբանեն զքեզ ,-*

ո՛վ հայր, որ ամէն ժամանակներէն կանուխ ես, կ՚երգեն և կ՚աղաղակեն թէ աստուածներուն աստուածը և տէրերուն տէրը մարդոց փրկիչ եղաւ ։

Քու միածին որդիդ ղրկեցիր որպէսզի սուրբ կոյսէն մարմին առնէ և առանց անմաքրութեան ծնի անապական որովայնէն, մեր նեղութիւնները կրելով ։

Երուսաղէմի մէջ հեթանոսներուն համար ամենամեծ պարգև մը, շնորհք մը երևցաւ, որովհետև յաւիտենական արարիչը մարդ ըլլալով զամենքը կը հրաւիրէ որդեգիր ըլլալ իր կեանքին ։



# ԿԱՆՈՆ ԵՕԹՆԵՐՈՐԴԻ ԱԻՈՒՐՆ

ԱՀ Անեղանելի բնութիւն որ յէութեանդ ես ընդ
ՁՅ հօր, ծնար ի սրբոյ կուսէն, զքեզ բարեբանեմք
Ձ– արարչակից հօր:

Անեղանելի արարող որ վասն մեր մարմնացար եւ ցնծութիւն աշխարհի յայտնեցար, զքեզ:

Մկրտեցար ի յորդանան ի յովհաննէ, աղաւնակերպ սուրբ հոգւոյն վկայեալ երկնայինն ձայնիւն, զքեզ:

Բանն առաքեալ ի հօրէ որ վասն մեր մարմնացաւ, եւ ցնծութիւն աշխարհի յայտնեցաւ, զքեզ բարեբանեմք աստուածածին կոյս:

Չի որում ոչն հանդուրժէին բոցանշոյլ սերոբէքն, նա բնակեցաւ ի քում որովայնի, զքեզ:

Յորմէ սարսեալ դողային փայլակնացայս ի լուսոյն, ի գիրկս քո զնա ընկալար, զքեզ:

Լոյսդ որ ի հօրէ առաքեցար յորժամ իջեր ի յերկնից եւ մարմնացար ի սրբոյ կուսէն, դու ես գառն Աստուծոյ եւ որդի հօր:

Այսօր յայրին ընծայեցար փրկիչ եւ ի մոգուցն երկրպագեցար, եւ հովուացն տեսեալ ասէին, դու:

Ի նմանութիւն աղաւնոյ տեսեալ զհոգին սուրբ յովհաննէս) աղաղակէր ասելով, սա է գառն Աստուծոյ եւ որդի հօր:

Հ Փառաւորեալ Աստուած սքանչելի մեծագործու-
ՁՅ թեամբ, եկիր ի փրկել զարարածս քո, Աստուած հարցն մերոց:

Մնար ի կուսէ անճառելի բանդ, ի հօրէ ոչ մեկնեցար, օրհնեմք զքեզ անհասանելի լոյս, Աստուած:

Երեւեցար յաշխարհի որ իջեր ի յորդանան մկրտիլ ի յովհաննէ, որ զջուրսն սրբեցեր, սրբեա զմեզ ի մեղաց մերոց, Աստուած:

[Գ] Ամենայն գործք տեառն զնա անդադար, զանսկիզբն Աստուած զանյաղթելի զթագաւորն օրհնեցէք զօվեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան:

Որ էն փառօք ի յերկինս անսկզբնակից որդին, իջեալ ի յերկնից մարմնացաւ ի կուսէն, օրհ:

Ըզծնեալն ի սուրբ կուսէն զեդեալն յանբանից մըսուր, եւ զմկրտեալն ի սուրբ յորդանան, օրհ:

Զէակիցն հօր եւ որդւոյ զսուրբ հոգին, զնորոգողն եւ զանսպառ աղբիւրն լուսոյ, որ լուսաւորեացն զմեզ. օրհ:

[Մ] Զկուսութիւնդ քո աստուածածին անարատ զոր ոչ բոցակիզեաց հուր աստուածութեանն, մեծացուցանեմք:

Որ յարգանդի քում անապականաբար բնակեցաւ Քրիստոս Աստուած, եւ փրկիչ անձանց մերոց, մեծացուցանեմք:

Անհասանելի տէրունական յայտնութիւն աշխարհի ծագեցաւ, անմատոյց լուսոյն երկրպագեսցուք:

[Ո] Խոնարհեցար ի բարձանց եւ մարմնացար ի կուսէն, որ նստէիրդ ի քրոբէս արարիչդ արարածոց:

Երկինք չէին բաւական փառաց անմահ անեղիդ, արգանդ կուսին ժուժկալեալ ընդունիլ զգանձդ երկնային:

Յորմէ սարսեալ սերոբէքն ոչ իշխէին մերձենալ, ի խանձարուրս պատեցար եւ եդար ի մսուր անբանից:

Տ Հրաշալի բարբառ երկնաւոր զօրացն, հնչմամբ օրհնէին զանմահ թագաւորութիւնն:

Անճառ ծնունդն փառօք երեւեալ, եւ աստղն լուսապայծառ հովանի էր այրին:

Բանն բազմեալ յանբանից մսուր, եւ մոգքն հետեւէին ծագմամբ լուսափայլ աստեղն:

ՃԵ Սիւն լուսոյ եւ ամպ հովանի սուրբ կոյս, որ
Բէ ցօղեցեր ի մեզ զցօղն երկնային, զքեզ բարեբանեմք
Հ աստուածածին կոյս:

Անկեզ մորենի եւ սրոբէ հողեղէն սուրբ կոյս, քանզի պտուղն կենաց ի քէն տուաւ մեզ, զքեզ:

Անիծից լուծիչ եւ քաւիչ մեղաց սուրբ կոյս, որ զանտանելին էիր ի գիրկս քո բարձեր, զքեզ:

---

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Ո՛վ անեղ բնութիւն, որ Հօր Աստուծոյ հետ նոյն բնութիւնը ունիս, սուրբ կոյսէն ծնար. կը գովաբանենք զքեզ, որ անեղծագործութեան մասնակցեցար Հօր Աստուծոյ հետ:*

*Ո՛վ անեղծող որ մէկէ մը անեղծուած չես, մեզի համար մարմին առիր և աշխարհի ուրախութիւն յայտնուեցար. կը գովա:*

*Յորդանանու մէջ Յովհաննէսէն մկրտուեցար, սուրբ հոգին աղաւնիի պէս երեւելով վկայութիւն տուաւ երկնաւոր հօր ձայնին հետ. կը գովա:*

*Բանն Աստուած հօրմէն ղրկուեցաւ և մեզի համար մարմին առաւ, և աշխարհի ուրախութիւն յայտնուեցաւ, կը գովաբանենք զքեզ, ո՛վ աստուածածին կոյս.*

Որովհետև քու որովայնիդ մէջ բնակեցաւ Նա որուն չէին կրնար դիմանալ բոցափայլ սերովբէները․ կը գովա։

Քու գրկիդ մէջ ընդունեցիր այդ կայծակնացայտ լոյսը, որմէ սարսափահար կը դողային, կը գովա։

Դու Աստուծոյ գառնուկն և որդին ես, ո՛վ լոյս, որ հօրմէն ղրկուեցար երբ երկինքէն իջար և սուրբ կոյսէն մարմին առիր։

Ո՛վ փրկիչ, այսօր պանդոկին մէջ նուէրներ ընդունեցիր, և մոգերուն երկրպագութիւնը, և հովիւները տեսան ու լսին․ դու հօր Աստուծոյ գառնուկն ու որդին ես։

Յովհաննէս սուրբ Հոգին աղաւնիի կերպարանքով տեսնելով, կ'աղաղակէր ու կ'ըսէր․ ահա Աստուծոյ գառնուկն և հօր որդին։

Է Հրաշալի մեծագործութիւններով փառաւորուած Աստուա՛ծ, եկար փրկելու քու արարածներդ, ո՛վ մեր հայրերուն Աստուածը։

Ո՛վ անպատմելի բանդ Աստուած, կոյսէն ծնար, հօր Աստուծմէ չզատուեցար, կ'օրհնենք զքեզ անըմբռնելի լոյս, ո՛վ մեր։

Աշխարհի վրայ երեւցար, Յորդանան իջար Յովհաննէսէն մկրտուելու, դուն որ ջուրերը սրբեցիր, սրբէ՛ զմեզ մեր մեղքերէն, ո՛վ մեր։

Տիրոջը բոլոր արարածները միշտ օրհնեցէք զինքը․ օրհնեցէք, գովեցէք և փառաւորեցէք ի սպառ անսկիզբ Աստուածը, երկնային անյաղթելի թագաւորը։

Հօր Աստուծոյ պէս անսկիզբ եղող որդին, որ իր փառքովը երկինքն է, և երկինքէն ելնելով կոյսէն մար-

մին առաւ, օրհնեցէք, գովեցէք և փառաւորեցէք ի սպառ :

Զայն որ սուրբ կուսէն ծնաւ, անբան անասուններու մսուրին մէջ դրուեցաւ և սուրբ Յորդանանու մէջ մկրտուեցաւ, օրհնե :

Սուրբ հոգին որ հօր Աստուծոյ և որդի Աստուծոյ հետ նոյն էութիւնը ունի, կը նորոգէ և լոյսի անսպառելի աղբիւր է, որ լուսաւորեց զմեզ, օրհնեցէք, գովեցէք և փառաւորեցէք ի սպառ :

Ս Ո՛վ անարատ աստուածածին, կը փառաւորենք քու կուսութիւնդ, որ չայրեցաւ աստուածութեան կրակէն :

Քրիստոս Աստուած արգանդիդ մէջ բնակեցաւ առանց ապականութեան, և փրկեց մեր անձերը, կը փառաւորենք զքեզ :

Տէրունական անըմբռնելի կարգադրութեամբ յայտնութիւն մը եղաւ աշխարհի. երկրպագութիւն ընենք անմատչելի լոյսին :

Ո Դու որ արարածները ստեղծեցիր և քրոբէններուն վրայ կը նստէիր, բարձունքէն վար իջար և կուսէն մարմին առիր :

Երկինք անկարող էր կրելու, բովանդակելու քու փառքդ, դուն որ անման ես և ո՛չ մէկէն ստեղծուած ես, բայց կուսին արգանդը բաւեց ընդունելու զքեզ, որ երկնաւոր գանձ ես :

Լաթի կտորուանքներու մէջ փաթթուեցար և անբան կենդանիներու մսուրին մէջ դրուեցար, դուն՝ որմէ սերոբէները սարսռալով չէին համարձակիր մօտենալ:

Տ Երկնային զօրքերուն զարմանալի ձայները աղաղակելով կ՚օրհնէին անման Թագաւորութիւնը :

Անպատմելի ծնունդը փառաւոր երեւցաւ, և լուսափայլ աստղը հովանի էր պանդոկին վրայ։

Բանն Աստուած անբան անասուններու մսուրին մէջ նստաւ, մոգերը կը հետեւէին լուսափայլ աստղին ծագման։

ԺԸ Ո՛վ սուրբ կոյս, լուսեղէն սիւն և հովանաւոր ամպ, որ երկնային շաղը մեր մէջ ցողեցիր, կը գովաբանենք զքեզ, աստուածային կոյս։

Ո՛վ սուրբ կոյս, դուն այն մորենին ես որ չէր այրեր, և հողեղէն սերոբէ ես, որովհետև կեանք տուող պտուղը քեզմով տրուեցաւ մեզի, կը գովա։

Անէծքը քակող և մեղքերը սրբող սուրբ կոյս, որ քու գրկիդ մէջ կրեցիր զայն, որուն չէին կրնար բաւական ըլլալ բոլոր արարածները, կը գովա։



# ԿԱՆՈ՛Ն ՈՒԹԵՐՈՐԴԻ ԱՒՈՒՐՆ

ԱՀ Լոյս ի լուսոյ ի հօրէ առաքեցար եւ մարմնա-
ՏԾ ցար ի սուրբ կուսէն, զի վերստին նորոգեսցես
ԺԲ զապականեալն Ադամ:

Դու Աստուած ի յերկրի երեւեցար եւ ընդ մարդկան շրջեցար, եւ փրկեցեր զտիեզերս յանիծիցն Ադամայ:

Քեզ ի յերկնից վկայեալ հօր քո ձայն, ասէ՝ դա է իմ որդի, եւ սուրբ հոգին զքեզ յայտնեաց աղաւնակերպ երեւմամբ:

Զքեզ որ հոգւով եւ հրով մաքրեցեր զմարդկան աղտեղութիւն, որպէս զԱստուած եւ զփրկիչ ամենեքեան օրհնեսցուք:

Փրկիչն երեւեցաւ եւ զաշխարհս ապրեցոյց ի պատրանաց թշնամւոյն, որդեգրութիւն շնորհելով ի ձեռն մկրտութեան:

Հրով կիզու զմեղս մեր այսօր՝ երեւեալ ապրեցուցիչն, եւ զովացուցանէ զաշխարհս աստուածային ջըրովն:

Զգլուխ վիշապին փրկիչն ջախջախեաց ի յորդանան ի գետն, եւ ինքեան իշխանութեամբ զամենեսեան ապրեցոյց:

Զհին մարդն նորոգելով փրկիչն ի մկրտութիւն գայ այսօր, զի զապականեալ զբնութիւնս ջրով նորս գործեսցէ, անապականն զգեստ փոխարէն տալով մեզ:

Մկրտի Քրիստոս եւ սրբին [illegible] ամենայն եւ տայ մեզ թողութիւն մեղաց, ջրով եւ հոգւով վերանորոգելով զմեզ:

Հ Տնօրհնեցաւ յարգանդի կուսին խնկանից հօր եւ սուրբ հոգւոյն, բանն առաքեալ ի հօրէ յաղագս նախաստեղծ մարդոյն բառնալով զյանցանս, ժողովուրդք օրհնեցէք զառաքեալն ի հօրէ զԱստուած հարցն մերոց :

Նախայաւիտեան որդին փառակից հօր եւ սուրբ հոգւոյն, ի յորդանան եկն այսօր մկրտիլ ի յովհաննէ, կերպացեալ իմոլս յաղագս իմ զնախահօրն եբարձ ըզմեղս, ժողո :

Մաքրողական պարգեւեցան շնորհք աղաւնակերպ իջմամբ սուրբ հոգւոյն ջուրցն սրբութեան, եւ հայր ի վերուստ վկայեալ կրկնակի ծննդեամբ դա է որդի իմ սիրելի, միաբան եւ մեք օրհնեսցուք զառաքեալն ի հօրէ զԱստուած հարցն մերոց :

Գ Զտէր օրհնեցէք բարձր արարէք զնա յաւիտեան :

Արարիչն երկնի եւ երկրի Աստուած եւ մարդ գոլով, երեւեալ ի հոսանսն յորդանանու աստուածախառն մարմնով, լուաց զտիեզերս ի մեղաց, բարձր :

Միաբանութեամբ օրհնեցէք քահանայք եւ ժողովուրդք զամենասուրբ զերրորդութիւնն, զհամագոյ եւ զմի աստուածութիւնն, բարձր :

Մ Ցանճառ փառաց խոնարհեցար ի մեր բնութիւնս բանդ Աստուած, եւ մարմնացար ի սրբոյ կուսէն :

Եւ ծնար ի սուրբ կուսէն անապական մարմնով, զքեզ անդադար բարեբանեալ մեծացուցանեմք :

Այսօր զեկեալդ ի փրկութիւն ազգի մարդկան, միաբանութեամբ ամենեքեան մեծացուցանեմք :

Ո Պատկերակից եղեր հողեղէն բնութեանս, տնօրհնեցար յարգանդի կուսին բանդ Աստուած, զմերս վերանորոգել պատկեր :

Մերկացեալ ի ճաշակմանէ նախաստեղծին զփառս

միւսանգամ վերստին շնորհելով զմեզ վերանորոգել ի փառս :

Մկրտեալ ի յորդանան ՚ի յովհաննէ, աստուածային բնութեամբ մարմնովն զոր ի մէջ էառ, զմեզ լուսաւորելով աստուածային ծագմամբ ;

Տ Զանքննելի զբանն հօր եւ զանսկիզբն նորա զորդին որ ի յորդանան այսօր զմեղս մեռոյց եւ զաշխարհս լուսաւորեաց, բարեբանելով միշտ յաւիտեան :

Որ ի հօրէ վկայեալ որդին՝ յայտնեալ հոգին իջեալ. ձեռնադրէր կարապետն, զի եւ մեք օրհնեսցուք զերրորդութիւն միասնական, բարեբա :

Որ ի հրեշտակաց օրհնաբանեալ Աստուած, ի հս-սանսն յորդանանու տեսեալ յովհաննէս ասէր, ահա գառն Աստուծոյ որ վկայի ի սուրբ հոգւոյն, զոր օրհնեսցուք միշտ յաւիտեան :

ԾԸ Անսկիզբն Աստուած բանդ որ ի հօրէ առաքեցար, ընդ ժամանակաւ լինել հանեցար եւ մարմնացար ի սուրբ կուսէն վասն մերոյ փրկութեան, այսօր մկրտիլ ի յորդանան ի յովհաննէ, բառնալով զյանցանս առաջին նախաստեղծ մարդոյն :

Անեղանելիդ Աստուած բանդ անմեկնելիդ ի հօրէ, ընդ ժամանակաւ լինել հանեցար եւ մարմնացար ի սուրբ կուսէն Աստուած եւ մարդ յայտնեալ, այսօր մկր:

Զորեքկերպեան կենդանեացն զխորհուրդ քարոզեաց ամլորդին՝ տեսանելով սուրբ զհոգին աղաւնակերպ իջմամբ ի վերայ ջուրցն, աղաղակէր ասելով, ահա գառն Աստուծոյ որ ի հօրէ վկայեցաւ դա է որդի իմ սիրելի, ընդ որում ես հաճեցայ :

# ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Ո՛վ լոյս Քրիստոս, լոյս հօրմէն ղրկուեցար և սուրբ կոյսէն մարմին առիր, որպէսզի դարձեալ նորոգես ապականած Ադամը ։*

*Ո՛վ Աստուած, երկրի վրայ երեւցար և մարդոց հետ պտտեցար, և բոլոր աշխարհը փրկեցիր Ադամի անէծքէն ։*

*Քու հօրդ ձայնը քեզի համար վկայութիւն տուաւ երկինքէն, ըսաւ՝ ասիկա է իմ որդիս, և սուրբ հոգին զքեզ յայտնեց աղաւնիի պէս երեւելով ։*

*Ամենքս իբրև Աստուած և իբրև փրկիչ օրհնենք զքեզ որ հոգիով ու կրակով մաքրեցիր մարդոց աղտեղութիւնը ։*

*Փրկիչը երեւցաւ և այս աշխարհը ազատեց թշնամիին խաբէութենէն, մկրտութեան միջոցաւ աստուածային որդեգրութիւն շնորհելով մեզ ։*

*Այսօր ազատարարը երեւելով, ջուրով կ՚այրէ մեր մեղքերը, և աշխարհը կը զովացնէ աստուածային ջուրով ։*

*Փրկիչը Յորդանան գետին մէջ ջախջախեց սատանային գլուխը, և իր սեփական իշխանութեամբ ազատեց զամենքը ։*

*Այսօր փրկիչը մկրտուիլ կուգայ հին մարդը նորոգելով, որպէս զի մեր ապականած բնութիւնը ջուրով նորոգնէ, ի փոխարէն անապական հագուստ տալով մեզի ։*

*Քրիստոս կը մկրտուի և բոլոր արարածները կը սրբուին, և մեղքերու թողութիւն կուտայ մեզ, ջուրով և հոգիով զմեզ դարձեալ սրբելով ։*

Է Բանն Աստուած, հօր Աստուծոյ և հոգի Աստուծոյ հետ նոյն բնութիւնն ունենալով, կոյսին արգանդին մէջ զետեղուեցաւ ըստ կամնուխ անօրէնութեան, հօրմէն ղրկուեցաւ սկզբնական մարդուն՝ Ադամին համար, անոր յանցանքը վերցնելու. ո՛վ ժողովուրդներ, օրհնեցէք մեր հայրերուն Աստուածը՝ որ հօրմէն ղրկուեցաւ։

Որդին, որ ամէն ժամանակներէ առաջ կայ, և հօր Աստուծոյ և սուրբ Հոգւոյն հետ նոյն փառքն ունի, այսօր Յորդանան եկաւ Յովհաննէսէն մկրտուելու, ինծ համար իմ մարմինս առնելով՝ նախահայր Ադամին մեղքը վերցուց. ո՛վ ժողովուրդներ։

Յորդանանու սուրբ ջուրերուն մաքրողական շնորհք տրուեցաւ սուրբ Հոգիին աղաւնիի պէս իջնելուն վրայ, և հայր Աստուած վերէն վկայեց թէ ասիկա իմ սիրելի որդիս է իր կրկին ծնունդով (իբրև մարդ և իբրև Աստուած). մեք ալ միաբերան կրգենք մեր հայրերուն Աստուածը՝ որ հօրմէն ղրկուեցաւ։

Ի սպառ օրհնեցէք Տէրը և փառաւորեցէք զայն։

Երկինքն ու երկիրը ստեղծողը, Աստուած և մարդ ըլլալով միանգամայն, Յորդանանու հոսանքին մէջ երևցաւ իր աստուածախառն մարմինով և բոլոր աշխարհը իր մեղքերէն լուաց, փառաւորեցէք զայն ի սպառ։

Ո՛վ քահանաներ և ժողովուրդներ, միաբերան օրհնեցէք ամենասուրբ, համագոյակից երրորդութիւնը և մի աստուածութիւնը, փառաւորեցէք զայն ի սպառ։

Ը Ո՛վ բանդ Աստուած, քու անպատմելի փառքեդ մեր բնութեանը խոնարհեցար, և սուրբ կոյսէն մարմին առիր։

Եւ առանց ապականութեան մարմինով ծնար սուրբ

*կոյսէն, անդադար գովաբանելով կը փառաւորենք ըզ-քեզ ։*

*Ամենքս միաբերան կը փառաւորենք զքեզ, որ այ-սօր եկար մարդկային ազգը փրկելու ։*

Ո *Ո՛վ բանդ Աստուած, մեր հողեղէն բնութեան պատկերը քու վրադ առիր, կոյսին արգանդին մէջ զե-տեղուեցար աստուածային տնօրէնութեամբ, մեր պատ-կերը վերանորոգելու համար ։*

*Երկրորդ անգամ դարձեալ մեզի շնորհելու այն փառքը զոր Ադամ կորսնցուց պտուղը ճաշակելով, և մեր բնութիւնը կրկին փառաւորելու ։*

*Աստուածային բնութեամբը, ինչպէս նաև մեզմէ առած մարմինովը Յովհաննէսէն մկրտուեցաւ Յորդա-նանու մէջ, և զմեզ լուսաւորեց իր աստուածային ծա-գումով ։*

Տ. *Միշտ և յաւիտեան գովաբանենք անբաժանելի բանն Աստուածը և հօր Աստուծոյ անսկիզբն որդին, որ այսօր Յորդանանու մէջ մեղքերը մեռցուց և աշխարհը լուսաւորեց ։*

*Յովհաննէս Կարապետ ձեռք դնելով մկրտեց զայն որուն համար Հայրը վկայեց թէ իմ որդիս է, և սուրբ հոգին յայտնապէս իջաւ, որպէսզի մեք ևս օրհնենք անբաժան երրորդութիւնը, միշտ և յաւիտեան գովա-բանելով ։*

*Յովհաննէս Յորդանանու հոսանքին մէջ տեսնելով զԱստուած որ հրեշտակներէն կը գովուի և կ'օրհնուի, կ'ըսէր. ահա Աստուծոյ գառնուկը որուն վկայութիւն կուտայ սուրբ Հոգին. մենք ևս օրհնենք միշտ և յա-ւիտեան ։*

ԺԵ Ո՛վ անսկիզբ բանդ Աստուած, որ հօր Աստուծմէ ղրկուեցար, հաճեցար ժամանակի ենթարկուիլ, և մարմին առիր սուրբ կոյսէն մեր փրկութեան համար. այսօր Յորդանանու մէջ Յովհաննէսէն մկրտուեցար՝ առաջին անգամ ստեղծուած մարդուն յանցանքը վերցընելով։

Ո՛վ բանդ Աստուած, որ ո՛չ մէկէն ստեղծուեցար, և հօր Աստուծմէն անբաժան ես, հաճեցար ժամանակի ենթարկուիլ և սուրբ կոյսէն մարմին առիր, իբրև Աստուած և իբրև մարդ յայտնուելով. այսօր Յորդա։

Ամուլ Եղիսաբէթի որդին Յովհաննէս՝ սուրբ Հոգին աղաւնիի պէս ջուրերուն վրայ իջած տեսնելով, կանխաւ քարոզեց չորեքկերպեան կենդանիներուն խորհուրդը, (որովհետև ինչպէս որ այդ կենդանիները Յովհաննու Յայտնութեան մէջ կը յայտնեն աշխարհի փըրկութեան համար մորթուած գառնուկը), այսպէս ալ Յովհաննէս Մկրտիչ կ'աղաղակէր և կ'ըսէր. ահա Աստուծոյ գառնուկը, որուն վկայեց հայր Աստուած թէ իմ սիրելի որդիս է, որուն հաճած եմ ամէն կերպով։



# ԿԱՆՈՆ

# ՔԱՌԱՍՆՕՐԵԱՅ ԳԱԼՍՏԵԱՆ ՏԵԱՌՆ Ի ՏԱՃԱՐՆ

## (ՏԵԱՌՆԸՆԴԱՌԱՋ)

---

ԱՀ Մարմնացեալդ ի կուսէն նախայաւիտեան բանդ,
—Յ այսօր ի տաճարն եկիր կատարել զօրէնս, վասն
ԻԷ փրկութեան հեթանոսաց:

Որ յանարուեստ աթոռ նստիս բարեբանեալդ ի հր-րեշտակաց, այսօր ի սիմէօնէ բառնալով ի գիրկս, որ ընծայեսցես զմեզ ի կեանս յաւիտենից:

Որ արձակիչդ ես կապելոց պարգեւատու ամենե-ցուն, այսօր հայցմամբ ծերունւոյն արձակեա եւ զիս զբազմամեղս ի կապանաց մահու ի կեանս յաւիտենից:

գձ Այսօր անսկզբնական ծնունդ հայրական ծոցոյ բանն եկաւորեալ ի տաճարն ընծայէ զարարածս հօր ի յերկինս:

Այսօր բարձեալ եղեւ ի գիրկս ծերունւոյն, որ բանիւ զարարածս բարձեալ ունի, օրհնաբանեսցուք:

Այսօր եւ մեք հաւատացեալքս ընդ ծերունւոյն սի-մէօնի, զբանն համագոյ հօր եւ սուրբ հոգւոյն օրհնեա:

Այսօր ի տաճարն եկեալ կենարարն, եւ ի գիրկսն սիմէօնի զգուեցաւ, զոր խնդութեամբ ընկալաւ երու-սաղէմ:

Այսօր երկիրս երկինք անուանեցաւ զի տէրն տէրանց իջեալ յերկնից ի յերկիր, եւ ընծայիւ յանձն առնու ի գործոց ձեռաց իւրեանց :

Այսօր հեթանոսաց լոյս ծագեցաւ Քրիստոս Աստուած, եւ փառք իւրում ժողովրդեանն իսրայէլի :

գկ Այսօր ի տաճարն եկիր փրկիչ եւ ծերունւոյն ի գիրկս ընկալեալ ասէր, արդ արձակես զծառայս քո տէր :

Այսօր աշխարհի ցուցար լոյս, եւ փրկութիւն տիեզերաց Քրիստոս Աստուած, որ մարդասէրդ ես կեցո՛ զմեզ :

Այսօր իմանալի արեգակն՝ որ ծագեցաւ տիեզերաց Քրիստոս Աստուած, որ մար :

Ի սկզբանէ բանն Աստուած մարմնացաւ ի կուսէն, այսօր գգուեցաւ ի տաճարին :

Խայտայր ալեօքն ծերունին Աստուածորդւովն ի գիրկս իւր, եւ օրհնէր զԱստուած ասելով :

Արդ արձակես զծառայս քո տէր ըստ բանի քում ի խաղաղութիւն, զի տեսին աչք իմ զփրկողդ Աստուած :

Հ Օրհնեմք զքեզ որ առաքեցար ի հօրէ անճառելի
տձ բանդ Աստուած՝ յանձն առեր մարմնանալ ի սրբոյ կուսէն, Աստուած հարցն մերոց :

Այսօր եկիր ի տաճարն անհասանելի փրկիչ եւ 'ի գիրկսն սիմէօնի գգուեցար, Աստուած :

Ուստի եւ սիմէօն հոգեւոր հնչմամբն աղաղակէր, արդ արձակես զծառայս քո տէր ըստ բանի քում ի խաղաղութիւն, Աստուած :

գ Զտէր օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան:

Զծնեալն յամենասուրբ յորովայնէ յանարատ ի կուսէն, օրհ :

Զեկեալն այսօր ի տաճարն՝ զընկալեալն ի գիրկսն սիմէօնի , օրհ :

Մ Աթոռ քրոբէական երեւեալ այսօր սիմէօն , զԱստուածորդին ի գիրկս իւր բարձեալ մարմնով , զոր զօրք երկնից՝ ի բարձունս հանապազ մեծացուցանեն :

Հոգւովն գոչէր , ցնծայր ալեօքն ծերունին ասելով՝ սա է թագաւորն անմահ , զոր :

Արտասուելով աղերսէր՝ արձակեա՛ զիս ի խաղաղութիւն , անարատ ծնողի քո բարեխօսութեամբ , զոր :

Ո Որոյ առեալ հրաման ի սուրբ հոգւոյն ոչ տեսանել զմահ մինչեւ տեսցէ զօծեալդ , տէ՛ր աղօթիւք ծերոյն ողորմեա :

Որոյ ընկալեալ ի գիրկս իւր զօծեալդ եւ հայցէր ի կենացդ զմահ եւ արձակիլ ի խաղաղութիւն , տէ՛ր աղօ:

Յորոյ այսօր ի գիրկսն զգուեցար եւ կատարեցեր ըզ-փափաքումն ընծայելոյ քո ի տաճարին , տէ՛ր աղօ :

Տ Զոր փառաբանեն ի բարձունս իմանալի զօրութիւնքն , այսօր ի տաճարն եկիր յընծայումն Քրիստոս , որ ընծայես զարարածս բարձրելոյ քում հօր :

Ի գիրկս մարմնով բարձեալ եղեր ի ծերունւոյն , որ բանիւ զարարածս բարձեալ ունի Քրիստոս , որ կապըն մեր մարմնացար ի սրբոյ կուսէ :

Վասն որոյ եւ մեք ընդ սիմէօնի գոչեսցուք որ ի հօրէ լուսոյ լոյս ծագեցար մեզ եւ կեանք , փա՛ռք գալստեան քո տէ՛ր :

ՃԸ
ՐԼ Անսկիզբն բանն յանսկզբնական ի հօրէ եւ ըսկզբնաւորեալ ի կուսէն մարմնոյ զգեցմամբ , բովանդակելով յորովայնի եւ ընդ հօր գոլով , եւ սահմանեալ ժամանակաւ ծնեալ լինի Աստուած եւ մարդ :

Մտեալ ընդ օրինօք անհիւթականն՝ հաղանիւք գոլով, զի զհողածնեալսն հօրն ընծայեսցէ պաշտօնէութին որ ի ծոց հօր, տղայ քառասնօրեայ բառնի ի գիրկս ծերունւոյն, եւ յայտնապէս ծանուցանի Աստուած եւ մարդ:

Վասն որոյ եւ սիմեոն ցնծայր հոգւովն աղաղակէր ի տաճարին, արդ արձակես զծառայս քո տէր ըստ բանի քում ի խաղաղութիւն, զի ընդհանուր տեսի զփրկողդ՝ Աստուած եւ մարդ:

---

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Ո՛վ բանդ Աստուած, որ ամէն ժամանակներէն առաջ կանուխ կայիր ; կոյսէն մարմին առնելով , այսօր տաճարը եկար մովսիսական օրէնքը կատարելու հեթանոսները փրկելու համար :*

*Դուն որ անձեռագործ աթոռի վրայ կը նստիս և հրեշտակներէն կը գովաբանուիս , այսօր Սիմէոն գրկեց զքեզ , որպէսզի քու յաւիտենական կեանքիդ նուիրես զմեզ :*

*Դուն որ կապուածները կ՚արձակես և ամենուն պարգև կուտաս , այսօր ծերունիին խնդրանքով յաւիտենական կեանքիդ մէջ մահուան կապերէն արձակէ՝ զիս ալ , որ յոյժ մեղաւոր եմ :*

*Հայրական ծոցին ծնունդը , անսկիզբը բանն Աստուած այսօր տաճարը գալով՝ արարածները կը նուիրէ երկինք հօր Աստուծոյ :*

*Այսօր ծերունիին գրկին մէջ կրուեցաւ նա որ իր խօսքով կը կրէ արարածները , օրհնենք զայն :*

*Մենք հաւատացեալներս ալ այսօր Սիմէոն ծերունիին հետ օրհնե՛նք բանն Աստուածը, որ հօր Աստուծոյ և հոգւի Աստուծոյ հետ նոյն գոյութիւնը ունի։*

*Այսօր տաճար գալով Սիմէոնի գրկին մէջ փայփայուեցաւ կեանք տուողը, զոր ուրախութեամբ ընդունեց Երուսաղէմ։*

*Այսօր այս աշխարհը երկինք կոչուեցաւ, որովհետև տէրերուն տէրը երկինքէն երկիր իջաւ, և յանձն առաւ իբրև նուէր հօր Աստուծոյ մատուցուիլ իր արարածներուն ձեռքով։*

*Այսօր Քրիստոս Աստուած հեթանոսներուն լոյս և Իսրայելի իր ժողովուրդին ալ փառք յայտնուեցաւ։*

*Ո՛վ փրկիչ, այսօր տաճարը եկար, և ծերունին զքեզ իր գրկին մէջ ընդունելով կ՚ըսէր. ո՛վ տէր, այլ ևս այս աշխարհէն ճամբէ՛ զիս՝ քու ծառադ։*

*Այսօր լոյս յայտնուեցար աշխարհի, և տիեզերքին ալ փրկութիւն, ո՛վ Քրիստոս Աստուած. ապրեցո՛ւր զմեզ, դու որ մարդիկը կը սիրես։*

*Այս հոգեւոր արեւը՝ Քրիստոս Աստուած ծագեցաւ ընդհանուր աշխարհին համար, ապրեցուր զմեզ դու որ մարդիկը կը սիրես։*

*Բանն Աստուած նախ մարմին առաւ կոյսէն, այսօր ալ փայփայուեցաւ տաճարին մէջ։*

*Ծերունին իր ճերմակ մազերով կը ցնծար, Աստուածորդին գիրկն առած, և Աստուծոյ գոհութիւն կը մատուցանէր, ըսելով։*

*Արդ, կրնաս, ո՛վ տէր, զիս՝ քու ծառադ խաղաղութեամբ ճամբել այս աշխարհէն քու խօսքիդ համեմատ, որովհետև աչքերս տեսան զքեզ, փրկող Աստուածդ։*

Հ Կ'օրհնենք զքեզ անբացատրելի բանդ Աստուած, որ հօր Աստուծմէ զրկուեցար սուրբ կոյսէն մարմին առնելու, ո՛վ մեր հայրերուն Աստուածը :

Ո՛վ անըմբռնելի Փրկիչ, այսօր տաճարը եկար, և Սիմէոնի գրկին մէջ փայփայուեցար, ո՛վ մեր :

Ուստի Սիմէոն ալ հոգեւոր ձայնով կ'աղաղակէր. տէր, կրնաս, ո՛վ տէր, զիս՝ քու ծառադ խաղաղութեամբ ճամբել այս աշխարհէն քու խօսքիդ համեմատ։

Օրհնեցէք տէրը, և ի սպառ փառաւորեցէք զայն :

Որ անարատ կոյսին ամենասուրբ որովայնէն ծնաւ, օրհ :

Որ այսօր տաճարը եկաւ և Սիմէոնի գրկին մէջ ընդունուեցաւ, օրհ :

Մ Այսօր Սիմէոն իբրև քրօբէական աթոռ երեւցաւ, և իր գրկին մէջ կրեց մարմնով Աստուածորդին, զոր երկնային զօրքերը երկնից մէջ չարունակ կը փառաւորեն :

Ծերունին հոգիովը կ'աղաղակէր, ճերմակ մազերովը կը ցնծար, և կ'ըսէր. սա՛ է անմահ թագաւորը, զոր երկնային :

Կուլար և կը պաղատէր. խաղաղութեամբ ճամբէ՛ զիս այս աշխարհէս, քու մաքուր ծնողիդ բարեխօսութեամբ, զոր երկնային :

Ո Սիմէոն սուրբ հոգիէն հրաման առած էր մահը չտեսնել մինչև որ տեսնէ զքեզ՝ օծեալդ. ո՛վ տէր, ծերուկին աղօթքովը ողորմէ՛ :

Որ իր գիրկը առնելով զքեզ՝ օծեալդ, և կը խընդրէր մեռնիլ քեզմէ որ կեանք կը պարգեւես, և խաղաղութեամբ ճամբուիլ այս աշխարհէն. ո՛վ տէր :

Որուն գրկին մէջ փայփայուեցար այսօր և կատարեցիր տաճարին մէջ զքեզ Աստուծոյ նուիրելու համար անոր ունեցած փափաքը, ո՛վ տէր։

Տ Ո՛վ Քրիստոս, զոր վերը երկինքին մէջ հոգեւոր զօրքերը կը փառաւորեն, այսօր տաճարը եկար Աստուծոյ նուիրուելու, որպէսզի արարածները նուիրես քու բարձրեալ հօր։

Ծերունիին գրկին մէջ կրուեցար մարմինով, դու որ խօսքովդ կը կրես արարածները, ո՛վ Քրիստոս, որ մեզի համար սուրբ կոյսէն մարմին առիր։

Ուստի մենք ալ Սիմէոնին հետ կ'աղաղակենք. փառաւորեա՛լ ըլլայ քու գալուստդ, ո՛վ տէր, որ հօր Աստուծմէ իբրև լոյս և իբրև կեանք յայտնուեցար մեզի։

ՃՇ Անսկիզբ բանն Աստուած, անսկիզբ հօր Աստուծոյ ծնունդը, կոյսէն սկիզբ առաւ մարմին հագնելով, անոր որովայնին մէջ բովանդակեցաւ, և հօր Աստուծոյ հետ միացած դարձեալ, որոշեալ ժամանակին մէջ ծընաւ իբրև Աստուած և իբրև մարդ։

Աննիւթը, նիւթ ըլլալով, օրէնքին տակ մտաւ. Աստուածորդին որ հօրը ծոցին մէջ է, իբրև քառանօրեայ մանուկ ծերունիին գրկին մէջ կը կրուի որպէսզի հօր Աստուծոյ ընծայէ զմեզ՝ հողէն ծնածներս, և յայտնապէս կը քարոզուի իբրև Աստուած և իբրև մարդ։

Ուստի Սիմէոն ալ հոգիովը կը ցնծար և կ'աղաղակէր տաճարին մէջ. արդ, կ'ըսէ, ո՛վ տէր, զիս քու ծառադ խաղաղութեամբ ճամբել այս աշխարհէս, որովհետև տեսայ զքեզ, որ համարակաց Փրկիչն ես իբրև Աստուած և իբրև մարդ։






ԿԵԴՐՈՆԱՏԵՂԻՆ Է

ՎԱՀՐԱՄ Ց. ՄԱՐԳԱՐԵԱՆԻ

ԳՐԱՏՈՒՆԸ

Կ. Պոլիս, Մէրճան փողոց Թիւ 57

☞ *Միւս համարներուն համար տե՛ս այս Հատորի սկիզբը :*

---

معارف نظارت جلیله‌سنك و مطبوعات داخلیه مدیریت علیه‌سنك
٦٦٨ نومرولی رخصتیله طبع اولنمشدر .

# ՇԱՐԱԿԱՆՔ
# ՀԱՅ. Ս. ԵԿԵՂԵՑՒՈՅ

## Բ.

ԱՇԽԱՐՀԱԲԱՐԻ ՎԵՐԱԾԵՑ

ԵՐՈՒԱՆԴ Տ. ԱՆԴՐԷԱՍԵԱՆ

معارف نظارت جليله سنك فى ٢٤ حزيران ١٣١٩ و [illegible]
رخصتنامه سيله طبع و نشر اولنمش[illegible]

Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Մ. ՍԱՐՂԵԱՆ
Պապը-Ալի ճատտէսի թիւ 38

1904

# ՇԱՐԱԿԱՆՔ
# ՀԱՅ. Ս. ԵԿԵՂԵՑԻՈՅ

## ԿԱՆՈՆ ԲՈՒՆ ԲԱՐԵԿԵՆԴԱՆԻՆ

ԱՀ Բանն որ ընդ հօր յէութեանն եւ համագոյ
ՏՀ սուրբ հոգւոյն, զպատկերն իւրական խառնեալ
ԻԵ ընդ հողանիւթ բնութեանս, զոր զարդարեալ
փառօք եդ ի դրախտին փափկութեան :

Յորում ցնծայր զուարճացեալ անտխրական խնդութեամբ, քանզի զԱստուած տեսանէր միշտ խոնարհեալ ի դրախտին, յորմէ զլուսոյն ճառագայթ տպաւորէր ի յինքեան :

Վասն որոյ աղաչեա մայր Աստուծոյ Մարիամ զմիածին քո զորդին, զի շնորհեսցէ ըստ աւազակին ժառանգել վերստին մեզ զդրախտին վայելչութիւն :

Այսօր յօրինակ նախաստեղծին Ադամայ, որ ի դըրախտին փափկութեան ուրախանայր ընդ հրեշտակս, ցնծասցուք եւ մեք ի յօրհնութիւնս հոգեւորս :

Այսօր ի խորհուրդ աստուածաստեղծ նախահօրն, որ ի պտղոյն Ագինայ ճաշակելով զուարճանայր, ճաշակեսցուք եւ մեք զպատուիրանս Աստուծոյ :

Այսօր ի տիպ պատմուճանին առաջնոյ, որով պճնեալ զարդարիւր ի փառս մարդն առաջին, զարդարիցուք եւ մեք աստուածային օրհնօք :

Ընծա Մարիամ արեգականն արդարութեան արե-ւելք եւ աղաչեա զնա ի քէն զծնեալն Աստուած վասն մեր, զի դարձուսցէ վերստին զմեզ ի դրախտին ժա-ռանգութիւն :

Հ Ուրախացիր եկեղեցի Քրիստոսի փրկական

Յ տնօրինութեամբ մարմնացելոյն ի կուսէն վասն քո Աստուծոյ հարցն մերոց :

Այսօր ցնծան որդիք Ադամայ քանզի որ ի սկզբանն օրինադիր պահոցն ի դրախտին վասն մեր պահել մարմ-նով յանձն առնու, Աստուած հարցն :

Այսօր երկրորդ Ադամ վասն առաջնոյն անճաշակ լինելով զճաշակաց պտղոյն քաւեալ զպարտիս, Աստ :

Գ Զտէր օրհնեցէք բարձր արարէք զնա յաւիտեան:

Որ ըստ պահոց քառասնօրեայ փրկողին պահելով հարսնացեալ եկեղեցի զի մտցէ ի յառագաստ ընդ փեսա-յին յարուցելոյ, բարձր :

Եկայք հաւատացեալք Քրիստոսի ցնծութեամբ պա-հեսցուք ընդ անմահին մահու մեռանելով մեղաց, զի յարութեամբ նորա կենդանասցուք արդարութեամբ, բարձր :

Մ Որ ընտրեցար ի սկզբանէ անապականն կոյս Մա-րիամ լինել տաճար սրբութեան անճառ լուսոյն որ ի հօ-րէ, առ նա միշտ բարեխօսեա կեցուցանել զմեզ :

Որ առ ի քէն երկրորդ Ադամ վասն առաջնոյն յան-ցանաց բնութեամբ մերով պահելով զմահաբեր պտղոյն լուծեալ զպատրանս, առ նա :

Արդ աղաչեա մայր Աստուծոյ զծնեալն ի քէն վասն մեր զի ընդ նմին պահելով սուրբ յարութեամբ նորա նորոգեսցուք, առ նա :

Ո Ողորմեա ինձ Աստուած ։

Որ զառաջինն ոչ պահելով զպատուիրանն մեռաք, շնորհեցեր քեւ օրինակ մեզ պատուիրան կենաց զի պահելով կենդանասցուք, ողորմեա ։

Որ ի խորհուրդ քո կամաւոր մահուան եկեղեցի քո Քրիստոս մեռանելով օրինաց մեղաց զի յարուցեալ ընդ քեզ նորոգեսցի ի փառս, ողորմ ։

Տ Փառք յարութեան քո տէր ։

Որ տրտմական չարչարանաց խաչի քո Քրիստոս եկեղեցի հեթանոսաց չարչարակից գոլով քեզ սրբութեամբ պահօք, փառք յարու ։

Տուր մեզ տէր ժամու քո նմանիլ մեռելութեամբ մեղաց, զի եւ կենաց քոց հաղորդիլ արժանասցուք կենդանարար արքայութեանդ, փառք յարու ։

---

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Բանն Աստուած որ հայր Աստուծոյ էակից եւ սուրբ Հոգիին գոյակից է, իր սեփական պատկերը միացուց մեր հողեղէն բնութեան (Ադամին) հետ, զոր փառքով զարդարելով դրաւ եդեմական (փափուկ) դրախտին մէջ ։*

*Ուր նա (Ադամ) կը խայտար եւ կը զուարճանար անտրտում ուրախութեամբ, որովհետեւ կը տեսնէր միշտ զԱստուած դրախտին մէջ իջած, եւ անոր սեփական լոյսին ճառագայթը կը դրոշմէր իրեն վրայ ։*

*Ուրեմն, ո՛վ Մարիամ, Աստուծոյ մայրը, աղաչէ՛*

քու միածին որդւոյդ որպէսզի շնորհ ընէ մեզ դարձեալ ժառանգել դրախտին վայելչութիւնը, ինչպէս շնորհ ըրաւ աւազակին ։

Այսօր նախաստեղծ Ադամին պէս որ եդեմական դրախտին մէջ հրեշտակներուն հետ կ'ուրախանար, մենք ալ հրճուինք հոգեւոր օրհնութիւններով ։

Այսօր աստուածաստեղծ նախահօր (Ադամին) օրինակին համեմատ, որ Եդեմի պտուղէն ճաշակելով կը խայտար, մենք ալ ճաշակենք Աստուծոյ պատուիրանները ։

Այսօր առաջին պատմուճանին նմանութեամբ որով առաջին մարդը կը պճնուէր և փառքով կը զարդարուէր, մենք ալ զարդարուինք աստուածային օրէնքներով ։

Հրճուէ՛, ո՛վ Մարիամ, որ արեւելք եղար արդարութեան արեւին (Քրիստոսի), և աղաչէ՛ մեզի համար քեզմէ ծնած Աստուծոյն որպէսզի նորէն դարձնէ զմեզ դրախտին ժառանգութեան ։

Է՝ Ուրախ եղիր, ո՛վ Քրիստոսի եկեղեցի, այն փրկական կարգադրութեան վրայ, զոր ըրաւ քեզի համար կոյսէն մարմին առնող մեր հայրերուն Աստուածը։

Այսօր կը հրճուին Ադամին զաւակները, որովհետև մեր հայրերուն Աստուածը, որ նախապէս պահքը իբրև օրէնք դրաւ դրախտին մէջ, մեզի համար յանձն կ'առնէ պահք պահել մարմինով (իբրև մարդ) ։

Այսօր մեր հայրերուն Աստուածը՝ երկրորդ Ադամը (Քրիստոս) առաջին Ադամին համար ծոմ պահելով քաւեց պտուղը ուտելուն մեղքը ։

Օրհնեցէք տէրը և ի սպառ փառաւորեցէք զայն ։

Փրկչին քառասնօրեայ պահեցողութեան նման պահք կը պահէ անոր հարս եղած եկեղեցին, որպէսզի յարութիւն առնող փեսային հետ առագաստին մէջ մտնէ, ի սպառ։

Ո՛վ Քրիստոսի հաւատացեալներ եկէք պահք պահենք սրտի ուրախութեամբ անմահ Քրիստոսին հետ՝ մեր մեղքերուն համար մեռնելով, որպէսզի արդարացած կենդանանանք անոր յարութեամբ, ի սպառ։

Մ Ո՛վ անարատ կոյս Մարիամ, որ կանուխէն ընտրուեցար սուրբ տաճար ըլլալու հօրմէն ծագող անպատմելի լոյսին, միշտ բարեխօսէ անոր որ կեանք տայ մեզ։

Քեզմէ ծնած երկրորդ Ադամը առաջին Ադամին յանցանքին համար մեր բնութիւնն առնելով պահք պահեց, մահառիթ պտուղին յուսախաբութիւնը ի դերեւ հանելով, միշտ բա։

Ուրեմն, ո՛վ աստուածամայր, աղաչէ՛ մեզի համար քեզմէ ծնածին որպէսզի իրեն հետ պահք պահելով նորոգուինք իր սուրբ յարութեամբ, միշտ բա։

Ո Ողորմէ ինծի, ո՛վ Աստուած։

Առաջին անգամ պտուղը չպահելով մեռանք. քու օրինակովդ շնորհեցիր կենսատու պատուիրան մը որպէսզի զայն պահելով կեանք առնենք, ողորմ։

Ո՛վ Քրիստոս, քու եկեղեցիդ քու կամաւոր մահուանդ օրինակին համեմատ կը մեռնի մեղք պատճառող օրէնքին համար, որպէսզի քեզի հետ յարութիւն առնելով փութով նորոգուի, ողորմ։

Տ Ո՛վ տէր, փառաւորեալ ըլլա՛յ յարութիւնդ։

Ո՛վ Քրիստոս, հեթանոսներէն կազմուած եկեղեցին սուրբ պահեցողութեամբ մասնակից կ'ըլլայ քու խաչիդ տրամառիթ չարչարանքներուն, ո՛վ Տէր, փառա։

Ո՛վ Տէր, շնորհէ մեզ որ քու մահուանդ նմանինք՝ մեղքի համար մեռնելով, որպէսզի արժանի ըլլանք նաև մասնակից ըլլալու քու կեանքիդ, այսինքն քու կենդանարար յարութեանդ, ո՛վ Տէր, փառա։



# ԿԱՆՈՆ ԵՐԿՐՈՐԴՈՒՄ ԿԻՒՐԱԿԷԻ

## ԱՂՈՒՀԱՑԻՑՆ

---

Ա։ Որ զօրէնս սրբութեան պահոց նախ ի դրախ-
–Յ տին աւանդեցեր, զոր ոչ պահելով նախա-
ԺԲ ստեղծիցն ճաշակմամբ պտղոյն ճաշակեցին ըզ-
դառնութիւն մեղաց եւ մահու, վասն որոյ շնորհեա մեզ տէր ճաշակել զքաղցրութիւն քոց պատուիրանաց։

Որ զանազան վիրօք մեղաց հարաք յոգիս ի բնամւոյն եւ ի բազմապատիկ հիւանդութիւնս կարօտացաք մարդասիրիդ բառնալոյ զցաւս մեր, վասն որոյ բժշկեա զմեզ Քրիստոս որպէս մարդասէր։

Որ եկիր ի փրկութիւն մարդկան ծննդեամբ կուսին Մարիամու, եւ կենդանարար քո յարութեամբդ հրաւիրեցեր զմահացեալսն ի յարութիւն անմահութեան, վասն որոյ աղաչանօք մօր քո կեցո զմեզ փրկիչ։

Որ զերագոյն փառօք բարձրացուցեր զմանկունս եկեղեցւոյ քո Քրիստոս խոնարհութեան քո ճանապարհաւ առաջնորդելով ի յերկնայինն վարս հրեշտակաց, աղաչեմք առաջնորդեա մեզ տէր ի յարդարութիւն։

Որ զդառնութեան պտղոյն ճաշակն որով մեռաք արդարութեան՝ պահելով քո քառասնօրեայ փոխեցեր ի քաղցրագոյն օրինաց քոց ճաշակումն, աղաչեմք արբո մեզ տէր զուարախարար սիրոյ քո զբաժակն։

Որ անապական ծննդեամբդ քո լուծեր զերկունս նախամօրն, Մարիամ մայր Աստուծոյ, բարեխօսեա առ

միածին որդին լուծանել զկապանս մեղաց մերոց եւ աղաչեա փրկել զանձինս մեր ի փորձութենէ :

Է Որ յառաջ քան զյաւիտեանս անժամանակ
—Ի ծնեալ ի Հօրէ անճառելի բանդ Աստուած, որով եղեն երկինք եւ երկիր, օրհնեմք զքեզ Աստուած հարցն մերոց:

Որ ի պատկեր աստուածութեանդ քո զարդարեցեր զմարդն առաջին, եւ զպատուիրանն ոչ պահելով դարձաւ ի հող ընդ մահու անկեալ թագաւորութեան, օրհ :

Որ զգթութիւն արարչական սիրոյ քո ոչ դարձուցեր յորդւոց ադամայ, այլ շնորհեցեր զոյս անդրէն դառնալոյ ի կեանս, որով զնովք յանմահութիւն վերափոխեցեր, օրհ :

Գ Զտէր օրհնեցէք բարձր արարէք զնա յաւիտեան:

Ընդ նախահօրն տրտմութեան որ վասն եղիցն ի դըրախտէն կենաց, ընկալցուք եւ մեք զտրտմութիւն ապաշխարութեան, զի յարութեամբն Քրիստոսի արժանասցուք մտից դրախտին եկեղեցւոյ, բարձր :

Ընդ Ենովսայ նահապետին որ յուսացաւ կոչել զանուն տեառն Աստուծոյ, յուսասցուք եւ մեք յարութեամբն Քրիստոսի յառնել նովաւ ի կեանսն յաւիտենից, բարձր:

Մ Որ զկեանքն անմահարար մահկանացու բնութեանս ի քեզ կրեցեր սուրբ կոյս Մարիամ, որով մեռեալքս որք յԱդամայ կենդանացաք յուսով յարութեան. առ նա միշտ բարեխօսեա վասն անձանց մերոց :

Որ զբանն անեղական զէակն էից գոյացութեանց անճառաբար ծնար մարմին եղեալ ի փրկութիւն եղականացս, առ նա :

Որ զպտուղն ի քէն կենաց ընծայեցեր մեռեալն Ադամայ, զորոյ պահօք քառասնօրեայ քաւեաց զպտղոյն

ճաշակումն եւ յանվախճան զնոյն վերածեաց ի կեանս, առ Նա :

Ո Որ առաքեցար ի հայրական ծոցոյ ծածկեալ խորհուրդ ընդ հօր յաւիտեան, եւ առեր մարմին զմեղուցելոյ նախաստեղծին յանապական կուսէն անճառ միութեամբ, վասն մերոյ փրկութեան ողորմեա :

Որ փոխանակ ճաշակացն դառնութեան մահաբեր պտղոյն անճաշակ լինելով քո քառասնօրեայ, քաղցրացուցեր յուսով զլուծ նոր քո օրինաց, վասն :

Որ յաջակողմ աւազակին բացեր զդուռն դրախտին կենաց, բաց եւ մեզ մեղաւորացս ողորմութեամբ որք ընդ նմին զքեզ դաւանիմք տէր եւ թագաւոր, աղաչեմք զքեզ, ողորմեա :

Տ Որ անմարմնոց հոգեղինաց դասակցեցեր Քրիստոս սուրբ զեկեղեցի, որք ընդ նոսին համաձայնեալ փառաւորեմք սուրբ զերրորդութիւնդ սրոբէական սրբասացութեամբ երգելով զփառս ի բարձունս:

Որ յաղթեցեր մերով բնութեամբս ի փորձութեան կամակոր օձին, որով ետուր իշխանութիւն որդւոց Ադամայ կոխել զգլուխ չար վիշապին, եւ ընդ երկնայնոցն երգել զփառս ի բարձունս :

Որ գալստեամբ քո վերածեր զմեզ յաշխարհական մեղաց ծովէս, տպաւորեալ լրմամբ ուռկանի վիմին հաւատոյ զոր ի ծովուն հրաշագործեցեր, երգեմք քեզ զփա:

# ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Պահեցողութեան սուրբ օրէնքը նախ և առաջ դըրախտին մէջ հաստատեցիր, բայց նախաստեղծները (Ադամ և Եւա) չպահեցին զայն, և (արգիլուած) պտուղը ուտելով՝ մեղքին և մահուան դառնութիւնը կերան. ուստի, ո՛վ տէր, շնորհ ըրէ մեզ որ ճաշակենք քու պատուիրաններուդ քաղցրութիւնը։*

*Թշնամին (սատանան) զանազան մեղքերու վէրքերով մեր հոգիները զարկաւ վիրաւորեց, և բազում հիւանդութիւններու մէջ կարօտ եղանք քեզ՝ մարդասէր տիրոջդ, որպէսզի փարատես մեր ցաւերը. ուստի բժշկէ զմեզ, ո՛վ Քրիստոս, որ մարդասէր ես։*

*Կոյս Մարիամէն ծնելով մարդիկը փրկելու եկար, և քու կենդանարար յարութեամբդ մեռածները հրաւիրեցիր անմահ յարութեան. ուստի կեանք տո՛ւր մեզ, ո՛վ փրկիչ, քու մօրդ աղաչանքով։*

*Ո՛վ Քրիստոս, վսեմ փառքով պատուեցիր քու եկեղեցիիդ զաւակները, քու խոնարհութեանդ օրինակով առաջնորդեցիր զանոնք հրեշտակներու երկնային վարմունքին. կ՚աղաչենք, ո՛վ տէր, առաջնորդ եղիր, տա՛ր մեզ դէպ ի արդարութիւն։*

*Դառն պտուղը ուտելով արդարութեան համար մեռանք. բայց դուն քառասուն օր պահեցողութիւն ընելով նոյն դառն համը փոխեցիր քու օրէնքիդ աւելի քաղցր համին. կ՚աղաչենք, ո՛վ տէր, խմցո՛ւր մեզ քու սիրոյդ ուրախացուցիչ բաժակը։*

*Ո՛վ Մարիամ, Աստուծոյ մայրը, քու անարատ ծը-*

նուիրովդ նախամօր Եւային ցաւերը փարատեցիր, բարեխօսէ միածին որդւոյն որ քակէ մեր մեղքերուն կապերը, և աղաչէ՛ որ մեր անձերը փրկէ փորձութիւններէ։

Է Ո՛վ անպատմելի բանդ Աստուած, որմէ ըստեղծուեցան երկինքն ու երկիրը, բոլոր դարերէն առաջ առանց ժամանակի ծնար Աստուծմէ. կ'օրհնենք զքեզ ո՛վ մեր հայրերուն Աստուածը։

Քու աստուածութեանդ պատկերով զարդարեցիր առաջին մարդը, որ պատուիրանը չպահելով հող դարձաւ և մահուան իշխանութեան տակ ինկաւ, կ'օրհ։

Իբրև արարիչ քու սէրդ և գութդ չվերցուցիր Ադամին զաւակներուն վրայէն, այլ շնորհեցիր դարձեալ կենդանանալու յոյսը, որով անմահութեան վերածեցիր Ենովքը, կ'օրհ։

Օրհնեցէք տէրը և իսպառ փառաւորեցէք զայն։

Կեանքի դրախտէն դուրս ելնելուն համար նախահայր Ադամին տրտմութեան փոխարէն՝ մենք ալ ապաշխարութեան տրտմութիւնը ընդունինք, որպէսզի Քրիստոսի յարութեամբ արժանի ըլլանք եկեղեցիին դրախտը մտնելու, ի սպառ։

Ենովք նահապետին հետ որ մասնաւոր յուսով տէր Աստուծոյ անունը կանչեց, մենք ալ յուսանք թէ Քրիստոսի յարութեամբ անոր հետ յաւիտենական կեանքին մէջ պիտի արթննանք, իսպառ։

Մ Ո՛վ սուրբ կոյս Մարիամ, քու մէջդ կրեցիր մեր մահկանացու բնութիւնը անմահացնող կեանքը, որով Ադամի սերունդէն եղողներս՝ որ մեռած էինք, կեանք առինք յարութեան յուսով. միշտ բարեխօսէ անոր մեր անձերուն համար։

*Անպատմելի կերպով ծնար բոլոր արարածներուն արարիչը, բանն Աստուածը, որ ո՛չ մէկէն ստեղծուած է, և որ մարմին առաւ փրկելու համար զմեզ՝ արարածներս, միշտ բար։*

*Մեռած Ադամին նուիրեցիր քեզմէ ծնած կենսատու պտուղը, որ քառասնօրեայ պահեցողութեամբ քաւեց անոր յանցանքը՝ արգիլուած պտուղը ուտելուն հետեւանօք, և զայն վերածեց անվախճան կեանքին, միշտ բար։*

Ո *Հայրական ծոցէն ղրկուեցար, ո՛վ ծածկուած խորհուրդ որ հայր Աստուծոյ հետ ես յաւիտեան, և անապական կոյսէն մեղանչող Ա՛դամին մարմինը առիր անպատմելի միաւորութեամբ (աստուածութեանդ հետ). մեր փրկութեան համար գութ ունեցիր։*

*Դառնահամ մահաբեր պտուղին փոխարէն քառասուն օր բերանդ բան չդնելով քու Նոր օրէնքիդ լուծը (ծանրութիւնը) թեթեւցուցիր, (նոր կեանքի մը) յոյսը տալով մեզ, գութ ունե։*

*Աջակողմեան աւազակին առջև բացիր կեանքի դրախտին դուռը. գթալով բա՛ց նաև մեր՝ մեղաւորներուս առջև, որ անոր հետ կը խոստովանինք զքեզ տէր և թագաւոր. կ՚աղաչենք գութ ունեցիր մեր վրայ։*

Տ *Ո՛վ Քրիստոս, անմարմին հոգեղէն հրեշտակներուն դասակից ըրիր սուրբ եկեղեցին (քու հաւատացեալներդ, զմեզ), որ անոնց հետ միաբերան կը փառաւորէ սուրբ երրորդութիւնդ, սերովբէներուն հետ սո՛ւրբ, սո՛ւրբ, սո՛ւրբ կը գոչէ, և կ՚երգէ քու փառքըդ երկնքին մէջ։*

*Մեր բնութեամբ յաղթող եղար յամառ օձին (սատանային) փորձութեան պահուն, և հետեւաբար Ադամի զաւակներուն արտօնութիւն տուիր չար վիշապին գլուխը ճզմելու և երկնաբնակներուն հետ երգելու քու փառքդ երկնքին մէջ։*

*Քու գալուստիդ շնորհիւ զմեզ վեր առիր մեղքի այս աշխարհային ծովէն, իբրև օրինակ ցոյց տալով հաւատոյ վէմին (Պետրոսի) ուռկանը զոր հրաշքով լեցուցիր ծովուն մէջ. կ'երգենք քու փառքդ երկնքին մէջ։*



# ԿԱՆՈՆ ԵՐՐՈՐԴՈՒՄ ԿԻՐԱԿԷԻՆ

Ա։ Օրհնեմք զքեզ անսկիզբն հայր որդւոյդ միած-
Ձ։ նի զոր առաքեցեր ի դարձումն մոլորեալ ոչ-
Լ խարին, դարձո եւ զմեզ ի մեղաց որդւոյ քո չարչարանօք։

Գովեմք զքեզ բան եւ լոյս որ զտիրական քո պատկեր լուսով հրաշի քո գտեալ վերականգնեցեր, կանգնեա զանկեալքս մեղօք քոյին սուրբ չարչարանօք։

Բարեբանեմք զփառակիցդ հօր զհոգին ճշմարիտ որ նորոգեցեր զհնացեալքս մեղօք հինոյն Ադամայ, նորոգեա եւ զմեզ ի մեղաց նորոգութեամբ քո շնորհաց։

Ուրախացիր բարձրելոյն հովանացեալ զօրութեամբ եւ բնակարան սուրբ հոգւոյն, որով ծնար զբանն Աստուած, բարեխօսեա վասն մեր աստուածածին Մարիամ։

Լոյս ի լուսոյ ծնունդ եւ ծագումն որ եկիր ի խնդրել մոլորեալ ոչխարի բնութեանս, զոր ընդ խաչին բարձեր ի վերայ ուսոյդ, մաքրեա զմեզ ի մեղաց մերոց։

Սուրբդ սրբոց եկից մաքրութիւն, որ ածեր տան քո աւել ի մեղաց զաշխարհս մաքրելով, ի նմա գտեալ զպատկեր քո նորոգեցեր, նորոգեա զմեզ ի հնութենէ մեղաց։

Ընդ անառակին որդւոյ գոչեմք առ հայրդ զթած մեղաք յերկինս եւ առաջի քո քաւիչ յանցանաց, եւ ընդ առաջ սիրով գրկեա համբուրիւ, մաքրեա զմեզ։

Աղբիւր կենաց բխեալ յԵդեմայ սուրբ աստուածածին, որով արբեցաւ երկիր ծարաւուտ հոգւոյն իմաստիւք, տալ մեզ մաղթեա աղբիւրս արտասուաց, մաքրել։

Է Որ զտիրական կերպարան զգեցուցեր ծառա-
Բէ յին՝ եւ զարդարեալ փառօք եղիր ի դրախտին, օրհնեալ ես տէր Աստուած հարցն մերոց :

Որ նահապետմամբ պտղոյն մահու անմահից կենաց մեռար, իսկ զալստեամբ քո վերստին փակեալ դրախտին դուռն բացաւ, օրհ :

Որ փոխանակ մահաբերին, որով անէծքն տրտմագին, մեզ փայտ կենաց ետուր զխաչ քո, լուծեր նովաւ զկապ մահու, օրհ :

Գ Զտէր օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան :

Որ ապրեցոյց զՆոյ տապանաւն պահելով հայր աշխարհի, եւ զհեղեղ մեղաց մարդկան հեղեղաւ ջուրց դադարեցոյց, եւ բարձր :

Որ ի ծով այս աշխարհի շինեաց տապան զեկեղեցի, եւ ի սմա զօծանդակեալ հոգիս փրկեաց ի ջուրց մեղաց, եւ բարձր :

Մ Ուրախ լեր մայր լուսոյ Մարիամ երկիր բանաւոր արեգականն օրարան, լեր բարեխօս վասն անձանց մերոց :

Խնդա տաճար բանին Աստուծոյ, բարձող տրտմութեան նախամօրն Եւայի, լեր :

Ցնծա իմանալի արեւելք, քանզի քեւ ծագեաց մեզ լոյս երեւաց Քրիստոս, լեր :

Ո Որ խոնարհեցար ի բարձանց հովիւդ քաջ թողեալ յերկինս զհօտ քո անմոլար, վասն մոլորեալ ոչխարին ողորմեա մեզ Աստուած :

Որ լուսով աստուածութեան քո լուցեր զճրագ մարմնոյդ, ածեր աւել տան քո աշխարհի, վասն պատկերի քո զոր նորոգեցեր, ողոր :

Որ դարձմամբ անառակի մարդկութեանս եզնդ պարարակ հօր հաճութեամբ զենար պատարագ, վասն հաշտութեան երկնաւորաց եւ երկրաւորացս, ողոր:

Տ Ընդ լուսափայլ զուարթնոցն զյարուցեալն օրհ-նեսցուք եւ մաղթելով խնդրեսցուք մաքրել զմեզ իմեղաց:

Ընդ խնկաբեր սուրբ կանանցն անմահ բուրմանն անուշից, խունկս աղօթից մատուցուք, մաք:

Ընդ իւղաբերիցն արտասուս զմարդկան բարձողն արտասուաց, պաղատեսցուք արտասուօք, մաք:

Ընդ Քրիստոսի պահելով յաղթող լիցուք փորձողին, եւ ընդ հրեշտակս երգեսցուք փառք ի բարձունս Աստուծոյ:

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Կ'օրհնենք զքեզ, ո՛վ անսկիզբն հայր Աստուած, որ քու միածին որդիդ ղրկեցիր դարձի բերելու համար մոլորած ոչխարը. քու որդւոյդ չարչարանքներուն շնորհիւ զմեզ ալ մեղքերէն դարձի բեր:*

*Կը գովենք զքեզ, ո՛վ բանդ Աստուած եւ ո՛վ լոյս, որ քու ճրագիդ լուսով երեւան հանելով քու իսկական պատկերդ նորէն բարձրացուցիր զայն. քու սուրբ չարչարանքներուդ շնորհիւ կանգնէ՛, վեր ա՛ռ զմեզ որ մեղքերով վար ինկած ենք:*

*Կը դրուատենք զքեզ, ո՛վ ճշմարիտ Հոգի, հայր Աստուծոյ փառակից, որ վերանորոգեցիր հին Ադամին*

*մեղքով հինցածներս. զմեզ ալ մեղքերէն վերանորոգէ՛ քու նորագոյն շնորհներովդ։*

*Ուրախ եղիր, ո՛վ աստուածածին Մարիամ, որուն հովանի է բարձրեալ Աստուծոյ զօրութիւնը և սուրբ հոգիին բնակարանն ես, որով ծնար բանն Աստուածը. բարեխօսէ՛ մեզի համար։*

*Ո՛վ լոյս (Քրիստոս), լոյսէն (հայր Աստուծմէ) ծնար և ծագեցար և եկար փնտռելու մոլորած ոչխարը, այսինքն մեր բնութիւնը, զոր խաչափայտին հետ՞ կրեցիր ուսիդ վրայ. մաքրէ զմեզ մեր մեղքերէն։*

*Ո՛վ սուրբերուն սուրբը և արարածներուն մաքրիչը, որ աւլեցիր քու տունդ՝ այս աշխարհը մեղքերէն մաքրելով, հոն դտնելով քու պատկերդ, նորոգեցիր զայն. զմեզ ալ նորոգէ՛ հին մեղքերէն։*

*Անսառակ որդիին հետ կ՚աղաղակենք գթած հօրդ, մեղք գործեցինք երկնքի և քու առջեւդ որ յանցանքները կը քաւես. դիմաւորէ՛ սիրով, գիրկդ ա՛ռ համբուրէ՛, մաքրէ՛ զմեզ մեր մեղքերէն։*

*Ո՛վ սուրբ Աստուածածին, Եդեմէն բխող կեանքին աղբիւրն ես դուն, որով անջրդի երկիրը ոռոգեցաւ հոգիին իմաստութեամբ, աղաչէ՛ որ տայ մեզ արցունքի աղբիւրներ, որպէսզի մաքրէ զմեզ մեր մեղքերէն։*

Հ *Աստուածային կերպարանքդ հագցուցիր ծառային (մարդուն), և փառքով զարդարելով դրախտին մէջ դրիր. օրհնեալ ես ո՛վ մեր հայրերուն տէր Աստուածը։*

*Մահաբեր պտուղը ճաշակելով մեռանք անմահ տէրոջդ կեանքին համար (կորսնցուցինք այդ կեանքը), իսկ քու գալուստիդ շնորհիւ դարձեալ բացուեցաւ գոցուած դրախտին դուռը, օրհ։*

*Մահառիթ ծառին տեղ, որով այն ցաւալի անէծքը առաջ եկաւ, քու խաչդ տուիր մեզ իբրև կենանքի ծառ, և անով քակեցիր մահուան կապը, օրհ:*

*Օրհնեցէ՛ք տէրը և ի սպառ փառաւորեցէք զայն։*

*Տապանով ազատեց Նոյը պահելով զայն իբրև աշխարհի հայր, և մարդոց մեղքերուն հեղեղը ջրհեղեղով դադրեցուց, և ի սպառ:*

*Այս աշխարհի ծովին մէջ եկեղեցին չինեց իբրև տապան, և անոր մէջ ապաստանած հոգիները փրկեց մեղքի ջուրերէն, և ի սպառ:*

Մ *Ուրախացիր ո՛վ Մարիամ, լոյսին մայրը, ո՛վ բանական երկիր, արեւուն բնակարանը, բարեխօս եղիր մեր անձերուն համար:*

*Հրճուէ՛, ո՛վ բանին Աստուծոյ տաճար, որ նախամայր Եւային տրտմութիւնը վերցուցիր, բարեխօս:*

*Ցնծա՛, հրճուէ՛, ո՛վ հոգեւոր արեւելք, որովհետև քու միջոցաւդ ծագեցաւ Քրիստոս որ մեր երեսը լուսաւորեց, բարեխօս:*

Ո *Ո՛վ քաջ հովիւ, երկինքի մէջ թողլով քու անմոլար հօտդ (հրեշտակները), բարձունքէն վար իջար մոլորած ոչխարին համար. ողորմէ՛ մեզ ո՛վ Աստուած:*

*Քու աստուածութեանդ լուսով վառեցիր մարմինիդ ճրագը, աւլեցիր քու տունդ՝ աշխարհը քու պատկերիդ համար զոր գտնելով նորոգեցիր, ողորմ:*

*Ո՛վ պարարակ եզ, անառակ մարդկութեան դարձին գալուն վրայ իբրև զոհ մորթուեցար հայր Աստուծոյ հաւանութեամբ, երկնաւորները և երկրաւորները հաշտեցնելու համար, ողորմ:*

Տ Լուսափայլ հրեշտակին հետ օրհնենք զայն որ յարութիւն առաւ, և մաղթենք ու խնդրենք որ զմեզ մաքրէ մեղքերէն ։

Անոյշ խունկ բերող սուրբ կիներուն անապառ բուրումներուն հետ մենք ալ աղօթքի խունկեր մատուցանենք որպէսզի զմեզ մաքրէ մեղքերէն ։

Իւղ բերող կիներուն արցունքներուն հետ մենք ալ արցունքներով պաղատինք աղաչենք մարդոց արցունքները վերցնողին, որպէսզի զմեզ մաքրէ մեղքերէն ։

Քրիստոսի հետ պահք պահելով յաղթե՛նք փորձողին (սատանային), և հրեշտակներուն հետ երգենք, փառաւորեալ թող ըլլա՛յ Աստուած որ երկինքը կը բընակի ։



# ԿԱՆՈՆ ՉՈՐՐՈՐԴՈՒՄ ԿԻՐԱԿԷԻ

## ՔԱՌԱՍՆՈՐԴԱՑՆ ՊԱՀՈՑ

ԱՀ Որ արարեր զօրութեամբ զիմանալեացն աշ-
ԳՅ խարհն վերինն, եւ ի նմա հաստատեցեր տնտես
ւր զպետս հրեղինացն, օրհնեմք զանհասանելի զօրութիւնդ ։

Որ տիրապէս մեծասունդ ստեղծեր երկրորդ աշխարհ զգալի, եւ ի դրախտն որ յադենի տնտես եդեալ զմարդն առաջին, օրհ ։

Որ շինեցեր բարձրագոյն զեկեղեցի քո խորհրդեամբ, եւ ի սմա կարգեալ տնտես զքարոզս բանին ճշմարտութեան, օրհ ։

Անտանելւոյն տաղաւար՝ բարձող էիցս բարձողին, որ ծնար զԱստուած մարմնով զանմարմնաբար ծնունդն հօր, բարեխօսեա վասն մեր աստուածածին Մարիամ ։

Որ տիրականս առ ի քէն կարգեալ տնտես բնութեան մերոյ, իմաստութեամբ զպարտիս եթող քոյոց պարտապանաց, թո՛ղ եւ զմեր զյանցանս ողորմութեամբդ քո Քրիստոս ։

Որ զպատմուճանն առաջին զոր զգեցուցեր օծմամբ հոգւոյն մերկացաք մեղօք ըստ նախահօրն պատրանաց, զգեցո զնոյն վերստին ողորմու ։

Յաստուածայինն կայծակունսն ի սրոքէիցն անհպելին, անմաքրապէս մերձեցաք գոլ պարտապան քում խորհրդոյ, շնորհեա զնոյն մաքրութեամբ ի թողութիւն մեղաց մերոց ։

Որ վառեցար ի յարփւոյն եւ ոչ կիզար ըստ մորենւոյն, այլ ետուր զհացն կենաց կերակուր բանաւորաց, բարեխօսեա առ Քրիստոս ջնջել զգիր մեղաց մերոց ։

Հ Արարչակիցդ հօր համագոյ հոգւոյդ որդի եւ
ԳԷ բան, որ զխորհուրդ տնօրէնութեանդ քո ծանուցեր տեսանողացն, զքեզ օրհնեմք Աստուած հարցն մերոց ։

Որ զփրկական քո օր զանարատ պատարագիդ զենումն ցանկացաւ տեսանել Աբրահամ, ետես Սահակաւ եւ ցնծացաւ, զքեզ ։

Որ զկենարար խաչ քո զուշակէր սանդուղքն Յակոբայ, որով հրեշտակք ի յերկիր իջեալ եւ մարդիկք յերկինս ելին, զքեզ ։

Գ Զտէր օրհնեցէք բարձր արարէք զնա յաւիտեան։

Նախանձաւորք ճգնութեան՝ մեծ նահատակին Յոբայ արդարոյ հոյլք ճգնաւորաց՝ բարձր արարէք զհայրն երկնաւոր ։

Ընդ ողջախոհին Յովսեփայ որ յաղթեաց մեղաց ցանկութեան, մանկունք Սիօնի բարձր արարէք զՔրիստոս թագաւորն ։

Ընդ օրինակին Քրիստոսի՝ Մելքիսեդեկի քահանայապետին, դասք քահանայից բարձր արարէք զհոգին ճշմարիտ ։

Մ Աստուածատունկ խնկաբեր ծառ յանուշահոտ բուրաստանէն, որ ի գնացս հոգւոյն վտակաց տնկեցար եւ զանմահութեան պտուղն ի ժամու ետուր մեզ, վասն որոյ ամենեքեան զքեզ միշտ մեծացուցանեմք ։

Զանապական բողբոջն յաստուածային դրախտէն յորովայնի քո տնկեալ, բղխեցեր յարմատոյն յեսսեայ ծաղիկ վայելուչ կուսական ծննդեամբ, վասն ։

Յարփւոյն լուսոյ ծագումն ի քեզ վառեաց զնրագ մարմնոյն լոյս աշխարհի, որով զեալ զպատկերն իւրական, զոր վերստին նորոգեաց յառաջին կերպարանն, վասն որոյ բարեխօսեա նորոգել զմեզ ի հնութենէ մեղաց:

Ո Շնորհեա մեզ տէր ընդ աղքատաց օրինակին Ղազարու ժուժկալութիւն, զի կամաւոր աղքատութեամբ արքայութեանն երկնից ընդ նմին լիցուք արժանի, յուր մեզ եւ ողորմեա Քրիստոս Աստուած:

Որ փոխանակ հացին կարօտութեան զհացն անմահութեան նմա շնորհեցեր, եւ ընդ մեծատանն անգթութեան ի գոգն Աբրահամու զնա ընկալար, յո՛ւր:

Լուսաւորեա զաչս սրտից ստանալ մեզ ողորմութեամբ ի քէն տէր զողորմութիւն, զի մի՛ ընդ մեծատանն հայցեսցուք ի բոց հնոցին ծագիւ մատին ջուր ի զովացումն, յո՛ւր:

Տ Որ զլոյս աստուածային քո բանին ծագեցեր յաշխարհամած խաւարն անգիտութեան, լուսաւորեա եւ զմեզ նոր իմաստութիւն:

Որ զհամօրէն դատաստանին օրինակ նշանակեցեր առ մեծատունն եւ Ղազարու, ներհակաբար տալով զոր. աստ ընկալան:

Վասն որոյ աղաչեսցուք զքեզ տէր փրկել զմեզ ի հրոյ մեղաց եւ տանջանաց, հանգչիլ ի գոգ նահապետին արդարոյ:

Որով եւ մեք ընդ հրեշտակացն դասուց անբաժանելի սուրբ երրորդութեանն համաձայնեալ երգեմք զփառս ի բարձունս:

# ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Զօրութեամբ, կարողութեամբ ստեղծեցիր իմանալի էակներուն (հրեշտակներուն) վերին աշխարհը, և անոր մէջ իբրև տնտես հաստատեցիր հրեղէն հրեշտակներուն գլխաւորները. կ'օրհնենք քու անըմբռնելի զօրութիւնդ ։*

*Իսկապէս, ճշմարտապէս մեծատուն ըլլալով դուն ստեղծեցիր երկրորդ զգալի, այսինքն նիւթական աշխարհ մը, և Եդեմի մէջ հաստատուած դրախտին մէջ իբրև տնտես դրիր առաջին մարդը. կ'օրհ ։*

*Աւելի բարձր խորհուրդով շինեցիր քու եկեղեցիդ, և անոր մէջ տնտես կարգեցիր ճշմարիտ վարդապետութեան քարոզիչները, կ'օրհ ։*

*Ո՛վ աստուածածին Մարիամ, բարեխօսէ՛ մեզի համար դուն որ անբովանդակելի էակին (Քրիստոսի) խորան եղար, և կրեցիր զայն որ կը կրէ զմեզ՝ արարածներս, և մարմինով ծնար հայր Աստուծոյ անմարմին ծնունդն եղող Աստուածը ։*

*Մեր ներսիդին քու կողմէն դրուած տիրական տընտեսը, այսինքն մեր բանականութիւնը, քեզի պարտական կամ մեղապարտ եղողներուն յանցանքները ներեց. դուն ևս, ո՛վ Քրիստոս, քու ողորմութեամբդ մեր յանցանքները ներէ ։*

*Նախահայր Ադամին խաբուելուն հետեւանքն եղող մեղքով հանեցինք այն առաջին պատմուճանը զոր հոգիով օծելով հագցուցիր. ո՛վ Քրիստոս քու ողորմութեամբդ վերստին հագցուր նոյն պատմուճանը ։*

*Առանց մաքրուելու մօտեցանք այն աստուածային կայծերուն, որոնց սերովբէններն իսկ չեն կրնար դպչիլ, և քու խորհուրդիդ դէմ յանցաւոր եղանք. շնորհ ըրէ՛ մաքրութեամբ նոյն խորհուրդին մօտենալ մեր մեղքերուն թողութիւն առնալու համար ։*

*Ո՛վ Մարիամ, որ արեւէն բռնկեցար և չայրեցար մորենիին պէս, այլ կենսատու հացը իբրև կերակուր տուիր բանական արարածներուն. բարեխօսէ՛ Քրիստոսի որ ջնջէ մեր մեղքերուն մուրհակը ։*

Հ *Որդի և բանդ Աստուած, որ հայր Աստուծոյ հետ ստեղծագործութեան մասնակցեցար, և հոգի Աստուծոյ էակից ես, քու աստուածային կարգադրութեանդ՝ այսինքն մարդեղութեանդ խորհուրդը իմացուցիր մարգարէներուն. կ'օրհնենք զքեզ, ո՛վ մեր հայրերուն Աստուածը ։*

*Աբրահամ փափաքեցաւ տեսնել քու փրկական օրդ, այսինքն քու մորթուիլդ իբրև անարատ զոհ մը. իր Իսահակ որդիին օրինակով տեսաւ և հրճուեցաւ, կ'օրհ։*

*Քու կենսատու խաչիդ նշանն էր Յակոբին սանդուխը, որուն հրեշտակները երկիր իջան և մարդիկ երկինք ելան, կ'օրհ ։*

Գ *Օրհնեցէք տէրը և ի սպառ փառաւորեցէք զայն ։*

*Ո՛վ ճգնաւորներու խումբեր, որ մեծ համբերողին՝ արդար Յոբին քաշածներուն վրայ բարի նախանձ ունիք, փառաւորեցէք երկնաւոր հայրը ։*

*Ո՛վ քրիստոնէական Եկեղեցւոյ (Սիօնի) զաւակներ, փառաւորեցէք Քրիստոս թագաւորը՝ իր բարոյականը մաքուր պահող Յովսէփին հետ, որ ցանկական մեղքին յաղթեց ։*

Ո՛վ քահանաներու խումբեր, փառաւորեցէք ճըշմարիտ հոգին Մելքիսեդեկ քահանայապետին հետ, որ Քրիստոսի օրինակն էր։

Մ Ամենքս կը դրուատենք, կը գովաբանենք զքեզ, ո՛վ Մարիամ, որ անուշահոտ պարտէզէն բերուած քաղցրաբոյր ծառ մ'ես, զոր Աստուած տնկեց հոգիին գետակներուն ընթացքին վրայ, և ճիշդ իր ժամանակին մեզի տուիր անմահ պտուղը, Քրիստոս։

Աստուածային դրախտէն մաքուր, անարատ բողբոջը որովայնիդ մէջ տնկելով, Յեսսէի արմատէն (Դաւիթի սերունդէն) վայելուչ ծաղիկ մը բուսցուցիր իբրև կոյս ծնելով. ուստի ամենքս կը դրուատ։

Արևուն լոյսէն (հայր Աստուծմէ) ծագողը քու մէջէդ վառեց իր մարմինին ճրագը իբրև աշխարհի լոյս, որով իր սեփական պատկերը գտնելով դարձեալ նորոգեց, իր առաջին կերպարանքը տուաւ անոր. ուստի բարեխօսէ՛ որ զմեզ նորոգէ հին մեղքերէն։

Ո Ո՛վ տէր, աղքատներուն տիպար եղող Ղազարոսին համբերութիւնը շնորհէ՛ մեզի, որպէսզի կամաւոր աղքատութեամբ անոր հետ արժանի ըլլանք երկնային արքայութեանդ. մտիկ ըրէ՛ գութ ունեցիր մեր վրայ, ո՛վ Քրիստոս Աստուած։

Որ անմահ հացը անոր շնորհեցիր փոխանակ անօթեցնող հացին, և անգութ մեծատունին ըրածին փոխարէն Աբրահամու գրկին մէջ ընդունեցիր զայն. մտիկ։

Ո՛վ տէր, լուսաւորէ՛ մեր սրտերուն աչքերը որպէսզի (կարօտեալներուն) ողորմելով ողորմութիւն ստանանք քեզմէ, և հնոցին բոցին (դժոխքին) մէջ մեծատունին հետ մատի ծայրով ջուր չը խնդրենք զովանալու համար. մտիկ։

Տ Լուսաւորէ՛ զմեզ, ո՛վ հայր Աստուծոյ իմաստութիւնն եղող բանդ Աստուած, որ քու աստուածային վարդապետութեանդ լոյսը ծագեցիր աշխարհը ծածկող տգիտութեան խաւարին մէջ։

Վերջին ընդհանուր դատաստանին օրինակը ցոյց տուիր մեծատունին և Ղազարոսին վրայ, այս աշխարհին մէջ իրենց ընդունածներուն հակառակը տալով։

Ուստի կ'աղաչենք քեզի, ո՛վ տէր, փրկէ զմեզ մեղքերու և տանջանքներու կրակէն, և հանգչեցուր զմեզ (Աբրահամ) արդար նահապետին գրկին մէջ։

Որպէսզի մենք ալ հրեշտակներուն խումբերուն հետ միաբերան՝ անբաժանելի սուրբ երրորդութեանդ փառքը երգենք բարձունքին մէջ։



# ԿԱՆՈՆ ՀԻՆԳԵՐՈՐԴ ԿԻՐԱԿԷԻՆ

Ա։ Բյ ւէ Որ պատուիրա́ն ճշմարտութեան աւանդեցեր եկեղեցւոյ քո Քրիստոս, անսահման ժամանակաւ աղօթել միշտ առ Աստուած հոգւով եւ մտօք ։

Որ զբա́ն քո օրհնաց հաստատեցեր գործով մեզ օրինակ, հանելով զգիշերն ի գլուխ յաղօթսն Աստուծոյ բնութեամբ մերով տնօրինաբար, որում կրկնի ծունր ամենայն ։

Վասն որոյ եւ մեք պաղատեսցուք առ քեզ Քրիստոս, շնորհեա մեզ յամենայն ժամ լինել քեզ յանդիման մաքուր աղօթիւք ըստ անմարմնոցն որ յերկինս ։

Աղաչանօք աստուածածնին անապականն քում ծնողին զիմանալի աչս սրտից մերոց բացցես ողորմութեամբ հայիլ ի լոյս քո Քրիստոս ։

Դատաւոր արդարութեան հաստատեցեր ի մեզ զմիտս մեր դատել զհոգի եւ զմարմին՝ արդարապէս դատմամբ ըստ օրհնաց քոց Քրիստոս ։

Իսկ անիրաւ դատաւորին որ ի քաղաք բնութեան մերոյ ոչ ունելով զերկիւղ քո սուրբ, եւ անպատկառ ի մարդկանէ ոչ առնելով դատ զրկելոյն ։

Այլ անձամբ սուրբ փեսայիդ այրի հոգի իմ պաղատի, ուստ՛ զիրաւունս քո իմում դատաւորիս առնել ինձ դատաստան արդար ընդ ոսոխի մարմնոյ իմոյ ։

Մարիամ կոյս անարատ զանապական փեսայդ աղաչեա զի հաշտեսցի ընդ այրի եղեալ հոգիս եւ միաւորեսցի դարձեալ սիրով ընդ հեռացեալսն ի նմանէ ։

Հ Որ ի սկիզբն փրկութեան մերոյ օրինակի երե-
ՏԴ ւեցար մարգարէին Մովսիսի աստուածային վառեալ բոցով զմորենին անկիզելի ի նմանութիւն կուսական ծննդեանն, օրհնեալ տէր Աստուած հարցն մերոց:

Որ յօրինակ քո գալստեանդ յաշխարհս առաքեցեր զմովսէս ի յեգիպտոս, ազատելով զհինն իսրայէլ արեամբ գառինն խորհրդոյ, որպէս եւ դու գառն Աստուծոյ քո կենարար արեամբդ զնորս իսրայէլ, օրհ:

Որ ի նմանութիւն կարմիր ծովուն բաժանեցեր խաչիւն զծով աշխարհական, խորտակելով զիմանալի բզգլուխ վիշապին ի վերայ ջուրց, եւ առաջնորդեցեր ամպով հոգւոյն ժողովրդեանն քո ի յերկինս, օրհ:

Գ Ամենայն զօրք տեառն զտէր օրհնեցէք:

Այսօր մաքրիցուք պահօք քառասնօրեայ ըստ Մովսէսի, զի եղիցուք ի լեառն իմանալի առ Աստուած, ամե:

Այսօր ընդ մեծին Եղիայի սրբեալք պահօք, զի տեղեան աստուածային լուսոյն արժանասցուք հոգւով, ամե:

Այսօր պահօք ճշմարտութեան եղիցուք ի լեառն փորձութեան ընդ Քրիստոսի պատերազմեալք ընդ թշնամւոյն զի յաղթեսցուք նովաւ, ամե:

Ս Աստուածածին գերագոյն քերոբէից բանին բարձող որ զամենայն կրէ զօրութեամբ, բարեխօսեա առ տէր վասն մերոյ փրկութեան:

Մայր սրբութեան բարձրագոյն սերոբէից զանտեսն յինքեանց ի քեզ կրելով ծագեցեր զլոյս աշխարհի, բար:

Ծառ կենաց որ զանմահութեան պտուղն ի քէն ետուր նախնոյ մօրն Եւայի՝ ի մահաբեր երկանցն ազատելով, բար:

Ո Դատաւոր արդար որ հաստատեցեր ի մեզ դատող քնութեան զմիտս մեր, շնորհեա սմա դատել զանձինս իրաւամբք եւ արդարութեամբ, խնայեա ի մեզ տէր ողորմութեամբ:

Փեսայ երկնաւոր հարսին քո եկեղեցւոյ, զայրի եղեալ ի քէն զհոգիս մեղօք մաքրեա գթութեամբ եւ յօդեա ի քեզ միութեամբ, խնա:

Որ մահուամբ մարմնոյ քո մեռուցեր զմեղս, եւ յարութեամբ քո յարուցեր ի մեզ զարդարութիւն, տուր զօրութիւն հոգւոյս կամաց հնազանդել զկամս մարմնոյս, խնա:

Տ Որ փառաբանիս ի հրեշտակաց ընդ հօր եւ հոգւոյն Քրիստոս որդի Աստուծոյ, խոնարհեցար ի հողեղէն բնութիւնս համբերելով խաչի վասն մեր, վասն որոյ գթա ի մեզ մարդասէր փրկիչ:

Որ զհին մարդն մեր մեռաց ի խաչին սպաներ, նորոգելով զնոր մարդն արդարութեամբ, յուսով կենացն անվախճանից ի նորոգումն նոր Ադամայ, վասն:

Կենդանարար քո յարութեամբդ անմահ թագաւոր կենդանացո զմեռեալս մեղօք կենդանական գործովք բարեաց ըստ յուսաւոր քոց պատուիրանաց, վասն:

Շնորհեա մեզ տէր զզաստութեամբ արթուն լինել ըստ դռնապանին, զի ի բաղխել սուրբ փեսայիդ բացցուք զդուրս քոց մտից ընդ քեզ եւ հօր քո եւ հոգւոյդ լինել օթեվան, եւ երգեսցուք երրորդութեանդ զփառս ի բարձունս:

# ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

Ո՛վ Քրիստոս, ճշմարիտ պատուիրան մը աւանդեցիր քու եկեղեցիիդ, այսինքն՝ հոգիով և մտքով միշտ անվերջանալի կերպով աղօթել Աստուծոյ։

Քու այս օրէնքիդ խօսքը գործով ալ իբրև օրինակ հաստատեցիր մեզի, ամբողջ գիշերը աղօթելով Աստուծոյ, երկնաւոր կարգադրութեամբ մեր բնութիւնն առնելով դուն՝ որու առջև բոլոր արարածները ի ծունր կը խոնարհին։

Ուստի մենք ալ քեզի կը պաղատինք, ո՛վ Քրիստոս, շնորհ ըրէ՛ մեզի որ ամէն ժամ քու դիմացդ ելնենք մաքուր աղօթքով երկնային անմարմին հրեշտակներուն նման։

Ո՛վ Քրիստոս, գութ ունեցի՛ր և բա՛ց մեր սիրտերուն հոգևոր աչքերը քու անարատ ծնողիդ՝ Աստուածածնին աղաչանքով, որպէսզի քու լոյսիդ նայինք։

Ո՛վ Քրիստոս, մեր միտքը մեր մէջ իբրև արդար դատաւոր մը հաստատեցիր, որպէսզի արդար դատաստանով դատէ մեր հոգին ու մարմինը։

Իսկ մեր բնութեան ներքին մասին մէջ դրուած այդ անիրաւ դատաւորը, քու սուրբ երկիւղդ չունենալով և մարդոցմէ ալ չամչնալով, զրկուածին դատաստանը չի տեսներ։

Բայց իմ այրիացած հոգիս կը պաղատի կ'աղաչէ քեզի՝ անմահ սուրբ փեսայիդ, իրաւունքը սովրեցո՛ւր իմ դատաւորիս՝ մտքիս, որպէսզի իմ հակառակորդիս (մարմինիս) հետ ունեցած դատս արդար կերպով տեսնէ։

Ո՛վ անարատ կոյս Մարիամ, աղաչէ՛ քու մաքուր փեսայիդ՝ Քրիստոսի, որպէսզի հաշտուի այրիացած հոգիներուն հետ, և դարձեալ սիրով միանայ իրմէ հեռացածներուն հետ։

Հ Հրէից եգիպտական գերութենէն ազատուելուն ժամանակ, որ մեր փրկութեան (Քրիստոսի միջոցաւ) օրինակն էր, Մովսէս մարգարէին երեւցար, աստուածային բոցով բռնկցնելով մորենին որ չէր այրեր իբրև նշան կոյսէն ծնելուն. օրհնեալ ըլլայ մեր հայրերուն տէր Աստուածը։

Իբրև օրինակ այս աշխարհս գալուդ Մովսէսը Եգիպտոս ղրկեցիր, հին Իսրայէլացիները փրկելով խորհրդաւոր գառան արիւնով, ինչպէս որ դուն, որ Աստուծոյ գառնուկն ես, նոր Իսրայէլացիները՝ այսինքն քեզի հաւատացողները փրկեցիր քու կենսատու արիւնովդ. օրհնեալ։

Խաչով ճեղքեցիր այս աշխարհիս ծովը Կարմիր ծովուն նմանութեամբ, ջուրերուն վրայ խորտակեցիր բանական վիշապին (սատանային) գլուխը, և հոգեւոր ամպով մը առաջնորդ եղար քու ժողովուրդիդ դէպ ի երկինք. օրհ։

Գ Ո՛վ տիրոջ բոլոր արարածները, օրհնեցէք տէրը։

Այսօր Մովսէսին նման քառասուն օր պահեցողութիւն ընելով սրբուինք, որպէսզի հոգեւոր լեռը ելնենք Աստուծոյ քով (ինչպէս Մովսէս ելաւ Սինա լերան վրայ), ո՛վ տիրոջ։

Այսօր Եղիա մեծ մարգարէին հետ պահեցողութիւն ընելով մաքրուինք, որպէսզի արժանի ըլլանք հոգիով

տեսնել աստուածային լոյսը, (ինչպէս Եղիա Թաբօրի վրայ), ո՛վ։

Այսօր ճշմարիտ պանծացողութիւն ընելով Քրիստոսի հետ փորձութեան լեռը ելնենք թշնամիին դէմ պատերազմելու, որպէսզի անով յաղթենք, ո՛վ։

Մ Ո՛վ աստուածածին, սերովբէներէն բարձր ես, և կրեցիր բանն Աստուածը՝ որ իրեն վրայ կը կրէ ամէն արարածները կարողութեամբ. բարեխօսէ՛ տիրոջը մեր փրկութեան համար։

Ո՛վ սուրբ մայր, սերովբէներէն վեր ես, անոնց անտեսանելի եղողը քու մէջդ կրելով իբրև աշխարհի լոյս ծագեցիր. բար։

Ո՛վ կենսատու ծառ, անմահ պտուղը քեզմէ տըւիր Նախամայր Եւային, ազատելով զայն մահառիթ ցաւերէն. բար։

Ո Ո՛վ արդար դատաւոր, որ մեր միտքը մեր մէջ հաստատեցիր որպէսզի դատէ մեր բնութիւնը. շընորհ ըրէ՛ ասոր որ իրաւունքով և արդարութեամբ դատէ մեր անձերը. ո՛վ տէր, ողորմէ և խնայէ՛ մեզի։

Դուն երկնաւոր ամուսինն ես քու հարսիդ՝ եկեղեցիին. գթալով մաքրէ՛ և քեզի միացո՛ւր, կապէ մեր հոգիները, որ մեղքերով այրիացած են քեզմէ. ո՛վ տէր։

Քու մարմինիդ մահով մեղքերը մեռցուցիր, և քու յարութեամբդ մեր մէջ արթնցուցիր արդարութիւնը, ույժ տո՛ւր իմ հոգիիս կամքին որպէսզի հնազանդեցնէ իմ մարմինիս կամքը. ո՛վ։

Տ Ո՛վ Քրիստոս, Աստուծոյ որդին, որ հրեշտակներէն կը փառաւորուիս հայր Աստուծոյ և հոգի

*Աստուծոյ հետ, մեր հողային բնութիւնը առնելու գիջում ըրիր, մեզի համար համբերելով, համակերպելով խաչին. ուստի գութ ունեցի՛ր մեր վրայ, ո՛վ մարդասէր փրկիչ։*

*Մեղքերով թաթախուած մեր հին մարդը մեռցուցիր խաչին վրայ, և նոր Ադամը (քրիստոնեայ մարդկութիւնը) նորոգելով նոր մարդը արդարութեամբ նորոգեցիր, անմահական կեանքին յոյսը տալով անոր. ուստի։*

*Ո՛վ անմահ Թագաւոր, քու կենսատու յարութեամբդ ողջացո՛ւր մեղքերով մեռածները՝ կենդանի բարեգործութիւններով՝ քու լուսաւոր պատուիրաններուդ համեմատ. ուստի։*

*Ո՛վ տէր, շնորհ ըրէ՛ մեզի որ դռնապանին պէս արթուն մնանք և զգաստ ըլլանք, որպէսզի երբ դուն՝ սուրբ փեսադ՝ դուռը զարնես, բանանք մեր սիրտերը բնակարան ըլլալու քեզի, հայր Աստուծոյ և հոգի Աստուծոյ, և երրորդութեանդ երգենք փառք բարձունքին մէջ։*



# ԿԱՆՈՆ ՎԵՑԵՐՈՐԴ ԿԻՐԱԿԷԻ

Ա։ Որ զխորհուրդ քո գալստեանդ յառաջագոյն
Բձ գուշակեցեր մարգարէիւքն Եսայեայ զորս ընտ-
Է― րեցեր յետ Մովսիսի, որք խօսեցան հոգւով սրբով բազմապատիկ օրինակօք՝, տուր մեզ փրկիչ ողորմութիւն, եւ զմեղաց զթողութիւն :

Ի մերձենալ ամաց վերջին զոր տեսանողքն ժամանացին զհասանիլ մեր փրկողիդ տռ. ի վախճան ժամանակին, երեւեցար ի մէջ մարդկան զգեցեալ զկերպ ծառայական, տո՛ւր :

Ի վեցերորդ աւուր զԱդամ ստեղծեր ի տիպ քո տէրական, որ ոչ պահեալ զպատուիրանն մերկացաւ զպատմուճանն, իսկ նոր Ադամդ ի վեց դարուն այց արարեր կորուսելոյն, տո՛ւր :

Տաճար լուսոյ անստուերին եւ առագաստ անճառ բանին, որ զնախնոյ մորն Եւայի քարձեր զանէծսն տրտմալի, հայցեա յորդւոյ քո միածնի հօր հաշտութեանն միջնորդի, բառնալ ի մէնջ զխռովութիւն եւ տալ զոգւոց զխաղաղութիւն :

Ըստ աւետեաց մարգարէին որ առ փրկեալքս արեամբ գառինդ, ցնծամք եւ մեք ծառք անտառի ընդ գալուստ տեառնդ կրկնակի, շնորհեա մեզ տէր ընդ արդարոցն ընդ առ ի քէն տնկեալ ծառոցն, այժմ յուսով զուարճանալ եւ յերկրորդին ընդ քեզ ցնծալ :

Սմին նման տայ աւետիս Զաքարիաս նոր Սիոնի, եթէ ուրախ լեր անա գայ առ քեզ խոնարհ եւ հեզ արքայ նստեալ ի յէշ եւ յաւանակ կրկին ազանց զոլ օրի-

նակ, նստեալդ յաթոռ քերոբէից նիստ գթութեամբ ի մեր հոգիս :

Զահեղ փառաց քոց երեւումն որ լինելոց է յերկրորդումն, ետես Դաւիթ յառաջագոյն ծանոյց կանխաւ ազդմամբ հոգւոյն թէ յայտնապէս Աստուած գայցէ հուր առաջի իւր բորբոքէ, յայնժամ Յիսուս ի մեզ խնայեա գթա Քրիստոս եւ ողորմեա :

Աստուածածին անհարսնացեալ յերկրէ յերկինս հարս ընծայեալ, յորժամ բազմիս լուսոյ նման քո միածնիդ յաջակողման, յայնժամ մաղթեա ընդ մեր զնոյն փրկել զմեզ յահեղ բոցոյն, համադասիլ ընդ արդարոցն երգել զփառս ընդ երկնայնոցն :

Հ Որ յանճառելի ծոց հօր ծածկեալ անքննին ծնունդ եւ բան, եւ ի հրեշտակաց երկրպագեալ փառաբանեիր, զքեզ բարեբանեմք Աստուած հարցն մերոց :

Որ խոնարհութեամբ իջեալ յաշխարհ շիջուցեր ըզբոց մեղաց որպէս երբեմն ի Բաբելոն ի մէջ հնոցին, զքեզ :

Որ ըստ նախաձայն մարգարէիցն եկիր ի լրումն խորհրդոյ զոր տնօրինաբար կատարեցեր վասն մերոյ փրկութեան, զքեզ :

Գ Զտէր օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան :

Որ յայտնեաց հոգին տեսլեամբ Դանիէլի մարգարէին զմիւսանգամ գալստեանն Քրիստոսի զխորհուրդ, բարձր:

Որ զչորրորդ գազանն ահեղ զապստամբեալն յԱստուծոյ ծանոյց բարձեալ զօրութեամբ աստուածորդւոյն, բարձր :

Որ զհինաւուրցն Աստուած ետես նստեալ յաթոռ

քերօբէական, եւ զորդի ընդ ամպս երկնից եկեալ, բարձր :

Մ Աստուածածին պայծառ քան զերկինս, որ ի մեզ ծագեցեր զլոյսն մեծ եւ զերազանցն, որով խաւարն անգիտութեան հալածեցաւ, սրօբէական ձայնիւ զքեզ բարեբանեմք եւ հոգեւոր երգով մեծացուցանեմք :

Ամպ թեթեւ եւ լուսաւոր որ զանձրեւն կենաց ի քեզ հեղեալ ի յերկնային ծովէն զոր հոսեցեր ի յերկիր ծարաւուտ, սրօ :

Պարտէզ փակեալ աստուածատունկ Եդեմ, որ եւ ծառն կենաց ի մէջ դրախտի քո ի հոգւոյն տնկեալ անմահական պտղովն ելից զտիեզերս, սրօ :

Ո Որ ողորմութեամբ զգեցար մարմին եւ նորոգեցեր զհնացեալքս, նորոգեա եւ զմեզ հոգւով Քրիստոս եւ ողորմեա :

Որ ի խաչին մեռար մարմնով եւ զմեռեալքս դարձուցեր ի կեանս, կեցո եւ զմեզ հոգւով Քրիստոս, եւ ողոր :

Որ յարեար ի մեռելոց եւ յարուցեր զբնութիւնս մեր յուսով, յարո եւ զմեզ հոգւով Քրիստոս եւ ողոր :

Որ զսիրելին քո զՂազարոս կոչեցեր ի գերեզմանէն կոչեա եւ զմեզ հոգւով ի կեանս եւ ողորմ :

Տ Նորահրաշ տեսլեամբ յարութեան քո տէր անեղակերպ փայլմամբ զարհուրեցան դժոխք, եւ մեռեալք ընդ կենդանւոյդ յարեան ի հաւատս համօրէն յարութեան:

Յորժամ փառօք հայրենի Քրիստոս ծագիս ի յերկնից եւ յարուցանես զմեռեալսն, յայնժամ դասեա ընդ աջմէ քումմէ եւ կոչեա զմեզ ի փառս քո :

Յորժամ հեծանոցաւ դատողութեան քո տէր սրբեա

զկայ աշխարհի յետնմարանս արփայութեանդ, ժողովեա զմեզ ընդ արդարոցն :

Յորժամ եկեղեցի հարսնացեալ միանայ ընդ փեսայիդ ընդ իմաստուն կուսանացն, արժանացո առագաստին զմեզ ընդ նոսին երգել զփառս ի բարձունս :

---

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Աշխարհ գալուդ (մարդեղութեանդ) խորհուրդը առաջուընէ գուշակեցիր հրէական մարգարէներով զորս Մովսէսէն վերջ ընտրեցիր, որք զանազան օրինակներով խօսեցան հոգւով լեցուած. ո՛վ փրկիչ, ողորմէ՛ մեզի և ներէ՛ մեր մեղքերը։*

*Երբ մօտեցան մարգարէներուն գուշակած վերջին տարիները, երբ մեր փրկիչը պիտի հասնէր ժամանակը լրացած ըլլալով, ծառայի կերպարանք հագած՝ մարդոց մէջ երեւցար. ո՛վ։*

*Վեցերորդ օրը Ադամը ստեղծեցիր քու տիրական, սեփական կերպարանքով, բայց պատուիրանը չպահելով պատմուճանը հանեց, իսկ դու՝ որ Նոր Ադամն ես, վեցերորդ դարուն մէջ կորսուածը փնտռելու ելար, ո՛վ։*

*Ո՛վ Մարիամ, անխաւար լոյսին տաճար և անպատմելի բանին Աստուծոյ առագաստ կամ ներքին սենեակ, որ նախամայր Եւային ցաւալի անէծքը վերցուցիր. խնդրէ՛ քու միածին որդիէդ որ հայր Աստուծոյ հետ մեր հաշտուելուն միջնորդն է, նեղութիւնները վերցնէ մեզմէ և հոգիներու խաղաղութիւն տայ։*

Աստուծոյ գառնուկիդ արիւնով մեզ՝ փրկուածներուս մարգարէին տուած բարի լուրին համեմատ, մենք՝ անտառի ծառերս կը հրճուինք, կը խայտանք տիրոջդ երկրորդ գալուստին վրայ . շնորհ ըրէ՛ մեզի, ո՛վ Տէր, որպէսզի քեզմէ տնկուած ծառերուն՝ այսինքն արդարներուն հետ հիմա, այս աշխարհիս մէջ յուսով մը ուրախանանք, և երկրորդ գալուստիդ (վերջին դատաստանին) ժամանակ ալ քեզի հետ հրճուինք, խայտանք։

Զաքարիա մարգարէն ասոր նման բարի լուր մը կուտայ Նոր Սիոնի (քրիստոնեաներուն), թէ ուրախ եղիր, ահա խոնարհ և հեզ թագաւորը քեզի կուգայ իշու և աւանակի վրայ նստած, իբրև օրինակ երկու ցեղերուն (հրէից և հեթանոսաց) . դուն որ քերոբէներէ ձեւացած աթոռի վրայ նստած ես, գութ ունեցի՛ր և նստէ՛ մեր հոգիներուն վրայ ։

Դաւիթ առաջուընէ տեսաւ և սուրբ հոգիին ազդեցութեամբ գուշակեց քու ահաւոր, անպատմելի փառքդ, որ պիտի երեւի երկրորդ գալուդ (վերջին դատաստանին), թէ Աստուած պիտի գայ ամէնուն աչքին առջեւ, իր առջեւէն կրակ ցայտեցնելով . ո՛վ Յիսուս, այն միջոցին խնայէ՛ մեզի, ո՛վ Քրիստոս, գութ ունեցիր և ողորմէ՛ ։

Ո՛վ աստուածածին որ ամուսին չճանչցար, և այս աշխարհէն երկնքի նուիրուեցար իբրև հարս, երբ լոյսի պէս նստիս քու միածին որդիիդ աջ կողմը, այն միջոցին մեր տեղը խնդրէ՛ որ փրկէ զմեզ ահռելի բոցէն, դասակից ընէ արդարներուն, և երկնաբնակներուն հետ Աստուծոյ փառքը երգենք ։

Հ. Հրեշտակները երկրպագութիւն ընելով կը

*փառաւորէին զքեզ որ անքննելի ծնունդ և բանն Աստուածն ես, հայր Աստուծոյ անպատմելի ծոցին մէջ ծածկուած. կը գովաբանենք զքեզ ո՛վ մեր հայրերուն Աստուածը :*

*Խոնարհութեամբ աշխարհ իջնելով մարեցիր մեղքերուն բոցը, ինչպէս երբեմն Բաբելոնի հնոցին մէջ, կը գովաբա :*

*Նախագուշակ մարգարէներուն ըսածին համեմատ եկար կատարելու (մարդեղութեան) խորհուրդը, աստուածային կարգադրութեամբ մեր փրկութեանը համար, կը գովաբա :*

Գ *Օրհնեցէք տէրը և ի սպառ փառաւորեցէք զայն :*

*Սուրբ հոգին տեսիլքով Դանիէլ մարգարէին յայտնեց Քրիստոսի երկրորդ գալուստին խորհուրդը, և ի սպառ փառա :*

*Դանիէլ իմացուց նաև թէ աստուածորդին իր զօրութեամբ ջնջեց Աստուծմէ ապստամբող չորրորդ ահաւոր գազանը, և ի սպառ :*

*Եւ հինաւուրց Աստուածը տեսաւ նստած քերոբէական աթոռի վրայ, և որդին՝ որ պիտի գայ երկնքի ամպերուն վրայ, և :*

Մ - *Ո՛վ աստուածածին, երկինքէն աւելի պայծառ, մեր վրայ ծագեցիր մեծ և հրաշալի լոյսը, որով ցրուեցաւ տգիտութեան խաւարը. սերոբէներու յատուկ ձայնով կը գովաբանենք զքեզ և հոգեւոր երգով կը փառաւորենք :*

*Թեթեւ և լուսափայլ ամպ, որ անջրդի երկրին վրայ թափեցիր կենսատու անձրեւը երկնային ծովէն, սերոբէ :*

Եդեմական պարտէզ, չորս կողմէն գոցուած և Աստուծոյ կողմէն տնկուած, քու դրախտիդ մէջ սուրբ հոգիին տնկած կեանքին ծառը իր անմահ պտուղով լեցուց, կշտացուց տիեզերքը, սերոբէա ։

Ո Գթալով մեզի մարմին հագար, և նորոգեցիր հինցածները, ո՛վ Քրիստոս, նորոգէ՛ մեզ հոգիով, և ողորմէ՛ ։

Խաչին վրայ մեռար մարմինով և զմեզ մեռածները կենդանացուցիր, ո՛վ Քրիստոս, զմեզ ալ ապրեցո՛ւր հոգիով և ողոր․

Մեռելներէն յարութիւն առիր և մեր բնութիւնը արթնցուցիր յարութեան յուսով, ո՛վ Քրիստոս, զմեզ ալ հոգիով արթնցուր և ողոր ։

Քու սիրելի Ղազարոսդ գերեզմանէն դուրս կանչեցիր, զմեզ ալ հոգիով դէպ ի քու կեանքդ կանչէ և ողորմէ ։

Տ Ո՛վ տէր, դժոխքը սոսկաց քու յարութեանդ հրաշալի տեսիլքէն և սարսափելի փայլումէն, և մեռելները ընդհանուր յարութեան հաւատքով արթնցան քեզի հետ, որ ողջ ես յաւէտ ։

Ո՛վ Քրիստոս, երբ հայրական փառքովդ երկնքէն ծագիս և մեռելները արթնցնես, այն միջոցին քու աջ կողմդ դիր և զմեզ կանչէ քու փառքիդ մէջ ։

Երբ քու դատաւորութեանդ երկմատնիով այս աշխարհիս կալը քու արքայութեանդ շտեմարաններուն մէջ հաւաքես, ո՛վ տէր, արդարներուն հետ ժողովէ՛ զմեզ ։

Երբ հարս եղած եկեղեցին իմաստուն սուրբ կոյսերուն հետ քեզի՝ փեսայիդ հետ միանայ, արժանի ըրէ՛ որ մենք ալ անոնց հետ ներքին սենեակը մտնենք և երգենք քու փառքդ բարձունքին մէջ ։



# ԿԱՆՈՆ ՄԵԾԻ ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻՆ

ԱՀ Անեղն ի հօրէ ծնեալ որդի յանէից գոյացուցեր
ԲՁ զեղեալսն՝ զերկնայինս եւ զերկրաւորս էութիւնս, արարածք ամենայն տուք փառս արարչին յաւիտենից :

Պատկեր աներեւոյթ փառացն հօր ի պատկեր բարերարութեան իւրոյ արար զմարդկային բնութիւնս, արարածք :

Լոյսն ի հօրէ լուսոյ ծագեալ լուսափայլ զարդարեաց զԱդամ, ի դրախտին եդեալ անմահ տնկոցն երկրագործ, արա :

Եկայք որդիք մարդկան այսօր ողբասցուք զհօրն զվտանգ, որ մերկացաւ մեղօք զփառս արարչին, եւ զգեցաւ զթզենւոյն ծածկոյթ փոխանակ անճառ լուսոյն:

Գովեցէք զորդին Աստուծոյ այսօր ցնծութեամբ որդիք Ադամայ, որ եկն ի խնդիր եղծեալ պատկերին, եւ գտեալ նորոգեաց ի փառս առաջին պատմուճանին :

Նոր նորոգող բնութեան մերոյ Յիսուս, որ ի խորհուրդ հնութեան մարդոյն զանպտուղն այսօր չորացուցեր զթզենին, եւ զմեզ ի հնացեալ մեղաց նորոգեա ի կեանս անմահս :

Հ Որ արարիչդ ես յաւիտենից, եւ ստեղծեր զարարածս ամենայն յոչնչէ, զքեզ օրհնեմք Աստուած հարցն մերոց :

Որ թագաւորդ ես թագաւորաց, եւ շնորհես բանաւոր կենդանի մարդ ի հողոյ, զքեզ :

Որ ապաւէնդ ես մոլորելոց, եւ խնամես զյուսացեալսն ի քեզ քո տեսչութեամբ, զքեզ :

Գ Զտէր օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեանս :

Օրհնեցէք զթագաւորն եւ զԱստուածն, որ նմա միայնոյ վայելէ օրհնութիւն, եւ բարձր :

Զի ծանոյց մեզ զսքանչելի խորհուրդ սուրբ երրորդութեանն եւ զմի աստուածութեանն Քրիստոս եւ բարձր:

Ո Առ ամենեսեան գթած Քրիստոս թագաւոր խաղաղութեան, զքեզ աղաչեմք միայն մարդասէր :

Որում այսօր փափաքեալ ցանկայր հոգւով եւ մարմնով մայր որդւովք՝ իւրովք խնդրէր զբարձրագոյն զփառս յերկրին կենդանեաց :

Տուողդ զկեանս անմահ առ քեզ աղաղակեմք եւ միաբան հայցեմք, շնորհեա եւ մեզ տէր կալ ի յաջմէ քումմէ :

Տ Զքեզ օրհնեմք որ բաշխող ես բարութեանց եւ հայցեմք որպէս ի մարդասիրէ ընդ մօր՝ քո ընտրելոցն զիմանալի աշխարհն :

Զի դու ես տէր յորմէ հայցէր մայրն հաւատով հանդերձ որդւովք սրբեցելովք ընդ աջմէ քո զփառս եւ յահեկէ, ընդ որս եւ մեք աղաչեմք զի դասեսցես ընդ սուրբս քո :

Այլ դու բարձրեալ փրկիչ որ վասն մեր խոնարհեցար արժանի արա զմեզ ըմպել զբաժակ պատուիրանին կենաց քոց տէր, որով կացցուք յաջմէ քումմէ ի հանդերձեալ քում գալստեանն :

ՄԿ Ալէլուիա, ալէլուիա, ալէլուիա :

Այսօր ընդ զօրս երկնից համաձայնեալ, միաբանական ձայնիւ երգեմք ասելով, ալէլ :

Երկրաւորք ընդ երկնայինսն, հողեղէնքս ընդ հրեղէնսն միաբա :

ՀԲ Որ յանէից գոյացուցեր զքո զարարածս ի ըսկըզբանէ, ի պատկեր աստուածութեանդ քո ստեղծեր զմարդ ի հողոյ, ժառանգել նմա զանպատում կեանսն:

Իսկ պատրանօք բանսարկուին ի դրախտէն արտաքս անկեալ, ի յաւէժ կենդանութեանն մահառիթ պտղով մեռեալ մերկացաւ զփառս անստուեր լուսոյն:

Այլ դու փրկիչ բարերար որ մարմնացար ի սուրբ կուսէն, եւ հեղմամբ արեանդ քո բարձեր զյանցանս նախաստեղծին, փրկելով զմեզ յանիծից նորա:

Որ ըստ պատրեալ նախահօրն յանձն առիր յօժարութեամբ ըմպել զբաժակ չարչարանաց ընդ քեզ որդիքն Զեբեդեայ, շնորհեա մեզ տէր զբաժակ քո փրկութեան:

Ի միւսանգամ քո գալստեանն յորժամ գաս դատել զերկիր, ընդ նոսին դասաւորեա զմեզ ի փառս յաջակողմանն, որով հանցուք քեզ զօրհնութիւն յանսպառ յաւիտենին:

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Հայր Աստուծմէ ծնած և մէկէ մը չստեղծուած որդին չեղածէն ստեղծեց բոլոր երկնային ու երկրաւոր արարածները, յաւիտենական արարիչին փառք տուէք, ո՛վ բոլոր արարածներ:*

*Հայր Աստուծոյ փառքին անտեսանելի պատկերը (Քրիստոս) իր բարերարութեան կամ բարերար պատկերով ստեղծեց մեր մարդկային բնութիւնը, կամ բոլոր մարդկային արարածները. յաւիտեան արարչին փառք:*

Լոյս Քրիստոս լոյս հայր Աստուծմէ ծագելով լուսափայլ կերպով զարդարեց Ադամը, և դրախտին մէջ դրաւ զայն իբրև երկրագործ անմահ տունկերուն, յաւիտենական արար։

Ո՛վ մարդիկ, եկէք այսօր լանք մեր հօրը (Ադամին) վտանգին վրայ, որ Աստուծոյ փառքը կորսնցուց մեղքով, և անպատմելի լոյսին տեղ թզենիին ծածկոյթը հագաւ։

Ո՛վ Ադամի զաւակներ, այսօր բերկրութեամբ գովեցէք Աստուծոյ որդին, որ եկաւ փնտռելու իր աւրուած պատկերը, և գտնելով նորոգեց առաջին պատմուճանին փառքով։

Ո՛վ Յիսուս, որ մեր բնութիւնը նորոգեցիր և մարդուն հնութիւնը նշանակող անպտուղ թզենին այսօր չորցուցիր, զմեզ ալ հինցած մեղքերէն նորոգէ՛ անմահ կեանքով։

Հ Յաւիտենական արարիչն ես դուն և բոլոր արարածները ոչինչէն ստեղծեցիր, ո՛վ մեր հայրերուն Աստուածը։

Թագաւորներուն թագաւորն ես դուն, և հողէն շնորհեցիր մարդը իբրև բանական կենդանի, կ՚օրհնենք։

Մոլորածներուն ապաստանարանն ես դուն, և քու նախախնամութեամբդ կը խնամես քեզի յուսացողները, կ՚օրհնենք։

Գ Օրհնեցէք Տէրը և ի սպառ փառաւորեցէք զայն։

Թագաւորը և Աստուածը, որուն միայն կը վայելէ օրհնութիւնը։

Որովհետև Քրիստոս իմացուց մեզի սուրբ Երրոր-

*դութեան և մէկ աստուածութեան զարմանալի խոր-հուրդը ։*

*Ո Խաղաղութեան Թագաւոր Քրիստոս, որ ա-մէնուն վրայ գութ ունիս, քեզի կ'աղաչենք, որով-հետև միակ մարդասէրը դուն ես ։*

*Որուն այսօր հոգիով ու մարմինով կը փափաքէր և կը ցանկար մայրը իր որդիներով մէկտեղ, և կեն-դանիներուն երկրին (արքայութեան) մէջ ամենէն բարձր փառքը կը խնդրէր ։*

*Քեզի կ'աղաղակենք և միաբերան կը խնդրենք շնորհ ըրէ՛ մեզի ալ քու աջ կողմդ կենալ, ո՛վ տէր, որ անմահ կեանք կուտաս ։*

*Տ Կ'օրհնենք զքեզ որ բարիք կը բաշխես, և քու ընտրեալներուդ (Զեբեդեայ որդիներուն) մօրը հետ հոգեւոր աշխարհը կը խնդրենք քեզմէ որ մարդասէր ես ։*

*Որովհետև իր սրբուած զաւակներուն հետ մէկտեղ մայրը հաւատքով կը խնդրէր աջ կողմդ և ձախ կողմդ կենալու փառքը, որոնց հետ մենք ալ կ'աղաչենք որ քու սուրբերուդ դասին մէջ դնես զմեզ ։*

*Ո՛վ բարձրեալ փրկիչ, որ մեզի համար խոնարհե-ցար, արժանի ըրէ՛ զմեզ, տէր, քու կենսատու պատ-ուիրանիդ բաժակը խմելու, որպէս զի քու ապագայ գալուստիդ ժամանակ քու աջ կողմդ կենանք ։*

*ՄԿ Օրհնութի՜ւն, օրհնութի՜ւն, օրհնութիւն քեզ տիրոջդ ։*

*Այսօր երկնային զօրքերուն հետ միաբերան կ'եր-գենք ու կ'ըսենք, օրհնութի՜ւն, օրհ ։*

*Մենք՝ երկրաւորներս երկնայիններուն հետ, մենք*

*հողեղէններս հրեղէններուն հետ միաբերան կ'երգենք ու կ'ըսենք ։*

ՀԲ *Ի սկզբան ոչնչէն առաջ բերիր քու արարածներդ, և մարդը հողէն ստեղծեցիր քու աստուածութեանդ պատկերով, որպէս զի անպատմելի կեանքը ժառանգէ ։*

*Իսկ քսուին (սատանային) խաբէութեամբ դրախտէն մերժուեցաւ, մահուան պտուղով մեռաւ իր մըշտընջենաւոր կենդանութեան մէջ, և անխաւար լոյսին փառքը կորսնցուց ։*

*Բայց դուն, ո՛վ բարերար փրկիչ, սուրբ կոյսէն մարմին առիր և քու արիւնդ թափելով նախաստեղծ մարդուն յանցանքը վերցուցիր, անոր տրուած անէծքէն ազատելով զմեզ ։*

*Նախահայր Ադամին յանցանքին համեմատ Զեբեթեայ որդիները (Յովհաննէս և Յակոբոս առաքեալները) յանձն առին չարչարանքի բաժակը ձեզի հետ խմել. ո՛վ տէր, քու փրկութեանդ բաժակը մեզի շնորհէ՛ ։*

*Երբ երկրորդ գալուդ երկիրը դատես, անոնց հետ զմեզ աջակողմդ փառքին մէջ տեղաւորէ՛, որպէս զի յաւիտեանս յաւիտենից օրհնենք զքեզ ։*



# ԿԱՆՈՆ ՄԵԾԻ ԵՐԵՔՇԱԲԱԹԻՆ

Ա: Իմաստուն կուսանքն պատրաստեալ իւղ լապ-
Բլ տերաց, եկին ընդ առաջ երկնաւոր փեսային
Եւ վառեալ լապտերօք:

Իսկ յիմարաց կուսիցն ունայնացեալք ի յիւղոյն անպատրաստ գտան գալստեան փեսային շիջեալ լապտերօք:

Վասն որոյ եւ մեք պատրաստեսցուք իւղ հոգեւոր, զի մտցուք ի յառագաստ անմահ փեսային վառեալ լապտերօք:

Յորժամ յերկնից փառօք գաս Քրիստոս նստիս յաթոռ դատողական, եւ բաժանես զազգս ամենայն, յաջակողմանն քում դասեա զմեզ ընդ օդեացն:

Յորժամ զտաղանդ պատուիրանին պահանջեսցես ի ծառայիցն ընդ կրկնաւոր քանքարացն, արժանացո զմեզ Քրիստոս ուրախութեան քո յերկինս:

Յորժամ կոչես զհրաւիրեալսն ի սկզբանէ աշխարհի ժառանգել զպատրաստեալսն, շնորհեա մեզ ընդ նոսին զարքայութիւն քո Քրիստոս:

Հ Որ սքանչելիդ ես ի բարձունս տէր եւ ահաւոր
Բյ ի մէջ երկրի անուն քո սուրբ, օրհնեալ ես Աստուած հարցն մերոց:

Որ զհաւատացեալսն ի քեզ պահեալ եւ զչարսն պատժեալ, գործակցօք ջրովք սուզմամբ յանդունդս, օրհ:

Որ հաստատեցեր ազգի մարդկան հրով փորձիլ ի յերկրորդումն, պահեա անարատ զքո փրկեալսն, օրհ:

Գ Զտէր օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան:

Զթագաւորն յաւիտենից Քրիստոս որ եկն եւ փրկեաց զամենայն արարածս, եւ բարձր:

Որ արար գալստեամբն իւրով զփրկութիւն որդւոց մարդկան, եւ բարձր:

Նոր արարածք պատուեալք ի հրեշտակաց զերծեալք ի խաւարէ առ լոյսն, եւ բարձր:

Ո Թագաւոր փառաց քեզ սպասեցուք պատրաստեալք արթնութեամբ, ընդառաջել որ գաս ի դատել զերկիր:

Անաղոտ վառեալ լապտերք հաւատոյ ընդ դասս իմաստուն կուսանացն, մտանել ի յառագաստ ընդ երկնաւոր փեսային:

Փութասցուք կանխեալ յառաջ քան զձայն աստուածային բարբառոյն, զի մի՛ մնասցուք արտաքս ըստ օիչման հինգ կուսանացն:

Տ Որ նստիս ի քերոբէս Աստուած բանդ, այսօր վասն մեր խոնարհութեամբ նստար ի լերինն ձիթենեաց, օրհնեմք զքեզ անդադար երգով:

Որ համագոյդ ես խորհրդոց հայրենի, աշակերտաց քոց ծանուցեր զխորհուրդ քո գալստեանդ, օրհ:

Որ ամենայնի ես արարիչ եւ ստեղծիչ կենդանութեան, այսօր զծածկեալ խորհուրդ երրորդութեանդ յայտնեցեր եկեղեցւոյ սրբոյ քոյ, օրհ:

ՄԿ Ահաւոր ես թագաւոր քերոբէական ձայնիւ օրհ-
ԳՁ նեալ, ի յերկինս ի յերկրի եւ յամենայն ժամանակի:

Ահաւոր ես թագաւոր որ նորոգես զքո զարարածս, հաստատես ի հաւատս ի գիտութիւն ճշմարտութեան:

Լուսաւորեա զմեզ Քրիստոս ի միւսանգամ քո գա-

[illegible]ստեանդ, յորժամ ծագիս ի յերկնից եւ նորոգես զքո զարարածս :

ՀԲ Շնորհեա մեզ տէր արթնութիւն ընդ իմաստուն
ԲՅ կուսանացն, եւ զհոգւոց մերոց լապտերս պայծառացո :

Երկնչիմք ի քէն տէր զարհուրեալք ի պատասխանւոյն, զամէնն ասելով եթէ ոչ գիտեմ զձեզ :

Յորժամ գաս փառօք հօր դատել զտիեզերս ամենայն, շնորհեա եւ մեզ տէր կալ ի յաջմէ քումմէ :

Բացցի մեզ դուռն ողորմութեան երկնաւոր փեսային, եւ մտցուք ի յառագաստ ընդ իմաստուն կուսանսն :

Ժամանեսցուք ընդ առաջ փեսային եւ մտցուք ի յառագաստ նորա, զի մի՛ մնասցուք արտաքս որպէս զյիմար կուսանսն :

Պայծառացին լապտերք հոգւոց մերոց, եւ բազմեցուսցես զմեզ ընդ հրաւիրեալսն ի կոչումն արքայութեան երկնից :

---

# ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

---

*Իմաստուն կոյսերը իրենց լապտերներուն իւղ պատրաստելով, երկնաւոր փեսան դիմաւորեցին վառուած լապտերներով ։*

*Իսկ յիմար կոյսերը իւղի պակասութենէն նեղուելով, փեսային գալու միջոցին անպատրաստ գտնուեցան մարած լապտերներով ։*

*Ուստի մենք ալ հոգեւոր խեղ պատրաստենք, որպէսզի անմահ փեսային ներքին սենեակը մտնենք վառուած լապտերներով ։*

*Ո՛վ Քրիստոս, երբ երկինքէն փառքով գաս և դատաւորական աթոռին վրայ նստիս, և բոլոր ցեղերը բաժնես, զմեզ քու աջ կողմդ տեղաւորէ ոչխարներուն (արդարներուն) հետ ։*

*Երբ ծառաներէն (մարդոցմէ) պահանջես քու հրամաններուդ տաղանդը (դրամը), կրկինը չահուած քանքարներուն փոխարէն արժանի ըրէ զմեզ երկինքին մէջ քու ուրախութեանդ, ո՛վ Քրիստոս ։*

*Երբ աշխարհի սկսելէն ի վեր հրաւիրուածները կանչես պատրաստուածը ժառանգելու համար, ո՛վ Քրիստոս, քու արքայութիւնդ չնորհէ՛ մեզի անոնց հետ ։*

Հ *Ո՛վ տէր, օքանչելի ես երկնքին մէջ, և երկրի վրայ ալ ահաւոր է քու սուրբ անունդ, օրհնեալ ես, ո՛վ մեր հայրերուն Աստուածը ։*

*Քեզի հաւատացողները պահեցիր (ջրհեղեղին ժամանակ), չարերը պատժեցիր և իրենց գործակիցներով ծովուն ջուրերուն տակ ընկղմեցիր, օրհ ։*

*Եւ որոշեցիր կրակով փորձի ենթարկել մարդկային ազգը քու երկրորդ գալուդ. անմիտս պահէ՛ զմեզ որ քեզմով փրկուած ենք, օրհ ։*

Գ *Օրհնեցէք տէրը և ի սպառ փառաւորեցէք զայն ։*

*Քրիստոս յաւիտենական թագաւորը որ եկաւ և բոլոր արարածները փրկեց, և ի սպառ ։*

*Որ իր գալովը փրկեց մարդիկը, և ի սպառ ։*

*Նոր արարածներ, որ հրեշտակներէն պատուուեցաք և խաւարէն ազատուելով դէպ ի լոյս գացինք, ի սպառ*

Ո ։ Փառաւոր Թագաւոր, արթուն և պատրաստ քեզի միշտ սպասենք, զքեզ դիմաւորելու համար որ երկիրը դատել կուգաս ։

Իմաստուն կոյսերուն խումբին հետ հաւատքին լապտերները պայծառօրէն վառած ենք՝ երկնաւոր փեսային հետ ներքին սենեակը մտնելու համար ։

Աստուածային ձայնէն առաջ կանխենք և փութանք որպէս զի դուրսը չմնանք հինգ Կոյսերուն պէս, որոց լապտերները մարեցան ։

Տ Ո՛վ բանդ Աստուած, որ քերովբէներուն վրայ կը նստիս, այսօր մեզի համար խոնարհութիւն ըրիր, և Ձիթենեաց լերան վրայ նստար, կ'օրհնենք զքեզ անդադար երգով ։

Քու աշակերտներուդ իմացուցիր (երկրորդ) գալուստիդ գաղտնիքը, դուն որ գիտես բոլոր հայրենի խորհուրդները, հօր Աստուծոյ էակից ըլլալով, կ'օրհ ։

Դուն որ զամենը ստեղծեցիր և բոլոր կենդանի արարածները առաջ բերիր, այսօր քու սուրբ եկեղեցիիդ յայտնեցիր երրորդութեան թաքուն խորհուրդը, կ'օրհ ։

ՄԿ Ահաւոր Թագաւոր ես դուն որ քերովբէներուն ձայնով կ'օրհնուիս երկինքի և երկրի մէջ և ամեն ժամանակի մէջ ։

Ահաւոր Թագաւոր ես դուն որ քու արարածներդ կը նորոգես և կը հաստատես հաւատքին մէջ, ճշմարտութեան գիտութեան մէջ ։

Ո՛վ Քրիստոս, լուսաւորէ զմեզ քու երկրորդ գալուդ, երբ երկինքէն ծագիս և քու արարածներդ նորոգես ։

ՀԲ Ո՛վ տէր, շնորհ ըրէ՛ որ մենք ալ արթուն ըլլանք իմաստուն կոյսերուն հետ, և մեր հոգիներուն լապտերները պայծառ պահէ՛։

Ո՛վ տէր, կը վախնանք քեզմէ, կը զարհուրինք այն պատասխանէն թէ իրա՛ւ իրա՛ւ կ՚ըսեմ որ ձեզ չեմ ճանչնար։

Երբ հօր Աստուծոյ փառքով գաս ամբողջ աշխարհը դատելու, շնորհ ըրէ՛, ո՛վ տէր, որ մենք ալ քու աջ կողմդ կենանք։

Թո՛ղ բացուի մեր առջև երկնաւոր փեսային ողորմութեան դուռը, և իմաստուն կոյսերուն հետ ներքին սենեակը մտնենք։

Հասնինք փեսային առջեւ, և անոր ներքին սենեակը մտնենք, որպէս զի յիմար կոյսերուն պէս դուրսը չմնանք։

Թո՛ղ պայծառանան մեր հոգիներուն լապտերները, և բազմեցո՛ւր զմեզ անոնց հետ որք երկնային արքայութեան հրաւիրուած են։



# ԿԱՆՈՆ ՄԵԾԻ ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻՆ

ԱՀ ՁՅ ԽԵ Որ յաթոռ փառաց բազմեալ ընդ Հօր անըսկզբնա՛կից Բանդ, այսօր բազմիլ ընդ հողեղէնսն յանձն առեր, օրհնեմք զեկեալդ ի փրկութիւն աշխարհի:

Որ անճառ աստուածութեամբդ օծեալ զքո ծառայական կերպ, այսօր հանեցար օծանիլ իւղով ի մեղաւորաց, օրհ:

Որ կենարար թաղման քո գուշակ զիւղոյն ծանուցեր զօծումն, այսօր Յուդային յայտնեցաւ խորհուրդ արծաթսիրութեանն, օրհ:

Որ խորհրդեամբ ընդ Հօր եւ Հոգւոյն, արար ի պատկեր իւր զմարդն առաջին, այսօր որդիք մարդկան ժողովեալ խորհին մատնել ի մահ զորդին Աստուծոյ:

Յուդայ սիրոյն աշակերտ փոխանակեաց զատելութիւն առ վարդապետին, մատնելով քահանայիցն ընդ երեսուն արծաթոյ:

Որ զամենայն տնօրհնաբար կամաւ յանձն առեր փրկիչ ընդ մեղաւորացս, վասն անճառ խոնարհութեանդ քո եւ մեզ ողորմեաց:

Հ Որ խորհրդոց ես տէր Աստուած անմահ, ըզծածկեալ խորհուրդ չարին ապականեալ վանեա՛, զքեզ օրհնեմք Աստուած հարցն մերոց:

Որ զնախնոյն Աբրահամու զհանդէս խորագոյնս ծանուցեր աւետեօք որդւոյն պատուեալ, զքեզ:

Որ շնորհես ծածկելոց յայտնի գոլ, Յուդաս արծաթոյ զանհասանելին մատնէր, զքեզ:

Գ Զտէր օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան :

Զբնակեալն ի վերին զօրսն ծածկապէս խորհուրդ, քահանայքն հոլովեալ վաճառէին զԱստուած, եւ բարձր:

Որ վասն մեր համբերեաց բանսարկուին, կամաւ վաճառի Աստուած բանն, եւ բարձր :

Ո Զքէն խորհեցան ի չարութիւն Աստուած յաւիտենից, որ բանիւ զարարածս խորհրդով հիմնեցուցեր :

Զքեզ որ արարիչդ ես մեծութեան արծաթոյ վաճառէին, յանձն առեր զամենայն համբերելով վասն մեր :

Զքեզ որ թագաւորդ թագաւորաց ի ծառայէ դատապարտեալ, զի զմեզ փրկեսցես ի յանիծիցն Ադամայ:

Տ Այսօր եկեալ կամաւ փրկիչն առ ի մատնիլ յանօրէն ժողովրդէն, վասն փրկութեան հեթանոսաց :

Այսօր բանն մատնի ի բանաւոր հօտէ եւ յառաջնոց դատապարտի յանօրինաց ժողովրդէն, վասն :

Այսօր հողն զտէրն դատապարտէ, եւ արծաթոյ վաճառի արարիչն արարածոց, վասն փր :

ՄԿ Նոր սքանչելիք այսօր տեսանեմք յաշխարհի ի
ՀՔ մէջ հողեղինաց, արարածք արարչին սպանութեան խորհին զխորհուրդ :

Որ բանիւն իւրով զերկինս եւ զերկիրս հաստատեաց յոչնչէ գոյացուցեալ, վաճառի այսօր դիւրագին ընդ երեսուն արծաթոյ:

Ո՛վ յուդա արտասուելի, երկնաւոր վարդապետին սպանութեան խորհիս զխորհուրդ, մատնելով անօրինաց զի խաչեսցի ի մէջ երկրի :

# ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

Ո՛վ բանդ Աստուած, որ սկիզբ չունենալով Հայր Աստուծոյ հետ փառքի աթոռին վրայ կը նստիս, այսօր յանձն առիր հողային մարդոց հետ նստիլ, կ'օրհնենք զքեզ որ աշխարհը փրկելու եկար ։

Քու անպատմելի աստուածութեամբ օծուած մարդկային կերպարանքդ մեղաւորներէն իւղով օծել հաւանեցար այսօր, կ'օրհ ։

Իւղէն օծումը իբրև քու թաղմանդ նշան ցոյց տուիր. այսօր յայտնուեցաւ նաև Յուդային արծաթասիրութեան գաղտնիքը, կ'օրհ ։

Այսօր մարդիկ ժողով գումարելով կը խորհին մահուան մատնել Աստուծոյ որդին, որ հայր Աստուծոյ և հոգի Աստուծոյ հետ խորհրդակցելով՝ իր պատկերին համեմատ ստեղծեց առաջին մարդը ։

Սիրելի աշակերտ Յուդան սիրոյ տեղ ատելութիւն փոխարինեց իր վարդապետին, երեսուն արծաթին փոխարէն քահանաներուն մատնելով ։

Ո՛վ փրկիչ, որ ամէն բան կամքովդ յանձն առիր աստուածային կարգադրութեամբ, մեղաւորներուս տեղ, մեզի ալ գթա՛ քու անպատմելի խոնարհութեանդ համար ։

Հ Ո՛վ անմահ Աստուած, դուն որ բոլոր խորհուրդներուն, գաղտնիքներուն տէրն ես, չար սատանային թագուն խորհուրդը ի դերև հանէ՛ և հալածէ՛, կ'օրհնենք զքեզ, ո՛վ մեր հայրերուն Աստուածը ։

Աբրահամ նահապետին հաւատքին փորձը աւելի խոր

կերպով յայտնեցիր, զայն պատուելով զաւակ մը ունենալու բարի լուրով, կ'օրհ։

Ցուղա ստակ առնելով կը մատնէր զքեզ որ անըմբռնելի ես, և երեւան կը հանես բոլոր գաղանիքները, կ'օրհ։

Գ Օրհնեցէք տէրը և խաղաղ փառաւորեցէք զայն։

Քահանաները ժողով գումարելով կը ծախէին Աստուածը, որ երկնային զօրքերուն մէջ կը բնակի և Թագուն խորհուրդ մ'է անոնց մէջ։

Բանն Աստուած իր կամքովը կը ծախուի, նա որ սատանային փորձութեան համբերեց։

Ո Ո՛վ յաւիտենական Աստուած, չարիք խորհեցան քու վրադ, որ խօսքովդ և խորհրդով հիմնեցիր արարածները։

Ստակով կը ծախէին զքեզ որ հարստութիւնը ստեղծեցիր, ամէն բանի յանձնառու եղար և համբերեցիր մեզի համար։

Ծառայէն (մարդոցմէ) դատապարտուեցար դուն որ թագաւորներուն Թագաւորն ես, որպէսզի զմեզ ազատես Ադամին տրուած անէծքէն։

Տ Այսօր փրկիչը իր կամքով եկաւ մատնուիլ անօրէն ժողովուրդէն, հեթանոսները փրկելու համար։

Այսօր բանն Աստուած կը մատնուի բանական հօտէն (մարդոցմէ), և կը դատապարտուի ժողովուրդին անօրէն գլխաւորներէն, հեթանոսներ։

Այսօր հողը (մարդիկ) կը դատապարտէ տէրը, և արարածներուն արարիչը ստակով կը ծախուի, հեթանոսներ։

ՄԿ Նոր հրաշք մը կը տեսնենք այսօր աշխարհի
ՀԲ վրայ հողեղէն մարդոց մէջտեղ . արարածները կը խորհին մեռցնել իրենց արարիչը ։

Այսօր երեսուն արծաթի տեղ չատ աման կը ծախուի նա որ իր խօսքով ոչինչէն հաստատեց երկինքն ու երկիրը ։

Ո՛վ ցաւալի և արգահատելի Յուդա , կը խորհիս մեռցնել երկնաւոր վարդապետը , մատնելով զայն անօրէններուն , որպէս զի երկրին մէջտեղ խաչուի ։



# ԿԱՆՈՆ ՄԵԾԻ ՀԻՆԳՇԱԲԱԹԻՒ

ԱՀ Վերաձգողն երկնից մշտնջենաւոր հօր որդին,
ՓՅ ներգործեալ հիմնս ի վեր քան զհրաշս, ծա-
Եէ ռայի առեալ զկերպ անկողոպտելի աստուա-
ծութեամբն:

Բանին զմաքրեցելոցն ջրով զոտս լուանայ, զի զխո-նարհութիւն ի նոսա տպաւորեսցէ, երրորդութեանն գոլ օթեվան:

Բաշխէ զմարմին իւր եւ զարիւնն նոր ուխտ ան-ուանեալ եւ յիշատակ կամաւոր մահուանն, մերձեցե-լոցս ի նա սրբութեամբ:

Աղբիւր լուսոյ եւ ճառագայթ անշիջանելի լոյս, որ լուանալ յանձն առեր զոտս աշակերտացն, մաքրեա ի մէնջ զմէգ խաւարին խորհրդոյ եւ լուսաւորեա զմեզ:

Որ մարմնով եւ արեամբ քո ցուցեր զթողութիւն մեղաց, որ միշտ պատարագիս ի մեզ անծախապէս, մաքրեա:

Որ քաւիչ զայս նոր ուխտ ցուցեր յետ առաջնոյ քոյ մահացելոցս ի ճաշակմանէ նախահօրն, մաքր:

Որ եսդ ի յերկինս եւ ի վերայ երկրի, այսօր յանձն առեր լուանալ զոտս աշակերտացն, եւ զիս լուա Քրիս-տոս ի մեղաց իմոց:

Որ բարեբանիս յիմանալի զուարթնոցն, հաճեցար մարմնով պատարագիլ, արա եւ զիս արժանի աստուա-ծային շնորհիդ:

Որոյ աթոռ քերոբէ՝ ի վերնատունն բազմեցար, կե-նարար բաժակաւդ զմեզ փրկեցեր, փրկեա եւ զիս յա-ւիտենից ի հրոյն:

Քրիստոս Աստուած որ վասն մեր խոնարհեցար ի կամաւոր չարչարանս, լուացեր զոտս աշակերտացն այսօր ի սուրբ վերնատունն, աղաչեմք՝ փրկիչ ողորմեա՛:

Որ կազմեցեր սեղան խորհրդոյ եւ արբուցեր յանմահական բաժակէն սրբոց քոց առաքելոցն այսօր ի սուրբ վերնատանն, աղաչ:

Մաքրեա զմիտս եւ զխորհուրդս զի եւ մեք հաղորդիցուք սրբութեանց, ընդ սրբոց քոց առա:

Որ վասն մեր յերկրի երեւեալ զամենայնն կատարեցեր ըստ օրինացն այսօր ի կատարումն ստուերականն տօնիցն, որդի Աստուծոյ ողորմեա:

Մարդ ճշմարիտ եւ զառն անարատ որ դատապարտեցեր զմեղս ի մարմնի, այսօր խոնարհեցար ի լուանալ զոտս աշակերտացն, որդի:

Բան հօր եւ քահանայապէս ճշմարիտ, որ զաշխարհակեցոյց զմարմին եւ զարիւն քո բաշխեցեր յառաքեալսն, այսօր հաղորդին հողեղէնքս աստուածային խորհրդոյդ, որդի:

Զորմէ սարսեալ սերովբէքն ոչ իշխէին նայիլ, այսօր ի ծառայի կերպարանս եղեալ նախայաւիտեան բանն, օրհնեցէք զնա հոգեւոր երգով:

Որ զստուերականն այսօր ճշմարտապէս կատարեաց, լուանալով զոտս աշակերտացն ի պատրանաց թշնամւոյն, օրհնեցէք:

Այսօր վերստին նորոգեցաք ի յանիծից նախահօրն, ճաշակելով զմարմին եւ զարիւն որդւոյն Աստուծոյ, օրհ:

Հ Լոյսդ ի հայրական ծոցոյ ծագեալ հալածելով
Բձ զխաւար մեղաց, կենարարդ յայտնեցեր այսօր զխորհուրդ ընտրեալ քո աշակերտացն, օրհնեալ եկեալդ ի փրկութիւն մեզ Աստուած հարցն մերոց:

Զոր օրհնեն դասք լուսեղէնք՝ զոտս տաժանեալս լուացեր զանիծիցն մերկացեալ ի մէնջ ծածկոյթ, զգեստ ծառայի սփածար, օրհ :

Անապականութեան աղբիւր զկենդանարարդ բաշխեցեր զմարմինդ քո, նորոգելով զմահացեալսն յանցանօք ի պատրանաց թշնամւոյն, օրհ :

Գ Ծառազայթ փառաց հօր եւ պատկեր բարերարութեան, որ զգեցաւն այսօր զգեստ ծառայական կերպի, զնա ամենայն ազինք օրհնեցէք հոգեւոր երգով :

Որ անճառ խոնարհութեամբ ի մաքրումն ոտից աշակերտացն զմարդկայինն ազգի զնացս ուղղեաց ի յերկինս, զնա :

Որ բաշխմամբ կենդանարար խորհրդոյ անապական ճաշակմամբն, հրաւիրեաց զմեզ յերկնից արքայութիւնն, զնա :

Ո Արկող զլոյս որպէս զօթոց այսօր անճառ
Գձ խոնարհութեամբ ի վերնատունն խորհրդոյ ըզգեստ ծառայի սփածանիլ յանձն առեր, օրհնեմք զեկեալդ ի կամաւոր չարչարանս :

Որում երկրպագեն դասք հրեշտակաց՝ խոնարհեցար ի լուանալ զոտս հողեղէնս, բժշկել սոքօք զգարշապարս նախահօրն, բժշկեա զհոգւոյ իմոյ զհիւանդութիւնս :

Որ ի խորհուրդս փրկականս եկեղեցւոյ բաշխեցեր աշակերտացն զմարմինդ քո, նորոգելով զմահացեալսն ի ճաշակմանէ, հաղորդս այսմ ընկալ զմեզ միայն մարդասէր :

Տ Որ անսկիզբն յէութեանդ ես Աստուած այսօր զգեցար զգեստ հողեղէն ծառայի, ծածկելով զմերկութիւն նախահօրն, օրհնեալ եկեալդ ի փրկութիւն ազգի մարդկան :

Որ վեր օրհնիս ի հրեղէն քերովբէից, այսօր եկիր կամաւ ի վերնատունն խորհրդոյ լուացեր զաշակերտսն յօրինակ վասն մեր, օրհ:

Որ յաթոռ փառաց նստիս ընդ հօր, այսօր բազմիլ ընդ աշակերտսն յանձն առեր բաշխելով զմարմին եւ զարիւն քո սուրբ, օրհ:

Մկ Այսօր կանգնեցաւ աւազան մկրտութեան, ի թողութիւն մեղաց մերոց:

Այսօր տէրն մեր լուանայր զոտս աշակերտացն, եւ պատուիրէր զայս ասելով:

Մի ոմն ի ձէնջ եղբարք մատնելոց է զիս ի մահ, եւ որոշի յաշակերտացդ:

Զայն լուեալ Պետրոսի ակնարկէր առ յովհաննէս, հարցանել թէ ո՞վ իցէ:

Բանն զոր ասաց Յիսուս սրտմտեցոյց զիւր աշակերտսն եւ խռովեցան ամենեքեան:

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Հայր Աստուծոյ մշտնջենաւոր որդին, որ երկինքը կամարի մը պէս տարածեց, ստեղծեց, իմ (մարդկային) բնութիւնս առնելով սքանչելի գործեր կատարեց, ծառայի (մարդու) կերպարանք առաւ առանց սակայն կորսնցնելու իր աստուածութիւնը:*

*Զրով կը լուայ ոտքերն անոնց որք մաքրուած էին իր վարդապետութեամբ, որպէս զի անոնց վերայ ապա-*

ւորէ խոնարհութիւնը ; և անոնք երրորդութեան բնակարան ըլլան :

Իր մարմինը և արիւնը կը բաշխէ իբրև նոր ուխտ և իբրև յիշատակ իր կամաւոր մահուան մեզի համար որ սրբութեամբ անոր մօտենանք :

Ո՛վ լոյսի աղբիւր և ո՛վ անմարելի լոյսին ճառագայթը, որ յանձնառու եղար աշակերտներուն ոտքերը լուալու, սրբէ՛ մեր վրայէն խաւարային խորհուրդներուն մշուշը և լուսաւորէ՛ զմեզ :

Քու մարմինով և արիւնով մեղքերու թողութիւն ըրիր, և միշտ կը պատարագուիս առանց երբէք սպառելու, սրբէ՛ մեր :

Քու առաջին ուխտէդ վերջ այս նոր ուխտդ ցոյց տուիր իբրև մեղքի թողութիւն մեզի՝ որ մեռանք նախահայր Ադամին (արգիլուած պտուղը) ուտելէն, սրբէ՛ :

Այսօր յանձն առիր լուալ աշակերտներուն ոտքերը դուն որ երկնքին մէջ և երկրի վրայ ես . ո՛վ Քրիստոս, զիս ալ լուա՛ իմ մեղքերէս :

Դուն որ հրեշտակներէն կը գովաբանուիս, հաճեցար մեր բնութիւնը առնելով իբրև պատարագ մատուցուիլ, զիս ալ քու աստուածային շնորհքիդ արժանի ըրէ՛ :

Վերնատան մէջ նստեցար դուն որուն աթոռ են քերոբէները, կեանք տուող բաժակովդ զմեզ փրկեցիր, զիս ալ փրկէ՛ յաւիտենական կրակէն :

Քրիստոս Աստուած, որ մեզի համար քու ազատ կամքովդ զիջում ըրիր չարչարուելու, այսօր վերնատան մէջ լուացիր աշակերտներուն ոտքերը, կ՚աղաչենք ողորմէ՛ մեզի, ով փրկիչ :

*Խորհրդաւոր սեղան մը պատրաստեցիր այսօր, և սուրբ վերնատան մէջ քու առաքեալներուն խմցուցիր անապական կեանք տուող բաժակէն. կ'աղաչ։*

*Մեր միտքն ու խորհուրդները մաքրէ՛ որպէսզի մենք ալ սրբութեամբ հաղորդ ըլլանք քու սուրբ առաքեալներուդ հետ։*

*Մեզի համար երկրի վրայ երեւելով, այսօր ամէն բան գործադրեցիր Մովսիսական օրէնքին համեմատ ստուերական (իբրև օրինակ ծառայող) տօները կատարելով. ողորմէ՛։*

*Ճշմարիտ մարդ և անարատ գառնուկ, որ մեղքերը դատապարտեցիր քու մարմնիդ վրայ, այսօր զիջում ըրիր աշակերտներուն ոտքերը լուալու. ո՛վ աստուածորդի, ողորմէ՛։*

*Ո՛վ հայր Աստուծոյ որդին, և ճշմարիտ քահանայապետ, որ առաքեալներուն բաշխեցիր քու մարմինդ և արիւնդ, այսօր հողեղէն մարդիկ կը մասնակցին քու աստուածային խորհուրդիդ. ո՛վ աստուածորդի, ողորմէ՛։*

*Հոգեւոր երգերով օրհնեցէք բանն Աստուածը, որ ամէն ժամանակներէ կանուխ կար. որմէ սոսկալով սերովբէները չէին համարձակեր նայիլ, այսօր ծառայի կերպարանք մտած է։*

*Եւ այսօր ճշմարիտ կերպով կատարեց ինչ որ (ատենօք) ստուեր կամ օրինակ էր միայն, աշակերտներուն ոտքերը լուալով Թշնամիին (սատանային) խաբէութիւններէն։*

*Այսօր դարձեալ նորոգուեցանք նախահայր Ադամին անէծքէն, Աստուծոյ զաւկին մարմինն ու արիւնը ճաշակելով։*

Ճ Ո՛վ լոյս Քրիստոս, հայրական ծոցէն ծագելով հալածեցիր մեղքին խաւարը, և դուն որ կեանք կուտաս, այսօր քու ընտրեալ աշակերտներուդ յայտնեցիր խորհուրդը. օրհնեալ ըլլաս դուն որ եկար զմեզ փրկելու, ո՛վ մեր հայրերուն Աստուածը։

Անէծքին վերարկուն մեր վրայէն հանելով լուացիր յոգնած ոտքերը դուն՝ որ կ'օրհնուիս հրեշտակներուն լուսեղէն խումբերէն, սպասաւորի զգեստ հագար, օրհ։

Դուն որ անապականութեան աղբիւր ես՝ բաշխեցիր քու կենդանարար մարմինդ, թշնամիին (սատանային) խաբէութեան հետեւանքին եղող յանցանքով մեռնողները նորոգելով, օրհ։

Գ Հայր Աստուծոյ փառքին ճառագայթը և անոր բարերարութեան պատկերը այսօր ծառայական կերպարանք ցոյց տուող զգեստ հագաւ. ո՛վ դուք բոլոր ազգեր, օրհնեցէք զայն հոգեւոր երգերով։

Աշակերտներուն ոտքերը լուալով անպատմելի խոնարհութեամբ, մարդկային ազգին ընթացքը դէպ ի երկինք ուղղեց. ո՛վ դուք։

Կենդանարար խորհուրդը բաշխելով և (իր մարմինին ու արիւնին) անապական ճաշակումով հրաւիրեց զմեզ երկնային արքայութեան. ո՛վ դուք։

Ո Դուն որ լոյսը կը հագնիս զգեստի պէս մարմինիդ ամէն կողմը, այսօր յանձնառու եղար սպասաւորի զգեստ հագնելու խորհրդաւոր վերնատունին մէջ անպատմելի խոնարհութեամբ. կ'օրհնենք զքեզ որ քու ազատ կամքովդ եկար չարչարուելու։

Հողեղէն ոտքերը լուալու գիջում ըրիր դուն որուն

երկրպագութիւն կ'ընեն հրեշտակներուն դասերը, առանցմով (աշակերտներուն ոտքերով) բժշկելու համար Նախահայր Ադամին (դէպ ի ծառը գացող) ոտքերը. բժշկէ' իմ հոգիիս հիւանդութիւնները։

Քու մարմինդ բաշխեցիր աշակերտներուն իբրև փրկութեան խորհուրդ մը (քրիստոնէական) եկեղեցիին համար, (Ադամին կերած) պտուղէն մեռնողները նորոգելով. ո՛վ դուն որ միակ մարդասէրն ես, զմեզ այդ խորհուրդին հաղորդեցո՛ւր։

Տ Ո՛վ Աստուած, որ էութեամբ անսկիզբ ես, այսօր հողեղէն սպասաւորի զգեստ հագար Ադամին մերկութիւնը ծածկելով. օրհնեալ ըլլաս, որ եկար մարդկային ազգը փրկելու։

Դուն որ երկինքին մէջ կ'օրհնուիս հրեղէն քերոբէներէն, այսօր ազատ կամքովդ խորհրդաւոր վերնատունը եկար և մեզի օրինակ ըլլալու համար աշակերտները լուացիր, օրհնեալ։

Դուն որ փառքի աթոռին վրայ կը նստիս հայր Աստուծոյ հետ, այսօր յանձն առիր աշակերտներուն հետ նստիլ, քու սուրբ մարմինդ և արիւնդ բաշխելով, տէր։

ՄԿ Այսօր մկրտութեան աւազանը բարձրացաւ մեր մեղքերուն թողութիւն ըլլալու համար։

Այսօր մեր տէրը աշակերտներուն ոտքերը կը լըւար, և այս պատուէրը կուտար ըսելով.

Ո՛վ եղբայրներ, ձեզմէ մէկը զիս մահուան պիտի մատնէ, և անիկա (մատնիչը) կը բաժնուի քու աշակերտներէդ։

Պետրոս զայն լսելով Յովհաննէսին աչք ըրաւ հարցընելու համար թէ ո՛վ է։

Յիսուսի ըսած խօսքը տրտմեցուց իր աշակերտները, և ամէնքը չփոթեցան։



# ԿԱՆՈՆ ՄԵԾԻ ՈՒՐԲԱԹՈՒՆ

Աձ Այսօր ի կատարումն աստուածայինն ընթրեաց
Դձ Նոր ուխտի ճշմարտութեան քո, ի վերնատունն
Եձ խորհրդոյ տարամերժեալ Յուդաս ի հօտէն փո-քու, ուստի եւ դու զառն Աստուծոյ դիմեալ կամաւ ի մահ խաչին առ ի բառնալ զմեղս աշխարհի. վասն որոյ խնայեա ի մեզ Քրիստոս կամաւոր քո չարչարանօք:

Այսօր որ ի հրեղէն զօրաց երկնից մեծ փառաբանեալ երկրպագիս բանդ, աղօթէիր առ հայր մարմնով ընկալեալ ընդ հօր զքո վասն իմ զպաղատանս, ուստի կամաւ կրելով զերկիւղ ի հրեշտակաց զօրանայիր զօրացուցիչդ երկնաւորաց եւ երկրաւորաց, վասն որոյ:

Այսօր յառաջ նշանակեալ հրամանն քո կատարիւր յաշակերտաց դասն, քանզի զհովիւդ քաջ հարեալ ցրուեցաւ հօտն ըստ մարգարէին, որ եւ կապեցար անեկապելիդ ; ի յաննայէ եւ ի կայիափայ դատապարտեալ, ի ծառայէ ապտակեցար եւ նախատանաց թուք կերպարանդ հօր ընկալար, վասն:

Այսօր զվէմն հաւատոյ շարժեալ փորձողին խաբէութեան մարտ, առ ի քէն թողացուցեալ զմարդկային տկարութիւնս յանդիմանելով, եւ առ յոյս դարձի մեղաւորաց որ դառնայցեն արտասուելովն ընկալաւ ի քէն երիւք հարցմամբ սիրոյն զերից ուրացութեանցն զբժշկութիւն. ընդ նմին բժշկեա զմեզ Քրիստոս եւ շնորհեա մեզ արտասուս ապաշխարութեան:

Այսօր զոր յերկնային լուսեղինացն անհիւ պատեալ բանդ Աստուած, նսեմացեալ դատաւ եբրայեցւոցն զիմանալի

լոյսդ ի գիշերին ջահիւք եւ սուսերօք եկեալ ըմբռնել զանըմբռնելիդ. վասն որոյ երկրպագեմք անճառելի քո խոնարհութեանդ:

Այսօր զոր սերովբէքն ծածկէին զդէմս յահէ փառաց աստուածութեանդ, իսկ կորստեան որդին յուդաս ի համբոյր մերձեալ նենգութեամբ, նշանակ եւ առիթ մահու անմահիդ, վասն որոյ:

Այսօր ընդ գերագոյն շնորհնաւորութեանդ քո որդի Աստուծոյ, հոյլք անմարմնոցն հրաքուն սերոբին պակուցեալ զարմանային տեսանելով զանտեսանելիդ մատնեալ կամաւ ի ձեռս մեղաւորաց, վասն որոյ:

Այսօր բարեկամք եւ մերձաւորք քո հեռի եղեն ի քէն Քրիստոս, օտարացան եւ եղբարք քո, եւ ցուլք գէրք պաշարեցին որք ի դպրաց եւ ի փարիսեցւոց, եւ շուրջ եղեն շունք բազումք պիղատոսի եւ հերովդէի, վասն:

ԲՁ Արծաթսիրութեամբն մոլեալ Յուդա, զիւր զմեծ զվարդապետն ընդ երեսուն արծաթոյ հրէիցն մատնէր:

Ընդ որում ես համբուրեցից ասէ՝ զնա կալարուք, ո՛վ համբոյր նենգութեան նշան եւ առիթ մահու:

Մերկացաւ յինքենէ զաստուածային սուրբ հոգին, եւ զգեցաւ զսատանայ՝ որպէս հանդերձ արկաւ զիւրեաւ:

Ի գիշերին յորում մատնիւր փրկիչն մեր ի մահ խաչին, եւ ի լեառն ձիթենեաց, աղօթելով զայս ասէր. Հա՛յր, անցո՛ յինէն զբաժակս:

Իսկ անօրէն աշակերտին թողեալ զգութ սիրոյ նորա եւ փութայր առ քահանայսն, ասէր ինձ զինչ կամիք տալ զի մատնեցից զվարդապետն:

ժողովեալ հրէիցն կշռեցին արծաթ բազում, առեալ տարան առ պիղատոս, ասեն ի խաչ հան ի խաչ, զի հայհոյիչ է օրինաց :

Հ Իջեր ի յերկնից անսկիզբն որդի, ի հողեղէն ի
ԵՅ բնութենէ մարդկան զչարչարանս յանձն առեր, օրհնեմք զքեզ որ էիր յառաջ քան զամենայն յաւիտեանս:

Որ ասացեր բանիւ լինել ամենայն երկրի, ի յերկրի յատենի կացեալ տեսանէին արարածք, օրհ :

Յորմէ դողան զուարթունք երկնից, այսօր եկիր կամաւ ի խաչ զեղարդեամբն խոցեցար, օրհ :

Կ Զտէր օրհնեցէք եւ բարձր արարէք յաւիտեան :

Եւ զհինաւուրն զեղարդեամբն յարձակեալ խոցեաց զկող կենարարին, բար :

Ուստի աղբիւր կենդանարար բղխեալ լուաց զտիեզերս ի մեղաց, բարձր :

Ո Եկեալ ի փրկութիւն ազգի մարդկան, ի ծառայէ յանձն առնու մատնիլ ի դատաստան, համբերելով վասն զմեզ կեցուցանել :

Մատնեալ պիղատոսի որպէս մահապարտ, ի յանձնայէ եւ ի կայիափայ դատապարտեալ, համբերե :

Կացեալ ի յատենի երկրորդ Ադամ, վասն առաջինն Ադամայ պարտեացն թողութեան, համբերե :

Տ Ո՛վ սքանչելի եւ տեսիլ ահաւոր, զարարիչն երկնի եւ երկրի այսօր տեսաք ի խաչի :

Տեսեալ զտէրն ի խաչին խաւարեցաւ արեգակն, եւ վարագոյր տաճարին ցելոյր վերուստ մինչ ի վայր :

Անարգաբար խաչեցաւ տէրն ի մէջ ի յանօրինաց, զի լցցի գիրն որ ասէ թէ ընդ անօրէնսն համարեցաւ :

ՄԿ Որ թագաւորդ ես թագաւորաց Քրիստոս ի

ԲՁ Ծառայք դատապարտեալ համբերելով վասն մեր, երկայնամիտ Տէր քեզ փառք:

Որ պատուական խաչիւդ քո Քրիստոս եւ սուրբ յարութեանդ քո հեղմամբ կեցուցանել զմեզ կամեցար, երկ:

Որ մարդասիրապէս վասն ամենեցուն ամենայնի համբերեցեր, եւ ի մահու զմահ կոխեցեր, երկ:

ՀԲ Եկայք հաւատացեալք երկրպագեսցուք սուրբ
-- երրորդութեանն, լոյսն որ ընդ հօր է յէու-
ԴՁ թեան, ի քահանայից դատապարտեալ եկեալ ի
խաչ ելանել, անմահ թագաւորն:

Զոր երկինք ոչ բաւէին տանել, զփայտ պատուհասի ուսով բարձեալ եւ եկեալ ի տեղի կառափման ի խաչ ելանել, անմահն:

Հիացեալ պետութեանց երկնից ընդ թաղումն տեառն ի նոր գերեզմանի, քանզի որ անմահն է յէութեան վասն արարածոց փրկութեան զմահ ճաշակեաց, անմահն:

---

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Այսօր երբ քու ճշմարիտ նոր՛ ուխտիդ աստուածային ընթրիքը կը կատարէիր խորհրդաւոր վերնատունին մէջ, Յուդան հեռացաւ մերժուեցաւ փոքր խումբէն. ուստի դուն ալ, ո՛վ Աստուծոյ գառնուկ, ազատ կամքովդ դիմեցիր խաչին մահուան աշխարհի մեղքը վերցնելու համար. ուրեմն, ո՛վ Քրիստոս, խնայէ՛ մեզի քու կամաւոր չարչարանքներովդ:*

*Ո՛վ բանդ Աստուած, զոր հրեշտակներն երկնային զօր-*

քերը մինչ երկրպագութեամբ կը փառաբանեն , այսօր մարմինով ( իբրև մարդ ) աղօթք կ՚ընէիր հայր Աստուծոյ , ( իբրև Աստուած ) ընդունելով քու հօրդ հետ խնձի համար իբրև մարդ քու ըրած աղաչանքդ . ուստի աղատ կամքովդ վախի ենթարկուելով , հրեշտակներէն կը զօրանայիր դուն որ երկնաբնակներուն և երկրաբընակներուն զօրութիւն տուողն ես , ուրեմն :

Առաջուց ակնարկած քու հրամանդ ( խօսքդ ) այսօր կը կատարուէր աշակերտներուն խումբին վրայ , որովհետև մարգարէին ըսածին պէս՝ քաջ հովիւը զարնուելով հօտն ալ ցրուեցաւ . կապուեցար դուն զոր կապել անկարելի է , Աննայէն և Կայիափայէն դատապարտուեցար , ( քահանայապետին ) ծառայէն ապտակուեցար , և նախատալից թուք ընդունեցիր դուն որ հայր Աստուծոյ կերպարանքն ես . ուրեմն :

Փորձիչ սատանային խաբէական պատրանքը քու թոյլտուութեամբդ այսօր նեղը ձգեց հաւատքին վէմը ( Պետրոս առաքեալը ) , իբրև յանդիմանութիւն մեր մարդկային տկարութեան և իբրև յոյս մեղաւորներու դարձի գալուն . Պետրոս դառն կերպով լալով իր երեք անգամ ուրանալուն բժշկութիւնը քեզմէ ընդունեց զքեզ սիրած ըլլալուն երեք հարցումով . ո՛վ Քրիստոս , անոր հետ բժշկէ՛ զմեզ , և զղջումի արցունք շնորհէ՛ մեզի :

Այսօր հրէից խաւարեալ խումբերը գիշեր ատեն ջահերով և սուրերով եկան բռնել զքեզ որ հոգեւոր լոյսն ես և չես բռնուիր , և երկնային լուսեղէններէն կը պատուուիս մեծ վախ ազդելով անոնց . ուստի մինչև գետին կը խոնարհինք քու անպատմելի խոնարհութեանդ առջև :

Այսօր կորստական որդին՝ Յուդան՝ կը մօտենայ նենգութեամբ համբուրելու քեզ՝ որուն աստուածութեան փառքին երկիւղէն սերովբէները իրենց դէմքը կը ծածկէին, համբոյրը տալով իբրև նշան և իբրև պատճառ մահուանդ, որ անմահ ես. ուստի ։

Ո՛վ Քրիստոս, քու բարեկամներդ և ազգականներդ այսօր հեռացան քեզմէ, քու եղբայրներդ ալ օտարացան, և դպիրներէն ու փարիսեցիներէն գէր ցուլեր զքեզ պաշարեցին և Պիղատոսին ու Հերովդէսին շուները քու շուրջդ հաւաքուեցան. ուստի ։

ԲԶ Յուդա իր արծաթսիրութենէն խելքը թռուցած, երեսուն արծաթի փոխարէն հրեաներուն կը մատնէր իր մեծ վարդապետը ։

Որո՜ւ հետ որ ես պագտուիմ, ըսաւ, ձերբակալեցէ՛ք զայն. ով նենգամիտ համբոյր, մահուան նշան և պատճառ ։

Իր վրայէն հանեց նետեց աստուածային սուրբ հոգին, և սատանան հագաւ հագուստի պէս ։

Այն գիշերը երբ մեր փրկիչը խաչին մահուան կը մատնուէր, Ձիթենեաց լեռը ելաւ, և աղօթելով կ'ըսէր, ո՛վ հայր, զանց ըրէ՛ ինձմէ այս բաժակը ։

Իսկ անօրէն աշակերտը բանի տեղ չդնելով անոր սէրն ու գութը, քահանաներուն առաւ իր շունչը, ըսելով, ինչ կ'ուզէք տալ ինծի որ վարդապետը մատնեմ ։

Հրեաները հաւաքուելով շատ դրամ կշռեցին, և Պիղատոսին տանելով (այն գումարը), ըսին, խաչէ՛, խաչէ՛ զայն, որովհետև (մեր, մովսիսական) օրէնքին դէմ հայհոյող մ'է ։

Հ Ո՛վ անսկիզբ որդի, երկինքէն իջար, յանձնառու եղար չարչարուելու հողեղէն մարդոց ձեռքով. կ՚օրհնենք զքեզ որ բոլոր ժամանակներէն կանուխ կայիր ։

Դուն որ քու պարզ խօսքովդ հրամայեցիր որ երկիրը ստեղծուի, արարածները (այսօր) կը տեսնէին զքեզ դատարանին առջև կեցած. կ՚օրհ ։

Այսօր քու ազատ կամքովդ խաչուելու եկար, և գեղարդով վիրաւորուեցար դուն՝ որմէ կը դողան երկնային հրեշտակները. կ՚օրհ ։

Գ Օրհնեցէք տէրը և խաչը փառաւորեցէք զայն։

Զինուորը իր տէգով յարձակելով վիրաւորեց կողն անոր որ կեանք կու տայ. փառաւորեցէք զայն խաչը։

(Նոյն կողէն) կենդանարար աղբիւր մը բղխելով տիեզերքը սրբեց մեղքերէն. փառաւ ։

Ո Մարդկային ազգը փրկելու համար գալով յանձնառու կ՚ըլլայ ծառայէն (մարդոցմէ) դատաստանի մատնուելու, և (ամէն բաներուն) կը համբերէ մեզի կեանք տալու համար ։

Իբրև մահապարտ Պիղատոսին կը մատնուի, Աննայէն և Կայիափայէն կը դատապարտուի, և կը համբերէ մեզի կեանք տալու համար ։

Առաջին Ադամին յանցանքը քաւելու համար երկրորդ Ադամը դատարանին առջև կը կենայ, և կը համբերէ ։

Ց Ինչ հրաշալի և ահռելի երևոյթ, այսօր խաչի վրայ տեսանք զայն որ երկինքն ու երկիրը ստեղծած է ։

Արևը խաւարեցաւ՝ տէրը խաչին վրայ տեսնելով, և տաճարին վարագոյրը կը պատռէր վերէն վար ։

Տէրը անարգութեամբ խաչուեցաւ անօրէններուն (երկու աւազակներուն) մէջտեղ, որպէս զի կատարուի գրուածը թէ անօրէններուն կարգը դասուեցաւ։

ՄԿ Ո՛վ Քրիստոս, որ թագաւորներուն թագաւորն ես, ծառայէն դատապարտուեցար՝ մեզի համար համբերելով. փառաւորեալ ըլլա՛ս, ո՛վ համբերատար տէր։

Ո՛վ Քրիստոս քու պատուական խաչովդ և սուրբ արիւնդ թափելով ուզեցիր ապրեցնել զմեզ. փառք։

Ամէնուն համար ամէն բանի համբերեցիր և մեռնելով ոտնակոխ ըրիր մահը. փառաւոր։

ՀԲ Ո՛վ հաւատացեալներ, եկէք երկրպագութիւն ընենք սուրբ երրորդութեան. լոյսը (Քրիստոսը) որ էութեամբ հայր Աստուծոյ հետ է, ահա քահանաներէն դատապարտուելով խաչ կ՚ելնէ, անմահ թագաւորը։

Նա զոր երկինք չէր կարող կրել, կռնակը շալկած ոճրագործին փայտը կ՚երթայ Գողգոթա խաչին վրայ ելնելու։

Երկնային իշխանութիւնները (հրեշտակներուն խումբերը, դասակարգութիւնները) կ՚ապշին տարօրինակ գերեզմանի մէջ տիրոջը թաղուելուն վրայ. որովհետև արարածներուն փրկութեան համար մահը ճաշակեց նա որ իր էութեամբը անմահ է։



# ԵՐԳ ՏԵԱՌՆ ՆԵՐՍԷՍԻ

## ԶՈՐ ՅԱՂԱԳՍ ՀՍԿՄԱՆ

## ՄԵԾԻ ՈՒՐԲԱԹՈՒ ԳԻՇԵՐՈՅՆ Է ԱՍԱՑԵԱԼ

---

Դկ Ծ Այսօր անճառ լուսոյն ծագումն ի փրկութեան մեր կատարումն, խոնարհի ի վերնատունն ի ստուերական տօնից լրումն, նախ քան զընթրիսն խորհրդոյ սփածաւ ղենջակ արկօղն լուսոյ, եւ ջուր առեալ ծառայաբար զոտս լուանայր զաշակերտացն :

Բանին հօր փառաց լուսոյ պետրոս մերձիլ յոտս ոչ ներէր, այնմ ձեռաց որոյ են գործք երկնից երկինք եւ երկրաւորք, որով կուրաց աչք բացան խուլք եւ համերք արձակեցան, զոր վերածեաց զինքն ի ծովին՝ սաստեաց ալեացն եւ լռեցին :

Գլխոյն ընտրեալ հօտին փոքու սաստէր զխորհուրդն ոչ գիտելոյ, որով դառնայր եւ հնազանդէր զոտս եւ ըզգլուխս մաքրել մաղթէր . զլխոյս ասէ չէ ինչ պիտոյ լուացումն ջրոյ զի լուացեալ է, ոտիցդ պէտք են մաքրութեան յօդիլ ի գլուխս սրբութեան :

Դասուց իւրոց աշակերտաց զոր նախ բանիւ վարդապետեաց, այսօր գործով զծայրագոյն եցոյց յինքեան զխոնարհութիւն, սպասաւորեալ հողեղինաց այն որ անտեսն է հրեղինաց, տարեալ պաշտօն իւր ծառայիցն այն որ պաշտէին ի սրոբէից :

Եթէ տէրս ասէ էից եւ վարդապետս բոլորից զա-

ծակերտացդ եւ զծառայից զոտս լուացի ի հնոյ աղտից , միմեանց եւ դուք համաքնութեամբ ցուցէք զնոյն խոնարհութիւն , բարձրացելոյն ի կործանումն եւ անկելոյ բնութեանդ կանգնումն :

Զոր մաքրեցեր յաւազանին մաքուր ձեռօք զոտս նոցին , եւ ուսուցեր խոնարհութեամբ յաղթող լինել չար հպարտին , եւ զիմ յուս զտիղմն մեղաց աղաչանօք սրբոյ զնդին , եւ զգնացս ուղղեա զոտին խոնարհութեամբ ելիւք յերկինս :

Ելից զօրէնսն մովսիսի զոր խօսեցաւն ի սինայի , էկեր զզառն օրինակին եւ զբաղարջն ընդ եղէգին, ըզհինն ի նոր փոխելով զստուերն ի լոյս ճշմարտելով , փոխան զառինն ինքն գոլով զառն Աստուծոյ նուիրելով :

Ընդ բաղարջին հաց անխմոր ետ զմարմին իւր զերկնաւոր , զկուսածինն անսերմնաւոր զանապականն եւ զհոգեւոր . ընդ ոչխարին արեան ուխտին ետ մեզ զարիւնն իւր ուխտ կրկին , եւ եղէգան դառնագունին փոխան զվարս աստուածային :

Թագաւորն արարածոց զհացն կենաց ետ քաղցելոց, եւ զբաժակն ուրախարար որք յադամայ տրտմեցելոց , այս նոր ուխտ է իմոյ արեան փոխան հնոյ ուխտին արեանց զոր յիշատակ իմ առնիցէք մինչեւ եկից ես միւանգամ :

Ժողովեալքս ի քէն հայցեմք ընդ ժողովեալ մետասանին, որ զկենարարդ քո մարմին բաշխեալ ետուր ընդ բաժակին , շնորհեա եւ մեզ տէր ընդ նոսին հաղորդ լինել քում սեղանին կենաց հացիդ յոր փափաքիմք եւ ըմպելւոյդ ոււմ ծարաւիմք :

Ի յընտրելոց աշակերտացն Յուդաս մեկնեալ ի սուրբ դասուցն, զբարձող մեղաց զգառն Աստուծոյ մատնէր ի մահ ընդ արծաթոյ. ի յընթրիսն հոգեւոր մերձի ժպիրհն եւ նենգաւորն, ուտելով ընդ վարդապետն յանճախէ ըզկաբէութիւն:

Լոյսն խօսէր աղերսալի խաւարելոյն վասն դարձի, մի ոմն ի ձէնջ ասէ եղբարք զիս մատնելոց է առ ի մահ. պետրոս լուեալ զայն զարհուրէր, եւ ակնարկէր առ Յովհաննէս հարցանել թէ ո՞վ իցէ դաւաճանող վարդապետին:

Խնամով սիրոյն յիւր սիրելեացն զտրտմութիւնն փարատեաց բացեալ պատառ տայ յուդայի նշաւակեալ ըզգողն մատնիչ, զոր առեալ եւ մերկացաւ յաստուածայինն հոգւոյն շնորհաց, մատնեցաւ նախաչարին ընդ մատնութեան վարդապետին:

Մայրագոյն լուսոյն զրկեալ խաւարասէրն արտաքս ելեալ տէրն յայտնէր լոյս եղելոցն զգայթակղիլն ի գիշերի. պետրոս խօսէր խրախուսելի եւ կշտամբիւր հաւատօսի, զիւրն յաշխարհէ զփոխիլն ասէր եւ զգալուստ հոգւոյն պատմէր:

Կեդրոնեան յանկոյս ձորոյ ի վերնատունն ել խորհրդոյ եմուտ պարտէզ ընդ պարտիզի եմոյծ զադամ յադին դրախտի. մուծցես եւ զմեզ տէր ընդ նմին ուստի հաներ նախ զառաջինն, զի ժառանգել զհայրենին արժանացուք մեք վերստին:

Հզօր զկրիցն տրտմաբար երիւրն եղեալ առանձնաբար, փրկել զաշխարհս հոգիս յօժար, բայց է բնու-

թիւն մարմնոյս տկար. ոչ ունի ուժեղ եւ զօրաւոր, եւ ունի անզօր կեսնգաւոր, այլ միեւնոյն գոլ միաւոր կրէր զկիրսն կամաւոր:

Զայնիւ մաղթէր աղօթականն վասն իմ առ հայր իւր էական, ծունր դնէր խոնարհականն որում երկնի ծունր ամենայն, եթէ փրկիլ մարդկան հնար է առանց մահու իմ որ գրեալ է, բաժակ մահուս յինէն անցցէ, ոչ իմ կամաւ այլ քոյդ եղիցի:

Ողբեալ յերկիւղ քրտանց հոսման ոլոռնաձեւ կայլակ վիժման, ի զօրանալ հրեշտակ մերձեալ զօրհնականն զիրն լցեալ, զի կատարեալ եառ զբնութիւն աստուածն բան զմարդկութեան, պարտէր զերկիւղ եւ զտրտմութիւն յիւրումն կրել տնօրէնութիւն:

Ճառագայթ փառաց էին որ ըստ բնութեանս մարդկային տագնապեցար ի գիշերին աղօթեցեր առ հայր յերկին. ծագեա ի մեզ զլոյսդ երկնային եւ փարատեա զերկիւղ չարին, մասունք հոգւոց մեր եւ մարմին յերկիւղ քո սուրբ բեւեռեսցին:

Մերձեալ Յուդաս որ մատնելոց հանդերձ դասուն Փարիսեցւոց, անկան նման ստորանկելոց որք յաւիտեան չեն կանգնելոց. յուդաս նենգաւ համբուրելով առիթ մահու Նորին տալով, փոխան սիրոյ զնա մատնելով չար ընդ բարւոյ վճարելով:

Ցայնժամ առ գութ սիրոյն պետրոս զծառային անուն Մաղքոս եհատ սուսերբ զականջն աջոյ որ ոչ լըւաւ տեառն իւրոյ. իսկ տէրն մեր արագապէս յունէր մերձեալ բժշկապէս, առողջացոյց աստուածապէս, զոր ոչ տեսին կուրացեալ հրեայքս:

Նոր հօտին փոքու ցրուեալ քանզի զհովիւն քաջ հարեալ, պետրոս միայն զհետ երթալ ի յաղջկանէ վիմին շարժեալ. նշանակեալ հաւն խօսէր առ ի պետրոս տէրն ակնարկէր, զբանն յիշէր դառն արտասուէր ի գլորմանէն դարձեալ կանգնիւր:

Շնորհեալ վէմին եկեղեցւոյ զոր պահեցեր ի հոսելոյ եւ կանգնեցեր ի գլորելոյ վասն սրտիւն արտասուելոյ. կանգնեա եւ զիս տէր ընդ նմին ի գլորմանէ սայթաքողին, տալով աչացս յորդ արտասուս եւ ջուր ծովու նման գլխոյս:

Ո՛վ կամաւ զանկապելին կապեալ զձեռսն արձակողին, ի յապարանսն տանէին կայիափայ եւ Աննային. ծառայն զերեսն այն ապտակէր յորմէ սրոբէն թեւասքօղէր, թուք արձակեալ պիղծ բերանով յայն որ կուրին լոյս ծագեաց թքովն:

Չար կապանաց մարդկան լուծիչ որ կապեցար ընդ կապելոյն զիս արձակեա յինքնակապս մեղաց կապից դժոխայնոյն, որ ընդ մեղօք պարտաւորին կացեր անմեղդ ի յատենին, յորժամ փառօք գաս հայրենին մի՛ դատեսցես զիս ընդ նոսին:

Պատկառանօք հինն Ադամայ որ ծաղեցար վասն նորա ջնջեա զամօթ մեղաց լրբին որով զերեսս իմ ծածկեցին, որ ներեցեր չար ծառային ածեալ ձեռօք քեզ ապտակին, հար ուժգնակի զդէմս չարին որպէս եւ զիս եհար ուժգին:

Ջահն լուսոյ առաւօտին ի յուրբաթու հնոյ զատկին կայր առաջի դատաւորին ծառայն նստէր ի յատենին, ի

հարցանել պիղատոսի տէրն ոչ առնէր պատասխանի, զի կանխասաց զիրն յցցի եղէ ես մարդ որ ոչ խօսի:

Ռամկական դասք զինուորացն արկին հանդերձ նախատանաց այնմ որոյ զգեստն է լոյս փառաց իբրեւ զօրոց զինքեամբ արկած. ի ծունր իջեալ կատակէին զգլուխն եղեգամբ հարկանէին պսակ ի փշոց բոլորէին զփուշ մեղացն բարձողին:

Սոսկային սերոբէից բառնայր ինքեամբ զփայտ խաչին մինչ ի տեղի գողգոթային յորում եդեալ մարդն առաջին, ետուն ըմպել զինի զմռսեալ եւ կերակուր լեղեաւ խառնեալ, որով զպտղոյն դառն ճաշակ փոխեաց մեզ քաղցր եւ ախորժակ:

Վերնականքն զարհուրեալ տեսին զտէրն մերկացեալ եւ զհանդերձսն բաժանեալ պատմուճանին վիճակ արկեալ, զձեռսն եւ զոտսն ծակեցին ըստ յայտնապէս դաւթեան ձայնին, ընդ փայտ խաչին բեւեռեցին զմատունսն որ գրեաց ի տախտակին:

Տարածեալ ձեռք ընդ ձեռաց ոտք ընդ ոտից ընթանալեաց, փայտ ընդ փայտի դառն պտղոյ կեանք ընդ մահու փոխարկելով. ի մէջ երկուց անօրինաց կայր մերկացեալ տուողն օրինաց, զոր ոչ տեսին ազգն կուրաց բաց ի միոյն աւազակաց:

Րոպէիցն արեգական զտիւն արար գիշերանման, զտուերն քօղ արկ մերկութեան զի մի՛ տեսցէ ակն անարժան. ի միջօրեայն նսեմացաւ յորժամ Ադամ մեղօք մեռաւ ի յիններորդն ի լոյս դարձաւ յորժամ մահուամբ մահն լուծաւ:

Ցօղէր արտօսր ցաւագին մայր տեառն որ կայր մերձ առ խաչին, յորժամ լսէր զծարաւին բարբառելոյ իւր միածնին. ետուն քացախ խառնեալ լեղի այնմ որ բղխեաց զետ յադենի, եւ ի վիմէն վտակ բարի արբոյց տոհմին դառնացողի:

Իւծեալ յերրորդ ժամու օծին զմիտս նախնոյ մօրն եւայի, ի վերն անկեալ մարդն առաջին հաւանական բանիւ նորին. ի սոյն ժամու տէրն ի խաչին զի քաւեսցէ զմեղս նոցին, եւ յորժամ ել ադամն հին եդ զաւազակն ի մէջ դրախտին:

Փարելի բարբառ ընդ իմ էլի էլի առ հայր գոչէր, զհոգին կամաւ հօր աւանդէր զհոգիս մարդկան նոյն ընծայէր. երկիր հիմամբք սասանեցաւ եւ վարագոյրն ընդմէջ հերձաւ, վէմք ի յինքեանց պատառեցան եւ գերեզմանք մահու բացան:

Քարոզի ի սքանչելեացս Աստուած մարմնով վասն իմ խաչեալ, մեռով բնութեամբս մեռանի Աստուած անմահ խոստովանի, կրկնավտակ կողին աղբերբք եկեղեցի իւր հաստատի, ջրովն մաքրի զարիւնն ըմպէ զորդի ընդ հօր փառաւորէ:

---

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

---

*Անպատմելի լոյսին (Հայր Աստուծոյ) ծագումը (Քրիստոս), այսօր ի գլուխ հանելու համար մեր փրկութեան գործը, վիրնաստուածը կը խոնարհի, կ'իջնէ կատարելու, վերջացնելու համար ստուերականն (Նորին*

թերև օրինակ, թերև ստուեր ծառայող ) առնելը . խորհրդաւոր ընթրիքէն առաջ գոգնոց մը կապեց նա որ ամբողջովին լոյս հագած է, և ջուր առնելով սպասաւորի պէս կը լուար աշակերտներուն ոտքերը ։

Պետրոս թոյլ չէր տար որ իր ոտքերուն մօտենայ հայր Աստուծոյ փառքին լոյսը, բանն Աստուածը, որուն ձեռքով ստեղծուած են երկինքն ու երկիրը, որով բացուեցան կոյրերուն աչքերը, խուլերուն ականջները և համրերուն լեզուները քակուեցան, որ զինք ( Պետրոսը ) ծովին երեսը հանեց, յանդիմանեց ալիքներուն և հանդարտեցան ։

( Քրիստոս ) կը յանդիմանէր ընտրեալ փոքր խումբին գլուխը ( Պետրոսը ) թէ չէր գիտեր այդ խորհուրդին նշանակութիւնը . ասոր վրայ նա ( Պետրոս ) ետ դառնալով կը հնազանդէր, և կ'աղաչէր որ մաքրէ ոտքերն ալ գլուխն ալ . ( Քրիստոս ) ըսաւ թէ գլուխը ջրով լուացուելու պէտք չունի որովհետև լուացուած է . պէտք է որ դուք՝ ոտքերդ մաքրուիք սուրբ գլուխիս ( ինծի ) միանալու համար ։

Այսօր իրեն վրայ ցոյց տուաւ վերջին ծայր խոնարհութիւնը իր աշակերտներուն, որոնց նախ քարոզած էր խօսքով, հողեղէններուն ծառայեց նա որ հրեղէններուն ( հրեշտակներուն ) անտեսանելի է, սպասաւորեց իր ծառաներուն նա որուն կը ծառայեն սերովբէները։

( Քրիստոս ) ըսաւ, եթէ ես որ բոլոր արարածներուն տէրն եմ և ամէնուն ուսուցիչը եմ, հին աղտերէն լուացի ձեր՝ իմ աշակերտներուս և իմ ծառաներուս ոտքերը, դուք ալ որ իրարու հետ նոյն բնութիւնը ունիք, միևնոյն խոնարհութիւնը ցոյց տուէք, որպէսզի ամ-

*բարտաւանը կործանի և ձեր ինկած բնութիւնը բարձրանայ ։*

*Իմ մեղքիս ցեխին ալ լուա՛, և իմ ոտքիս ընթացքը ուղղէ՛ խոնարհութեամբ դէպ ի երկինք ելնել, աղաչանքով սուրբ խումբին ( աշակերտներուն ), որոց ոտքերը մաքուր ձեռքերով մաքրեցիր կոնքին մէջ, և սորվեցուցիր խոնարհութեամբ յաղթել չար հպարտին ( սատանային ) ։*

*Կատարեց այն օրէնքը զոր ինք հրամայեց Մովսէսին Սինա լերան վրայ, կերաւ իբրև օրինակ ծառայող գառնուկը և անխմոր հացը եղերդին հետ, հինը նորի փոխեց, գառնուկին տեղ ինքզինք Աստուծոյ նուիրեց իբրև գառնուկ ։*

*Բաղարջին՝ անխմոր հացին տեղ տուաւ իր երկնաւոր և հոգևոր մարմինը, որ կոյսէն ծնած է առանց սերմի և անարատ, ոչխարին արիւնին ուխտին տեղ իր արիւնը տուաւ իբրև երկրորդ ուխտ, և լեղի եղերդին փոխարէն իր աստուածային վարքը տուաւ ։*

*Արարածներուն Թագաւորը կեանքին հացը տուաւ անօթիներուն, և Ադամի մեղքէն տրտմողներուն ալ տուաւ ուրախացուցիչ բաժակը. ( ըսելով ) իմ արիւնիս նոր ուխտն է ասիկա՝ ( նիւթական ) արիւններուն հին ուխտին տեղ. պիտի կատարէք ասիկա զիս յիշելու համար մինչև որ գամ նորէն ։*

*Հոս հաւաքուողներս կը խնդրենք քեզմէ ( վերնատան մէջ ) հաւաքուող տասն և մէկ աշակերտներուն տեղ, դուն որ քու կենդանարար մարմինդ բաժակին հետ բաշխելով անոնց տուիր, մեզի ալ շնորհ ըրէ՛, ո՛վ*

*տէր, մասնակից ըլլալ քու սեղանիդ, կեանքի հացիդ որուն կարօտ ենք և բաժակիդ՝ որուն ծարաւի ենք։*

*Սուրբ գառնուկներէն, ընտրեալ աշակերտներէն բաժնուելով Յուդան, դրամի փոխարէն մահուան կը մատնէր Աստուծոյ գառնուկը որ (մարդկային) մեղքը կը կրէր. աներեսը և խարդախը (Յուդան) կը մօտենայ հոգեւոր ընթրիքին, վարդապետին հետ կը ճաշէ խաբէութիւնը առաջ տանելով։*

*Լոյսը (Քրիստոս) թախանձելով կը խօսէր դարձի բերելու համար խաւարեալը (Յուդան). ըսաւ, ձեզմէ մէկը, ո՛վ եղբայրներ, զիս մահուան պիտի մատնէ, Պետրոս կը սոսկար այս լուրը առնելով, և աչք կ՚ընէր Յովհաննէսին որպէսզի հարցնէ թէ վարդապետին դաւաճանութիւն ընողը ո՞վ է։*

*Իր բազմախնամ սիրովը տխրութիւնը փարատեց իր սիրելիներէն. պատառը թաթխելով Յուդային կուտայ՝ յայտնապէս խայտառակելով մատնիչ գողը. Յուդա առնելով պատառը՝ զրկուեցաւ աստուածային հագիին շնորհքներէն, և վարդապետը մատնելուն տեղ ինք ալ մեծ չարին (սատանային) մատնուեցաւ։*

*Խաւարասէրը (Յուդան) կատարեալ լոյսէն (Քրիստոսէն) զրկուելով դուրս ելաւ, տէրը կ՚իմացնէր կանխաւ լոյս եղողներուն (իր միւս աշակերտներուն) թէ պիտի գայթակղին գիշերուան մէջ. Պետրոս եռանդնալից կը խօսէր, բայց հաւախօսին ժամանակ կը յանդիմանուէր, (Քրիստոս) կը պատմէր թէ ինք պիտի փոխադրուէր աշխարհէն և թէ պիտի գար սուրբ հոգին։*

Խորհրդաւոր վերնատունէն ելնելով կեդրոնեան հեղեղատին միւս կողմը գնաց, (եդեմական) պարտէզին տեղ ուրիշ պարտէզ մը մտաւ. Ադամը մտցուց դարձեալ եդեմական դրախտին մէջ. ո՛վ տէր, զմեզ ալ անոր հետ մտցո՛ւր հոն ուրկէց հանեցիր առաջին անգամ, որպէսզի դարձեալ արժանի ըլլանք հայրենի (հին, Ադամական) պարտէզը ժառանգելու:

Տխուր կերպով հոգ կ'ընէր իր կրելիքներուն վրայ՝ երեք անգամ առանձնանալով, (կ'ըսէր) հոգիս պատրաստ է այս աշխարհը փրկելու, բայց մարմինիս բնութիւնը տկար է. ո՛չ թէ մին ուժով և զօրաւոր էր, և միւսն ալ տկար և վտանգաւոր, այլ երկուքն ալ (մարմին և հոգի) միասին էին, և ազատ կամքով կը քաշէր իր գլխէն անցածները:

Ինծի համար իր արարիչ հայր Աստուծոյ կը մաղթէր աղօթող ձայնով. խոնարհաբար կը ծնրադրէր նա՝ որուն առջև կը խոնարհին բոլոր ծունկերը, (կ'ըսէր) եթէ կարելի է մարդոց փրկութիւնը առանց իմ մեռնելուս որ գրուած է, այս մահուան բաժակը թո՛ղ անցնի ինձմէ, բայց ո՛չ թէ իմ կամքով, այլ քու կամքդ թո՛ղ ըլլայ:

(Քրիստոս) ընկղմեցաւ երկիւղի մէջ որ ոլոռն ոլոռն քրտինք թափել կուտար անոր, հրեշտակ մը մօտեցաւ զայն զօրացնելու համար, որով օրէնքին (Հին Կտակարանին) մէջ գրուածը կատարուեցաւ, որովհետև բանն Աստուած կատարելապէս առաւ մարդկային բնութիւնը, պէտք էր որ իր աստուածային կարգադրութեան միջոցին կրէր թէ՛ երկիւղ և թէ տխրութիւն:

*Ո՛վ Աստուծոյ փառքին ճառագայթը (Քրիստոս), որ մերձմարդկային բնութեան համեմատ տագնապներ կրեցիր նոյն գիշերուան մէջ, և աղօթեցիր դէպ ի երկինք հայր Աստուծոյ. ծագէ՛ մեր վրայ քու երկնային լոյսդ և ցրուէ չարին (սատանային) երկիւղը, մեր հոգիներուն բոլոր մասերը և մարմինը թո՛ղ զամուին միեան քու սուրբ երկիւղիդ ։*

*Երբ փարիսեցիներուն խումբին հետ մատնիչ Յուդան մօտեցաւ, գետին տապալեցան երկինքէն վար ինկողներուն (սատանաներուն) նման, որք ա՛լ մինչև վերջը պիտի չկանգնին. Յուդա նենգութեամբ համբուրեց իբրև մահուան նշան և պատճառ տալով (համբոյրը), (Քրիստոսի) սիրոյն տեղ վայն մատնեց, բարիին տեղ չարիք փոխարինեց ։*

*Այն ատեն Պետրոս (Քրիստոսի համար) իր ունեցած սիրոյն համար, իր տիրոջը խօսքին մտիկ չընելով, Մաղքոս անուն ծառային աջ ականջը սուրով զարկաւ կտրեց. իսկ մեր տէրը փութով մօտեցաւ ականջին իբրև բժիշկ, իբրև Աստուած բժշկեց, բայց կոյրերուն (հրէից) բազմութիւնը չհասկցաւ ։*

*Նոր փոքր խումբը ցրուեցաւ որովհետև քաջ հովիւը զարնուած տեսաւ. Պետրոս միայն անոր ետևէն գնաց, բայց վէմն (Պետրոս) ալ աղջիկէն նեղը մնաց. արոչուած հաւախօսին ժամանակ տէրը Պետրոսին ակնարկ մը նետեց, որ դառնապէս արտասուեց, և իր գլորումէն դարձեալ ոտք կ'ելնէր ։*

*Շնորհք ըրիր գայթակղութենէ, վար ինկալէ պահելու եկեղեցւոյ վէմը (Պետրոսը), և իր գլորումէն վեր առիր զայն ի սրտէ արտասուելուն համար. ո՛վ տէր, զիս ալ անոր հետ վեր ա՛ռ սահեցնողին (սատա-*

նային) գլորումէն, առատ արցունք տալով աչքերուս, և ծովի չափ ալ ջուր տալով գլխուս։

Ինչ մեծ հրաշք էր որ կապելով զայն որ ձեռքերը կը քակէր, և զոր կապել անհնարին էր, Աննայի և Կայիափայի դատարանը կը տանէին, ծառան ապտակ կը զարնէր այն երեսին, որմէ սերոբէները իրենց երեսը կը ծածկէին իրենց թեւերով, և կը թքնէր իր պիղծ բերնով անոր որ իր թուքով լուսաւորեց կոյրը։

Ո՛վ դուն որ քակեցիր մարդոց չար կապերը, որ կապուեցար կապուած Ադամին տեղ, արձակէ՛ զիս մեղքերու դժոխային կապերէն որոնցմով զիս կապեցի. դուն որ յանցաւոր Ադամին մեղքերուն տակ ատեանին առջև կեցար անմեղ ըլլալով, զիս անոնց հետ մի՛ դատեր երբ հայրենական փառքովդ գաս։

Դուն որ հին Ադամին ամօթը յանձն առնելով ծաղրուեցար անոր համար, ջնջէ՛ լիրբ մեղքերուն ամօթը, որով նոյն մեղքերը ծածկեցին իմ երեսս. դուն որ ներեցիր չար ծառային որ իր ձեռքով ապտակեց զքեզ, ուժգին կերպով զա՛րկ չարին դէմքին, ինչպէս որ անիկա ուժգին կերպով ինձի զարկաւ։

Լոյսին ջահը (Քրիստոս) հին (հրէական) զատիկին ուրբաթ առաւօտուն դատաւորին առջև կը կենար. (իսկ) ծառան (հողեղէն մարդը) ատեանին մէջ բազմած էր, տէրը պատասխան չէր տար Պիղատոսի հարցումներուն, որպէսզի կատարուի մարգարէութիւնը թէ ես չխօսող մարդ մը եղայ։

Զինուորներուն ռամիկ խումբերը նախատալից հա-

*զուտ հագցուցին անոր որ փառքին լոյսը վերարկուի պէս հագած է. ծունկի գալով կը նախատէին, գլխուն կը զարնէին եղէգով, փշեղէն պսակ կը հիւսէին անոր որ մեղքին փուշը կը վերցնէր։*

*Նա որմէ կը սոսկան սերովբէները՝ անձամբ կը կրէր խաչափայտը մինչև Գողգոթա ա՛յն տեղը՝ ուր թաղուած էր առաջին մարդը. զմռսած գինի խմցուցին և լեղիով խառնուած կերակուր, որով (արգիլուած) պտուղին դառն համը անոյշ և ախորժելի ընծայեց մեզի։*

*Վերնաբնակները (հրեշտակները) զարհուրեցան երբ տէրը մերկ տեսան, անոր հագուստները բաժնուած և պատմուճանին վրայ վիճակ ձգուած. ծակեցին անոր ձեռքերն ու ոտքերը, ինչպէս գուշակած էր յայտնապէս Դաւիթ, խաչափայտին գամեցին այն մատները որք գրեցին (մովսիսական) տախտակին վրայ։*

*(Քրիստոս) տարածեց ձեռքերը փոխանակ (Եւայի) ձեռքերուն (որք դէպ ի արգիլուած պտուղը երկարեցան), տարածեց ոտքերը փոխանակ (Եւայի) ոտքերուն (որք դէպ ի արգիլուած ծառը քալեցին). փայտը (խաչը) փայտին (արգիլուած ծառին) փոխանակեց, կեանքը՝ մահուան. երկու անօրէններուն (աւազակ) մէջտեղ մերկ կեցած էր նա որ օրէնքը տուաւ. կոյրերուն (հրէից) ազգը չտեսաւ զայն բաց ի մէկ աւազակէն։*

*Արեւու րոպէներէն ձեւացած ցերեկը (Քրիստոս) խաւարի վերածեց, ստուերով (խաւարով) ծածկեց իր մերկութիւնը որպէսզի (հրէից) անարժան աչքը չտեսնէ. (արեւը) կէս օրին խաւարեցաւ երբ Ադամ*

մեղքովը մեռաւ, ժամ իննին լուսաւորուեցաւ երբ (Քրիստոսի) մահով (Ադամին) մահը քակուեցաւ ։

Տիրոջը մայրը՝ որ խաչին մօտ կեցած էր՝ ցաւալի արցունքներ կը թափէր երբ կը լսէր որ իր միածին որդին «Ծարաւի եմ» կ՚աղաղակէր. լեղի խառնուած քացախ տուին անոր որ եդեմին մէջ գետ բխեցուց, և կարծրասիրտ ազգին (հրէից) անոյշ ջուր բխեցուց ապառաժէն ։

Ժամը երեքն էր երբ օձը խաբեց Նախամայր Եւային միտքը, առաջին մարդն ալ (Ադամը) անոր համոզիչ խօսքով ինկաւ (մոլորեցաւ) ժամ վեցին. այս ժամուս տէրը խաչին վրայ ելաւ, որպէսզի անոնց մեղքը սրբէ, և երբ հին Ադամը դուրս ելաւ, աւազակը դրաւ դրախտին մէջ ։

(Քրիստոս) դողդողուն ձայնով «Աստուած իմ, Աստուած իմ» կ՚աղաղակէր հօրը, իր կամքով իր հոգին հօրը կը յանձնէր, ինչպէս նաև կը նուիրէր մարդոց հոգիները. երկիրը սարսեցաւ իր հիմերով և վարագոյրը մէջտեղէն պատռեցաւ, քարերը իրենք իրենցմէ ճաթռտեցան, և մեռելներուն գերեզմանները բացուեցան։

Այս հրաշքներէն կը հասկցուի թէ Աստուած մարմինով ինծի համար խաչ ելաւ, մեր բնութեամբ կը մեռնի, (բայց) իբրև անմահ Աստուած կը դաւանին զայն (մարդիկ). իր եկեղեցին կը հաստատուի անոր կողին կրկին աղբիւրներով, ջուրովը (մկրտութեամբ) կը մաքրուի, արիւնը (Ս. Խորհուրդ Հաղորդութեան) կը խմէ, և փառք կուտայ որդիին, ինչպէս նաև հօրը։



# ԿԱՆՈՆ ԹԱՂՄԱՆ ՄԵԾԻ ՇԱԲԱԹՈՒ

ԱՀ Պարգեւատուն ամենեցուն այսօր խնդրի պար-
ՓՅ գեւս ի Պիղատոսէ եւ արկօղն զլոյս որպէս
Ժ— զօթոց հաւանելի պատիլ ի յօսեփայ:

Կենդանատուն ամենեցուն այսօր դնի ի նոր գերեզմանի, եւ զանձն անմահութեան կնքի մատանեաւ քահանայիցն:

Արարածոց փրկութիւն Քրիստոս այսօր եդաւ ի նորափոր վիմի զոր օրհնեն զօրք երկնից երգով պահպանի ի զինուորաց:

Կենդանին յաւիտենից Քրիստոս այսօր խնդրի որպէս մեռեալ ի Պիղատոսէ եւ մերկութեան ծածկոյթն Ադամայ յանձն առնու պատիլ ի յովսեփայ:

Անմահութեանց տուող Քրիստոս այսօր ի հող մահու խոնարհեցաւ եւ բնակեալն ի լոյս անմատոյց թաղեցաւ մարմնով ի սիրտ երկրի:

Արեգակն արդարութեան Քրիստոս այսօր եդաւ ի գբի ստուերականի, եւ փառացն հօր ճառագայթ ծածկեցաւ վիմով ի մէջ երկրի:

Կուսածին մարմնով Քրիստոս այսօր դնի ի կոյս գերեզմանի, եւ լուծիչն երկանց դժոխոց մատանեաւ կնքի քահանայիցն:

Արթուն քնութեամբ արարիչն ամենեցուն այսօր ննջէ ի մէջ մահացելոց որ պահէն զիսրայէլ անքուն պահպանի ի զինուորաց:

Ցնծութիւն արարածոց Քրիստոս այսօր արտասուի

որպէս մեռեալ ի տրտմագգեցիցն , եւ բուրումն անմա-
հութեան խնկի ի զգաստիցն իւղաբերից :

Հ Զքեզ օրհնեմք թագաւոր յաւիտենից անմահ ,

գյ Աստուած հարցն մերոց :

Զոր ոչ բնութիւնք արարածոց զԱստուած տանիւր ,
մահուամբ սահմանեալ դնի ի նոր գերեզմանի , նոր զիս
ընդունելով մարդ , գովեմք զքեզ տէր հարցն մերոց :

Որ անփակ գրով հաստատեալ քարտէզ կնքի մատան-
եաւ անկորուստ պահելով զմեզ հաւատով երրորդու-
թեանն , գովեմք զքեզ :

Գ Զտէր օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտ-
եան :

ԶՔրիստոս թագաւորն յիմանալի զօրացն անիւ պատ-
ուեալ , եւ բարձր :

Զանյաղթելի զթագաւորն որ պսակի ի զինուորաց
գանձն անմահութեան , եւ բարձր :

Ո Որ բաշխողդ ես բարութեանց եւ պարգեւա-
տու արարածոց քոց , այսօր հանեցար խնդրել ի պար-
գեւի մասին ի Պիղատոսէ, զի եւ մեզ շնորհեսցես զպար-
գեւս ողորմութեան քո :

Որ զանճառ զլոյս փառաց իբրեւ զօթոց զքեւ ար-
կար , այսօր անճառ խոնարհութեամբ պատեցար ի յով-
սեփայ ի գերեզմանի տքնեալ , զի զհնութիւն մեղաց մե-
րոց նորոգեսցես ի կեանս անմահ :

Որ յէութեանդ ես ընդ հօր անպարագրելի բանդ ,
այսօր մատանեաւ քահանայիցն պարագրիլ ի յանձն ա-
ռեր անկողոպտելի գանձ , զի զմեզ փրկեսցես ի յանցա-
նաց մեղաց մերոց :

Տ Յովսէփ ճշմարիտ եւ արդար հայցէր ի պիղա-

տուէ զհասարակաց զպարգեւատուն, որ տուաւ մեզ զանձ անկողոպտելի :

Պատեալ սուրբ կտաւօք զմարմինն տէրունական զարկօղն զլոյս որպէս զօբոց, որ զգեցոյց մեզ զգեստ անկողոպտելի :

Եդաւ ի նորափոր ի վիմի եւ մատանեաւ կնքեցաւ, որ զնախաստեղծն կենդանացոյց եւ զմարդկան կապանս մահու ելոյծ :

Յովսէփ քեզ հաւատացեալ Պիղատոսի աղերսէր շնորհել զտէրունեանդ մարմին :

Զանապական զաստուածացեալ մարմինդ պատեալ սուրբ կտաւօք եւ եդ ի գերեզմանի :

Որ արարիչդ ես արարածոց հանգուցեալդ ի քերո-բէս վիմով կնքեցար յերկրի :

# ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Այսօր Պիղատոսէն իբրև պարգև կը խնդրուի Նա որ ամէնուն պարգև տուողն է, և յանձն կ'առնէ Յովսէփէն պատանքի մէջ փաթթուիլ Նա որ լոյսը հագած է իբրև վերարկու :*

*Այսօր Նոր գերեզմանի մէջ կը դրուի Նա, որ կենդանութիւն կուտայ ամէնուն, և քահանաներուն կնիքով կը կնքուի Նա որ անմահութեան գանձարանն է :*

*Նոր փորուած քարէ գերեզմանի մէջ դրուեցաւ այսօր Քրիստոս որ արարածներուն փրկիչն է. զին-*

ուորները պահպանութիւն կ'ընեն անոր զոր երկնային զօրքերը կ'օրհնեն ։

*Քրիստոս, որ յաւիտենապէս կենդանի է, այսօր Պիղատոսէն կը խնդրուի իբրև մեռած մարդ մը, և նա որ Ադամին մերկութիւնը ծածկեց՝ յանձն կ'առնէ պատանքի մէջ փաթթուիլ Յովսէփէն ։*

*Քրիստոս, որ անմահութիւն կուտայ, այսօր կը զիջանի իջնել մահուան հողին մէջ, և անմատչելի լոյսին մէջ բնակողը (Քրիստոս) երկրի սրտին մէջ թաղուեցաւ մարմինով ։*

*Քրիստոս, որ արդարութեան արեւն է, այսօր խաւարային գուբի մէջ դրուեցաւ, և երկրին մէջտեղը քարով ծածկուեցաւ նա որ հայր Աստուծոյ փառքին ճառագայթն է ։*

*Այսօր կոյս (դեռ չգործածուած) գերեզմանի մէջ կը թաղուի Քրիստոս, որ կոյսէն մարմին առած էր, և քահանաներուն կնիքովը կը կնքուի նա որ ջնջեց դժոխային անէծքը, ցաւերը ։*

*Այսօր մահկանացուներուն մէջէն կը քնանայ ամէնուն արարիչը, որ իր բնութեամբ արթուն, ամենատես է, զինուորները պահպանութիւն կ'ընեն անոր որ առանց քնանալու Իսրայէլին վրայ կը հսկէ ։*

*Սգակիր կիները այսօր կ'արտասուեն Քրիստոսի վրայ որ բոլոր արարածներուն ուրախութիւնն է, և իւղ բերող իմաստուն կիները կը խնկեն զայն որ անմահութիւն կը բուրէ ։*

Հ *Կ'օրհնենք զքեզ, ո՛վ յաւիտենական անմահ թագաւոր, ո՛վ մեր հայրերուն Աստուածը ։*

*Մտնելով նոր գերեզմանի մէջ կը փակուի նա*

զոր բոլոր արարածները չեն կրնար կրել, նոր մարդ-ընդունելով զիս, կը գովենք զքեզ ո՛վ մեր հայրերուն տէրը:

Անփակ գիրով (Աստուծոյ անունը ցոյց տուող է գիրը) թուղթ մը պատրաստելով կը կնքուի կնիքով, որպէսզի երրորդութեան հաւատքով անկորուստ պահէ զմեզ, կը գով.

Գ Օրհնեցէք տէրը և ի սպառ փառաւորեցէք զայն:

Քրիստոս Թագաւորը՝ որմէ կը սոսկան հողեղէն զօրքերը (հրեշտակները), և կը պատուեն զայն:

Անյաղթելի Թագաւորը (Քրիստոս), և անմահութեան գանձարանը, որուն պահպանութիւն կ'ընեն զինուորները.

Ո Այսօր յանձնառու եղար իբրև պարգև խընդ-րուելու Պիղատոսէն դուն՝ որ բարիքները կը բաշխես, և քու արարածներուդ պարգև կուտաս, որպէսզի մե-զի ալ շնորհես քու գթութեանդ պարգևները:

Փառքի անպատմելի լոյսը իբրև զգեստ հագար, այսօր անպատմելի խոնարհութեամբ Յովսէփին պա-տանքով փաթթուեցար և գերեզմանին մէջ հանգեցիր, որպէսզի մեր հինցած մեղքերը անմահ կեանքով նորո-գես:

Ո՛վ անբովանդակելի բանդ Աստուած, որ հայր Աստուծոյ հետ նոյն էութիւնը ունիս, այսօր յանձն ա-ռիր քահանաներուն կնիքով բովանդակուիլ դուն՝ որ անկողոպտելի գանձ մ'ես, որպէս զի մեր մեղքերէն ու յանցանքներէն փրկես զմեզ:

Ց Արդար և ճշմարտախօս Յովսէփը Պիղատոսէն

կը խնդրէր զայն որ ընդհանուրին պարգև տուողն է, և մեզի տրուեցաւ իբրև անկողոպտելի գանձ մը ։

(Յովսէփ) մաքուր կտաւներով փաթթեց տիրոջը մարմինը, զայն որ լոյս հագած է զգեստի պէս, եւ մեզի հագցուց անկողոպտելի զգեստ ։

Նոր փորուած քարէ գերեզմանին մէջ դրուեցաւ և կնիքով կնքուեցաւ նա որ առաջին անգամ ստեղծուածը (Ադամը) կենդանացուց և մարդոց մահուան կապերը քակեց ։

Յովսեփ քեզի հաւատալով թախանձեց Պիղատոսին որ շնորհ ընէ տէրունական մարմինդ ։

Անարատ և աստուածացած մարմինդ մաքուր կըտաւներու մէջ փաթթելով գերեզմանին մէջ դրաւ ։

Դուն որ արարածները ստեղծեցիր և քերոբէներուն վրայ կը հանգչիս, քարով մը կնքուեցար երկրի վրայ ։



# ԿԱՆՈՆ ՍՐԲՈՅՆ ՍՏԵՓԱՆՆՈՍԻ ՆԱԽԱՎԿԱՅԻՆ

ԱՀ Նահատակ բարի Քրիստոսի եղեր այսօր ի մի-
ԳԷ ջի մերում, եւ մտեր ի վերնատունն խորհրդոյ
ԺԸ յաւիտենականի :

Որ ընտրեցար ի դասս երկնաւոր զօրացն, պսակեցար ի թագաւորէն զանթառամ զպսակն, եւ մկրտեցար արեամբդ քով սրբով առաջին վկայ Քրիստոսի սուրբ ստեփաննոս նախասարկաւագդ մեծ :

Մարտեար ընդդէմ թշնամւոյն այսօր եւ գնեցեր արեամբդ քով զարքայութիւն, ի պարծանս ազգի մարդկան ճգնաւոր Քրիստոսի, զոհութիւն երեքսրբենին, որ ընկալաւ զվկայդ իւր զսուրբ ստեփաննոս ի վերինն Երուսաղէմ :

Որ ընտրեցար ի կոչումն առաքելական քարոզութեանցն արժանաւոր լինելով սուրբ Ստեփաննոս, բարեխօսեա առ Քրիստոս վասն անձանց մերոց :

Որ խնդրեցեր զթողութիւն ի վերայ քո քարաձիգ ժողովոյն սուրբ ստեփաննոս եւ այժմ վասն քո ուխտաւորացս աղաչեա զընդաջմէ հօր նստեալն :

Որ արժանի եղեր զմարտիրոսականն առնուլ պսակ նախդ ի վկայս, առ պսակիչն սրբոց եւ վասն մեր բարեխօսեա :

ԴԿ Առաքեալ եւ նախավկայ Քրիստոսի սուրբ ստեփաննոս, որ զքարկոծումն յանձն առեր եւ յանմահից բնակարանսն վերափոխեցար, աղաչեա զԱստուած շնորհել մեզ զկեանս անվախճան :

Տունկ անմահ իմանալի դրախտին շնորհեցար ի հօրէ, եւ լուսաւորեցար անճառապէս, այսօր ցնծան դասք հրեշտակաց ընդ քո մեծապայծառ ճգնութիւնդ, աղա:

Աստուածաստեղծ մարդոյն պսակ ընծայեցար մերձ յանմերձենալի լուսոյն, եւ հայրենի աւանդութեանն եղեր ժառանգորդ, աղս:

Ճանապարհ վկայից լես Քրիստոսի գտար, եւ աստուածային փառացն արժանաւոր եղեր, բանսարկուն զինու քո վիրաւորեցաւ եւ նախաստեղծն պայծառացեալ բերկրեցաւ, աղա:

Դասակարգեալ եւ մեք ընդ անմարմնական բազմութիւնսն վերահայցեմք ընդ հրեղէն լեզուացն աղօթանուէր մաքրանօք հայցեմք ի քէն մարդասէր փրկիչ, խնայեա ի մեզ ստեղծոց մեր եւ կեանք աշխարհի:

Հ Ընդ երկնային հոգեղինաց դասուն այսօր տօ-
ԳՅ նեմք զյիշատակ սրբոյն ստեփաննոսի, բարեբանելով զքեզ տէր Աստուած հարցն մերոց:

Որ հրեշտակակերպ տեսլեամբ արիաբար պատերազմեալ զքարկոծումն յանձն էառ, խոստովանելով զքեզ Քրիստոս Աստուած հարցն մերոց:

Որ անպարագրելի աստուածութեանդ տեսող եւ բարեխօս իւր ուխտաւորացս այսօր յիշատակաւ սրբոյն ստեփաննոսի, գովեմք զՔրիստոս Աստուած հարցն մերոց:

Գ Զտէր օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան:

Որ յերկնային զօրացն միշտ օրհնի Քրիստոս Աստուած այսօր յիշատակաւ սրբոյն ստեփաննոսի, զտէր օրհնե:

Հրաշալի աստուածաբանութեամբ սրբոյն ստեփան-

Նոսի քահանայք ընդ Պետրին զօրացն երկնից, զՔրիստոս գովե:

Ո Առաքեա ի մեզ Տէր զբազում զթութեան քո

ԿԼ զողորմութիւն բարեխօսութեամբ սրբոյ Նախավկային քո եւ ողորմեա:

Որում զերկնայինն բացեր զդուռն ցուցանելով զանճառելի զխորհուրդ, սորին աղաչանօք խնայեա ի մեզ Տէր եւ ողոր:

Որ աղօթանուէր հայցմամբ զթողութիւն խնդրելով ի քէն անօրէն սպանողաց իւրոց, սորին աղաչանօք խնայ:

Տ Ո՛վ երջանիկ նահատակ, առաքելական քարոզութեանցն արժանաւոր լինելով սուրբ Ստեփաննոս, հաստատութիւն ի Քրիստոսէ հայցեա սուրբ եկեղեցւոյ:

Որ քոյին յօժարական համբերութեամբդ զքարկոծումն յանձն առեր, շնորհեալ քեզ յԱստուծոյ լինիլ շարչարակից Քրիստոսի զի եւ մեզ ուսուցես փառաւորել սուրբ զերրորդութիւնն:

Աղօթէիր որ քարածիգն լինէին ի քեզ նախդ ի վկայս, զի առցես հատուցումն բարի յարարչէն ամենեցուն, եւ այժմ աղաչեմք զքեզ եւ վասն մեր բարեխօսեա:

ՄԿ Նախասարկաւագ եւ առաջին մարտիրոս որ

րէ ի Քրիստոսէ պսակեցար, եւ յերկնահեծ առագաստին պայծառացեալ բերկրեցար, աղաչեա զԱստուած շնորհել մեզ զկեանս անվախճան:

Որ քոյին համբերութեամբդ զդրունս երկնից բացեալ տեսեր եւ զորդի ընդ աջմէ հօր, աղօթէիր ի վերայ քո քարածգողացն, աղա:

Եկեղեցիք արդարոց եւ ժողովք ուղղափառաց այսօր զյիշատակս քո տօնեմք եւ արտասուօք հայցեմք ի քէն ճշմարիտ վկայ Քրիստոսի, աղա:

ԻԵ Ցնծայ այսօր եկեղեցի Աստուծոյ զէն փայլեցապէս տօնէ զյիշատակս ով սուրբ Ստեփաննոս, մեծ եւ պատուական անուանիդ ի վկայս, աղաչեա զԱստուած ծն:

Նախաշաւիղ բարեաց ամենայն աշխարհի եւ լուսազարդ ճանապարհացն եղեր ժառանգորդ ո՛վ սուրբ ստեփաննոս, մեծ եւ:

Աստուածային զինու վառեցար սուրբ հոգւոյն, տեսանելով յերկինս հայրենի փառօք զորդին Աստուծոյ ով սուրբ Ստեփաննոս, մեծ եւ:

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Այսօր մեր մէջ (քրիստոնէական եկեղեցիին մէջ) Քրիստոսի քաջ նահատակը եղար, և յաւիտենական խորհուրդին վերնատունը մտար (Աստուծոյ փառքը տեսար, անոր քով գացիր):*

*Երկնաւոր զօրքերուն խումբերուն մէջ. ընտիր համարուեցար, անթառամ պսակով պսակուեցար թագաւորէն, և քու սուրբ արիւնովդ մկրտուեցար, ո՛վ սուրբ Ստեփաննոս, որ Քրիստոսի առաջին մարտիրոսը և առաջին սարկաւագն ես:*

*Այսօր թշնամիին (սատանային) դէմ կռուեցար և քու արիւնովդ գնեցիր արքայութիւնը, ո՛վ Քրիստոսի ճգնաւոր և մարդկային ազգի պարծանք: փա՜ռք կուտանք Երրորդութեան որ վերին Երուսաղէմի մէջ ընդունեց իր մարտիրոսը՝ սուրբ Ստեփաննոսը:*

*Քրիստոսի բարեխօսէ՛ մեր անձերուն համար ո՛վ*

*Ստեփաննոս, որ արժանաւոր ըլլալով՝ առաքելական քարոզութեան կոչումին յարմար դատուեցար։*

*Ո՛վ սուրբ Ստեփաննոս, ներում խնդրեցիր զքեզ քարկոծող բազմութեան համար. հիմայ ալ Հայր Աստուծոյ աջ կողմը նստող Քրիստոսին աղաչէ՛ մեզի համար որ քեզի համար ուխտ հաստատած ենք։*

*Ո՛վ մարտիրոսներուն մէջ առաջինը, որ արժանի եղար մարտիրոսական պսակը առնելու, մեզի համար ալ բարեխօսէ՛ անոր որ իր սուրբերը կը պսակէ։*

*Ո՛վ սուրբ Ստեփաննոս, Քրիստոսի առաքեալը և առաջին մարտիրոսը, որ յանձն առիր քարկոծուիլ և անմահներուն բնակարանը փոխադրուեցար, աղաչէ՛ Աստուծոյ որ անվախճան կեանքը պարգեւէ մեզի։*

*Հայր Աստուծմէ պարգեւուեցար հոգեւոր դրախտին իբրև մէկ անմահ տունկը, և անպատմելի կերպով լուսաւորուեցար. այսօր հրեշտակներուն դասերը կը հրճուին քու մեծ և պայծառ չարչարանքներուդ վրայ, աղաչէ Անոր։*

*Դուն իբրև պտուղ նուիրուեցար աստուածաստեղծ մարդուն (Ադամին) անհպելի լոյսին (Աստուծոյ) քով, և հայրենի աւանդութեան ժառանգորդ եղար, աղաչ։*

*Քրիստոսէ վերջ մարտիրոսներուն առաջնորդն եղար, և արժանի եղար աստուածային փառքը տեսնելու, սատանան քու զէնքէդ վիրաւորուեցաւ և նախաստեղծ Ադամը ուրախացաւ և հրճուեցաւ, աղաչէ՛։*

*Մենք ալ անմարմին հրեշտակներու հետ դասաւորուելով, ո՛վ մարդասէր փրկիչ, անոնց հրեղէն լեզուներուն հետ աղօթքով և մաղթանքով կը հայցենք՝ խնայէ՛ մեզի ո՛վ մեր արարիչը և աշխարհի կեանք տուողը։*

Հ Երկնային հրեղէն էակներուն դասերուն հետ այսօր կը տօնենք սուրբ Ստեփաննոսին յիշատակը գովաբանելով զքեզ, ո՛վ մեր հայրերուն տէր Աստուածը։

Հրեշտակի կերպարանք առնելով քաջարար կռուեցաւ և քարկոծուելու յանձնառու եղաւ, դաւանելով զքեզ, ո՛վ Քրիստոս՝ մեր հայրերուն Աստուածը։

Այսօր յիշելով սուրբ Ստեփաննոսը, որ տեսաւ քու անբովանդակելի աստուածութիւնդ, և կը բարեխօսէ մեզի՝ իր ուխտաւորներուն համար, կը գովենք զՔրիստոս, մեր հայրերուն Աստուածը։

Գ Օրհնեցէք տէրը և ի սպառ փառաւորեցէք զայն։

Այսօր սուրբ Ստեփաննոսին յիշատակին առթիւ օրհնեցէք Քրիստոս Աստուածը, որ միշտ կ՚օրհնուի երկնային զօրքերէն։

Ո՛վ քահանաներ, սուրբ Ստեփաննոսի ուսուցած սքանչելի աստուածաբանութեամբ երկնային զօրքերուն հետ գովեցէք Քրիստոս Աստուածը։

Ո Ո՛վ տէր, առաջին սուրբ մարտիրոսին բարեխօսութեամբ մեր վրայ դրկէ՝ քու բազում ողորմութիւնդ և գթութիւնդ, և ողորմէ՛։

Անոր առջև բացիր երկնային դուռը և քու անպատմելի գաղտնիքդ ցոյց տուիր, տար աղաչանքով խնայէ՛ մեզի, ո՛վ տէր, և ողորմէ։

Աղօթքով և պաղատանքով իր անօրէն սպանիչներուն համար թողութիւն կը խնդրէր քեզմէ. տար աղաչանքով։

Տ Ո՛վ երջանիկ նահատակդ, սուրբ Ստեփաննոս, առաքելական քարոզութեան արժանաւոր պաշ-

*տօնեայ, խնդրէ՛ որ Քրիստոս հաստատութիւն տայ սուրբ եկեղեցիին ։*

*Քու յօժարութեամբդ և համբերութեամբդ քարկոծուելու յանձնառու եղար, Աստուած շնորհ ըրաւ քեզի որ Քրիստոսի չարչարակից ըլլաս, և մեզի սովորեցնես սուրբ երրորդութիւնը փառաւորել ։*

*Ո՛վ առաջին մարտիրոս, կ'աղօթէիր զքեզ քարկոծողներուն վրայ՝ որպէսզի բարի վարձք ընդունիս բոլոր արարածներուն արարիչէն, հիմակ ալ կ'աղաչենք քեզի մեզի համար ալ բարեխօսէ ։*

ՄԿ *Առաջին սարկաւագ և առաջին մարտիրոս, որ Քրիստոսէն պսակուեցար, և երկնաւոր բնակարանին մէջ ուրախութեամբ փայլեցար. աղաչէ՛ որ Աստուած անվախճան կեանքը պարգեւէ մեզի ։*

*Քու համբերութեանդ շնորհիւ երկինքի դուռները բացուած տեսար, և որդին ալ հօր աջ կողմը, կ'աղօթէիր զքեզ քարկոծողներուն վրայ, աղաչ ։*

*Արդարներուն եկեղեցիները և ուղղափառ քրիստոնէից բազմութիւնները, մենք, այսօր քու յիշատակդ կը տօնենք, և արտասուելով կը խնդրենք քեզմէ, ո՛վ Քրիստոսի ճշմարիտ մարտիրոս, աղաչ ։*

ՁԸ *Աստուծոյ եկեղեցին այսօր կը բերկրի և վայելուչ կերպով կը տօնէ քու յիշատակդ, ո՛վ սուրբ Ստեփաննոս, մարտիրոսներուն մէջ մեծը, պատուականը և նշանաւորը, աղաչ ։*

*Ընդհանուր աշխարհի բարի առաջնորդ եղար և (ճշմարտութեան) լուսաւոր ճամբաներուն ժառանգ եղար, ո՛վ սուրբ Ստեփաննոս, մարտիր ։*

*Սուրբ հոգիին աստուածային զէնքովը սպառազինուեցար, երկինքին մէջ տեսար Աստուծոյ որդին, իր հօր փառքով, ո՛վ սուրբ Ստեփաննոս, մարտիրոսներուն մէջ մեծը, պատուականը և նշանաւորը, աղաչ։*



# ԵՐԳ
# ԱՐԵՒԱԳԱԼԻՆ

---

Ցարեւելից մինչ ի մուտս , ի հիւսիսոյ եւ ի հարաւոյ , ամենայն ազգ եւ ազինք յօրհնութիւն նոր օրհնեցէք զարարիչն արարածոց , որ ծագեաց զլոյս արեգականն այսօր յաշխարհս :

Եկեղեցիք արդարոց , փառաբանիչք ամենասուրբ երրորդութեանն , յառաւօտս լուսոյ զառաւօտ խաղաղութեան Քրիստոս զովեցէք ընդ հօր եւ հոգւոյն որ ծագեաց զլոյս գիտութեան իւրոյ ի մեզ :

*Ցորդորակ*

Ցարեւելից յարեւմուտս մանկունք Սիօնի , օրհնեցէք միօտ անդադար զծագօղն լուսոյ :

Եկեղեցիք արդարոց եւ փառաբանիչք , բարեբանեցէք որ ետ զիմաստս լուսոյ :

---

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Ո՛վ բոլոր ազգեր ու ցեղեր , արեւելքէն մինչեւ արեւմուտք , հիւսիսէն և հարաւէն , Նոր օրհնութիւն-*

*նորով օրհնեցէք առաքեալներուն առաջինը, որ այսօր աշխարհի վրայ ծագեց արեւուն լոյսը:*

*Արդարներու (հաւատացեալներուն) ժողովներ, ամենասո՛ւրբ Երրորդութիւնը փառաբանողներ, այս լուսաւոր առաւօտուն գովեցէք խաղաղութեան առաւօտը՝ Քրիստոս, հայր Աստուծոյ եւ հոգի Աստուծոյ՝ հետ, որ մեր վրայ ծագեց իր գիտութեան լոյսը:*

### *Յորդորակ*

*Ո՛վ Սիօնի մանուկներ (քրիստոնէական եկեղեցիին զաւակները), միշտ եւ անդադար օրհնեցէք արեւելքէն մինչեւ արեւմուտք զայն որ լոյսը ծագեց:*

*Արդարներու ժողովներ, եւ փառաբանողներ, գովեցէք զայն որ լուսաւոր իմաստութիւնը տուաւ մեզի:*

---

Ճգնաւորք Աստուծոյ եւ ժառանգորդք երկնից արքայութեանն, որք փոխանակեալք զանցաւորս առիք զանանցն բարութիւնն, բարեխօսեցէք առ Տէր վասն մանկանց եկեղեցւոյ:

Նահատակք պանծալիք եւ սիրեցեալք ի յերկնաւոր հօրէն, որք միացեալք ընդ Քրիստոսի արեամբ ձեռով ի մահ խաչին, բարեխօ:

Մարտիրոսք ցանկալիք եւ օթեւանք հոգւոյն ճշմարտութեան, որք յաղթեցիք հոգւով կարեաց եւ ցանկութեան, բարե:

Գովելիք աշխարհի, եւ բաղձալիք վերնոցն պետութեանց, որք երանութեան մասին հասիք քան զամենայն որդիս մարդկան, բարեխօ:

Կամաւոր պատարագք, մանկունք տիօք եւ կատարեալք իմաստութեամբ, որք փոխանակ կաթին արբիք զգինին զմայլեցուցիչ, բարեխօ:

*Յորդորակ*

Ճգնաւորք ճշմարիտք վկայք Քրիստոսի բարեխօսեցէք առ տէր վասն անձանց մերոց:

Նահատակք կենդանիք, սիրողք Քրիստոսի, որք չարչարեցայք մարմնով վասն անուանն տեառն:

Մարտիրոսք ցանկալիք մարդկան ըղձալիք, հայցեցէք ի սուրբ հոգւոյն տալ մեզ զբարիս:

Գովելիք վկայից դասուց պարծանք աշխարհի, խնդրեցէք զխաղաղութիւն տալ եկեղեցւոյ:

Կամաւոր սուրբ պատարագք՝ հաստատուն մանկունք հայցեցէք լինել եւ մեզ՝ ձեզ պսակակից:

---

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Ո՛վ Աստուծոյ ճգնաւորներ, և երկնքի արքայութեան ժառանգորդներ, որ անցաւոր (աշխարհային) բարութիւններուն փոխանակեցիք անանցանելի (երկնային) բարութիւնները, ամէնքդ բարեխօսեցէք եկեղեցիին մանուկներուն (հաւատացեալներուն) համար:*

*Երկնաւոր հօրմէն սիրուած պանծալի նահատակներ, որ Քրիստոսի հետ խաչի մահով միացուեցաք ձեր արիւնով, ամէնքդ:*

*Ճշմարիտ սուրբ հոգիին բնակարան ցանկալի մար-*

*տիրոսներ, որ հոգւով յաղթեցիք աշխարհային կիրքերուն և ցանկութեան, տիրոջը։*

*Աշխարհ կը գովէ զձեզ, և վերին պետութիւնները (հրեշտակները) ձեզի կը ցանկան, որ բոլոր մարդոցմէ աւելի երանութեան հասաք, տիրոջը։*

*Ձեր անձերը զոհեցիք ձեր կամքով, հասակով մանուկ բայց իմաստութեամբ կատարեալ, կաթին տեղ զմայլեցնող գինին (մարտիրոսութիւնը) խմեցիք. տիրոջը։*

## *Յորդորակ*

*Ճշմարիտ ճգնաւորներ, Քրիստոսի վկաներ, մեր անձերուն համար բարեխօս եղիք տիրոջը քով։*

*Քրիստոսը սիրող կենդանի նահատակներ, որ տիրոջը անունին համար մարմինով չարչարուեցաք։*

*Ցանկալի մարտիրոսներ որոց կարօտ կը քաշեն մարդիկ, ՚խնդրեցէք որ սուրբ հոգին բարիքներ տայ մեզի։*

*Երկնային դասերը կը գովեն զձեզ, աշխարհ ձեզմով կը պարծի, խնդրեցէք որ տէրը խաղաղութիւն տայ եկեղեցիին։*

*Սրբութեամբ զոհեցիք ձեր անձերը՝ թէև հասակով մանուկ. խնդրեցէք որ մենք ալ պսակակից ըլլանք ձեզի։*

---

Լոյս արարիչ լուսոյ առաջին լոյս, բնակեալդ ի լոյս անմատոյց, հայր երկնաւոր, ի դասուց լուսեղինացն օրհնեալ, ի ծագել լուսոյ առաւօտուս ծագեա ի հոգիս մեր զլոյս քո իմանալի։

Լոյս ի լուսոյ ծագումն արեգական արդար, անճառ ծնունդ հօր որդի, յառաջ քան զարեւ անուն քո գովեալ ընդ հօր, ի ծագել լուսոյ առաւօտ:

Լոյս, ի հօրէ բղխումն աղբիւր բարութեան հոգիդ սուրբ Աստուծոյ, մանկունք եկեղեցւոյ ընդ հրեշտակս զքեզ բարեբանեն, ի ծագել լուսոյ:

Լոյս, երրեակ եւ մի անբաժանելի սուրբ երրորդութիւն, զքեզ ընդ երկնայնոցն երկրածինքս միշտ փառաւորեմք, ի ծագել լուսոյ առաւօտ:

### *Յորդորակ*

Անեղանելիդ Աստուած հայր ամենակալ, ընկալ զաղաչանս մեր քոց պաշտօնէից:

Ի հօրէ ծագումն անճառ արեգական արդար, ծագեա՛ ի յանձինս մեր զլոյսդ ողորմութեան:

Ի հօրէ բղխեալ հոգի աղբիւր բարութեան, լուսով քո լցո՛ զմեզ յայսմ առաւօտու:

Երեք անձինք եւ մի բնութիւն, մի աստուածութիւն, զքեզ խոստովանիմք յաւէտ սուրբ երրորդութիւն:

---

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Ո՛վ լոյս, երկնաւոր հայր, առաջին լոյսն ես դուն և անմատչելի լոյսի մէջ կը բնակիս, և լուսեղէն դասերը (հրեշտակները) կ'օրհնեն զքեզ. երբ ահա կը ծագի այս առաւօտեան լոյսը, քու բանաւոր լոյսդ ալ մեր հոգիներուն մէջ ծագէ՛:*

Լոյսէն ծագող լո՛յս, արդար արև, ո՛վ որդի, հայր Աստուծոյ անպատմելի ծնունդը, քու անսահման հայր Աստուծոյ հետ կը գովուիս արևէն ալ առաջ, երբ ասեմ :

Ո՛վ լոյս, Աստուծոյ սուրբ հոգին, բարութեան աղբիւր որ հօրմէն կը բղխիս, եկեղեցիին մանուկները հրեշտակներուն հետ կը գովեն զքեզ. երբ ասեմ :

Ո՛վ լոյս, սուրբ Երրորդութիւն, երեք անձ, այլ մէկ և անբաժանելի, երկրի վրայ ապրողներս երկնայիններուն հետ միշտ կը փառաւորենք զքեզ. երբ ասեմ :

## Յորդորակ

Ո՛վ Աստուած, որ մէկէ մը ստեղծուած չես, ամենակալ հայր, ընդունէ՛ մեր՝ քու պաշտօնեաներուդ աղաչանքները :

Հօրմէն ծագած ես անպատմելի կերպով, արդար արև, մեր անձերուն վրայ ծագէ՛ քու ողորմութեանդ լոյսը :

Ո՛վ հոգի, որ հօրմէն կը բղխիս և բարութեան աղբիւր ես, քու լուսովդ լեցուր զմեզ այս առաւօտ :

Երեք անձեր և մէկ բնութիւն, մէկ աստուածութիւն, ի սպառ կը դաւանինք զքեզ սուրբ Երրորդութիւն :

Ճանապարհ եւ ճշմարտութիւն եւ կեանք Քրիստոս, առաջնորդեա հոգւոց մերոց յերկրէ ելանել յերկինս:

Դուռն կենաց մեզ Յիսուս, մո՛յծ եւ զմեզ առ հայր քո եւ հոգի, երգել միշտ զփառս:

### Յորդորակ

Ճանապարհ բարի Քրիստոս եւ ճշմարտութիւն, առաջնորդեա հոգւոց մերոց յերկրէ յերկինս:

Դուռն կենաց մեզ Յիսուս, Աստուած ճշմարիտ, մո՛յծ եւ զմեզ առ հայր քո հոգւովդ սրբով:



## ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Ո՛վ Քրիստոս, փրկութեան ճամբան, ճշմարտութիւն և կեանք ես դուն, առաջնորդը եղիր մեր հոգիներուն երկրէն մինչեւ երկինք:*

*Ո՛վ Յիսուս, կեանքին մէջ մտնելու դուռն ես դուն, զմեզ ալ տար քու հօրդ և հոգիին, որպէս զի միշտ փառք երգենք:*

### Յորդորակ

*Ո՛վ Քրիստոս, բարի ճամբան և ճշմարտութիւնն ես, մեր հոգիներուն առաջնորդն ես երկրէն երկինք:*

*Ո՛վ Յիսուս, ճշմարիտ Աստուած, կեանքը մըտնելու դուռն ես դուն, զմեզ ալ տա՛ր քու հօրդ քու սուրբ հոգիով:*



# ԵՐԳ ԵՐԵԿՈՅԵԱՆ ԺԱՄՈՒ ԽԱՂԱՂԱԿԱՆԻՆ

ԲՁ Նայեա՛ց սիրով հայրդ գթած ի քո ստեղծեալ գործս ձեռաց, եւ զբանական հրեշտակաց տուր պահապան մեզ տկարացս, փրկեա զանձինս ի փորձանաց ի խաւարի շրջող դիւաց, զի ի տուընջեան եւ գիշերի տացուք քեզ փառս անլռելի:

Էին անեղ անսկզբան ծնունդ անճառ որդի եւ բան, որ արարեր զտիւ գործոյ եւ զգիշեր ի հանգիստ քնոյ, տուր ի ննջել աչաց մարմնոյ արթուն լինել մեզ ըստ հոգւոյ, զի:

Րաբունի հոգւոց բանաւորա՛ց աղբիւր լուսոյ բաշխող շնորհաց, ի փակել դրանց բնութեանց մարմնոց, լոյս տուր աչաց սրտից մերոց, ի գիշերաց առ քեզ կանխել ընդ հրեղինացն օրհնաբանել, զի:

Սուրբդ սրբոց երրորդութիւն, զմեզ մաքրեա քեզ բնակութիւն, շնորհեա ընդ մանկանցն առագաստի հանգչիլ ընդ քեզ ի յանկողնի, տուր զհացուած բարեկամին զփոխ երից նկանակին, զի:

Երեւելի լոյս ստեղծեր զտիւ եւ զգիշեր բաժանեցեր, ծագեա մեզ տէր ի գիշերի զճառագայթս իմանալի, տուր յամենայն ժամանակի զպահպանող աջ քո հովանի, զի ի տուընջեան:

Սիրոյ քո հուր արկեալ յերկիր բորբոքեսցի ի հոգիս մեր, զխորհուրդ սրտից մեր մաքրեսցէ, զլոյս գիտութեան քո փայլեսցէ, ի քնոյ մահու զմեզ զարթուսցէ, զմիտս բոցով քո վառեսցէ, զի:

Ի քեզ նայիմք լոյսդ անմատոյց ի զգայական ծած-

կեալ լուսոյ, որ վասն մեր եղար ի գքի եւ ննջեցեր ի տապանի, առ մեզ ննջեա արթուն բնութիւն հերքեա զչարին ներգործութիւն, զի:

Էիդ լուսոյ անստուերի պաղատանօք կամք առաջի, որ փակեալ դրամբք յերեկոյին երեւեցար մետատանին, ընդ Թոմայի առ քեզ գոչեմք տէր եւ Աստուած զքեզ դաւանեմք, եկ եւ առ քեզ յերեկոյիս եւ տուր զողջոյն քո ի հոգիս:

Րամեալքս զքեզ տէր աղաչեմք մեզ յօգնութիւն նայեա հայցեմք պահապանդ իսրայէլի անձանց մերոց լեր հովանի, օթեա՛ առ մեզ խաղաղարար եւ ննջեսցուք անխռովաբար, զի ընդ առաւօտս կանխեսցուք օրհնել զքեզ ընդ հօր հոգւով:

Գոչման փողոյն Գաբրիէլի որ ի վերջնումն գիշերի, լսել արա զմեզ արժանի եւ յաջակողմն օդեաց դասի, անշէջ վառեալ զլոյս լապտերաց ըստ իմաստուն հինգ կուսանաց, զի ընդ փեսայիդ ի յառագաստ հարսունք հոգւով մտցուք ի փառս:

Հալածեա՛ ի մէնջ տէր նշանաւ խաչի քո զընդդիմամարտ եւ ձանրեւոյթ գազանն, եւ մի՛ տար յապականութիւն զքո ժառանգութիւնն:

Բարեխօսեա վասն մեր աստուածածին Մարիամ, որ ծնար զտէր Աստուած որ հովուէրն զիսրայէլ ամենազօր եւ սքանչելի փառօքն իւրովք:

# ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Ո՛վ գթած հայր, սիրով նայէ՛ քու ձեռքովդ ստեղծածներուդ, և հրեշտակներուն բանակները պահպան ըրէ՛ մեզի պէս տկարներուն, փրկէ՛ մեր անձերը փորձանքներէ, մութին մէջ պտըտող սատանաներէն, որպէս զի գիշեր ցերեկ փառք տանք անդադար։*

*Անսկիզբ և անեղ Աստուծոյ անպատմելի ծնունդ, ո՛վ որդի և բանդ Աստուած, որ ցերեկը գործելու և գիշերը հանգիստ քնանալու համար ստեղծեցիր, երբ մարմինին աչքերը քնանան, տուր որ հոգիով արթուն ըլլանք, որպէս զի։*

*Դուն որ բանական հոգիներուն (մարդոց) վարդապետ ես, լոյսին աղբիւրն ես, շնորհք կը բաշխես, երբ նիւթական մարմիններուն դուռները (աչքերը) գոցուին, լոյս տուր մեր սրտերու աչքերուն, առաւօտները կանուխ քեզի գալ և հրեղէն հրեշտակներուն հետ օրհնել զքեզ, որպէս զի։*

*Սուրբերուն սուրբը, ո՛վ երրորդութիւն, մաքրէ՛ զմեզ իբրև բնակարան քեզի, շնորհ ըրէ՛ որ փեսաւեր մանուկներուն հետ քեզի հետ հանգչինք առկողինի մէջ. տուր մեր բարեկամին ուզածը՝ երեք նկանակին փոխը, որպէս զի։*

*Նիւթական երեւցած լոյսը ստեղծեցիր, ցերեկն ու գիշերը բաժնեցիր. ո՛վ տէր, գիշերուան մէջ ծագէ՛ մեր վրայ հոգեւոր ճառագայթները, ամէն ժամանակ մեր վրայ հովանի ըրէ՛ քու պահապան աջդ, որպէսզի։*

Երկրի վրայ նմանուած քու սիրոյդ կրակը Թո՛ղ բորբոքի մեր հոգիներուն մէջ, Թո՛ղ մաքրէ մեր սրտերուն խորհուրդը, Թո՛ղ փայլեցնէ քու գիտութեանդ լոյսը, մահուան քունէն Թո՛ղ արթնցնէ, մեր մեղքը Թո՛ղ վառի՛ քու բոցովդ, որպէս զի։

Ո՛վ անմատչելի լոյս, զգալի լոյսէն ծածկուած քեզի կը նայինք, որ մեզի համար գուբին մէջ զետեղուեցար և գերեզմանին մէջ քնացար. ո՛վ արթուն քնութիւն, մեր քով քնացիր, վանէ՛ չար սատանային ազդեցութիւնը, որպէս զի։

Պաղատանքով կեցած ենք քու առջեւդ որ անխաւար լոյսն ես, և իրիկունը՝ դռուներուն գոց ատենը՝ երեւցար տասնեւմէկ առաքեալներուն. Թովմայ առաքեալին հետ կ'աղաղակենք քեզի, կը դաւանինք զքեզ իբրև Տէր և իբրև Աստուած. մեր քով ալ իջիր այս իրիկուն, և մեր հոգիներուն տուր քու ողջոյնդ։

Ո՛վ Տէր, հոս հաւաքուողներս կ'աղաչենք քեզի որ մեզի նայիս և օգնես, հովանի եղիր մեզի որ իսրայէլի պահապանն ես. ո՛վ խաղաղարար, գիշերը մեր քով անցուր, որպէսզի անխռով քնանանք, և առաւօտուն արթննալով հայր Աստուծոյ հետ զքեզ օրհնենք հոգիով։

Արժանի ըրէ՛ զմեզ որ վերջին գիշերը լսենք Գաբրիէլի փողին ձայնը և ոչխարներուն (արդարներուն) աջակողմը կենանք, առանց մարելու վառենք լապտերներուն լոյսը իմաստուն հինգ կոյսերուն պէս, որպէս զի հոգիով հարս եղած քեզի՝ որ փեսան ես, առագաստի փառքին մէջ մտնենք։

Ո՛վ Տէր, քու խաչիդ նշանով հալածէ՛ անտեսանելի և հակառակորդ գազանը, և մի՛ փճացներ քու ժառանգներդ, զմեզ։

*Բարեխօսէ՛ մեզի համար, ո՛վ աստուածածին Մարիամ, որ մեր Աստուածը ծնար, որ իր ամենազօր և անքննելի փառքով Իսրայէլի հովիւն էր։*

---

գջ Ի քէն հայցեմք հայր գթութեանց եւ Աստուած մխիթարութեանց, ի տիրական գիշերային մերձեալ ժամուս, մխիթարեա զմեզ ի տրտմութեանց մերոց եւ ընձեռեա զուրախութիւն գործովք արդարութեան, աղաչանօք սուրբ աստուածածնին եւ ամենայն արդարոց:

Ըստ քաղցրագոյն աստուածային քո հրամանի կոչման որդի Աստուծոյ, եկեալ եմք առաջի քո յերեկոյիս աշխատեալք եւ ծանրաբեռնեալք, թեթեւացո ի ծանրութեանց մեղաց զանձինս, եւ զօրացո բառնալ կամաւ զքաղցր լուծ քոց պատուիրանաց, աղաչա:

Պաղատիմք առ քեզ հոգւով ի հանգստեան հասեալ ժամուս մարդասէր հոգի Աստուծոյ, յորժամ նորոգես զերեսս երկրի եւ վերստին ստանաս զոգիս մարդկան, նորափետուր զարդարեա զննջեցեալսն մեր զծնեալսն ի քէն սուրբ աւազանաւն, աղաչա:

Չկենդանագիր անճառս ծննդի քո արկանեմք առաջի անոխակալ տէրութեանդ քո, յորժամ գաս փառօք հօր դատել զբռնամին խաչի քո, ներեա յանցանաց մերոց բարեխօսութեամբ մօր քո եւ կուսի, աղաչեմք ըզ-զքեզ տէր պահպանեա զմեզ ընդ հովանեաւ խաչի քո սուրբ:

Հաղորդս արա եւ զմեզ տէր ընդ սրբոց քոց առաքելոցն, որք արժանի եղեն տեսանել զքեզ ի յարութեան քո, արժանաւորեա տէր տեսանել զքեզ ի միւսանգամ քո գալստեանն, օրհնութիւն առաքողին ի բարձունս:

Ի նստել քո յատենի դատաւոր անեղ աղաչանօք սուրբ աստուածածնին յիշեա զննջեցեալսն մեր, յորժամ գայցես անճառ փառօք, քանզի քո են փառք յաւիտեանս ամէն :

---

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Ո՛վ գթութեանց հայր և մխիթարութեանց Աստուած, կը խնդրենք քեզմէ մեղքի տրտմութիւններէն մխիթարէ՛ զմեզ երբ ահա կը մօտենայ գիշերային տըխուր ժամը, և արդարութեան գործերով ուրախութիւն տուր մեզի սուրբ Աստուածածնին և բոլոր արդարներուն աղաչանքով :*

*Ո՛վ Աստուածորդի, քու աստուածային ձայնիդ քաղցր հրամանին համեմատ՝ այս իրիկուն քու առջեւդ եկած ենք յոգնած և ծանր բեռներու տակ ընկճուած, մեր անձերը թեթեւցուր մեղքերու ծանրութիւններէն, և այժմ տուր. որ մեր ազատ կամքով կրենք քու պատուիրաններուդ լուծը, սուրբ աստուածած :*

*Ո՛վ մարդասէր հոգի Աստուծոյ, հոգիով կը պաղատինք քեզի այս հանգստեան ժամուն հասնելով, երբ նորոգես երկրի երեսը և դարձեալ ձեռք ձգես մարդոց հոգիները, նորոգէ և զարդարէ՛ մեր ննջեցեալները՝ որ քեզմէ ծնած են քու սուրբ աւազանովդ, սուրբ աստուածած :*

*Քու ներողամիտ տէրութեանդ առջև կը դնենք քու անարատ ծնողիդ (Մարիամու) պատկերը. երբ փառքովդ գաս դատելու քու խաչիդ թշնամին*

(սատանան), մեր յանցանքներուն ներէ՝ քու մօրդ եւ կոյսին բարեխօսութեամբ. կ՚աղաչենք քեզի, ո՛վ տէր, քու սուրբ խաչիդ հովանիին տակ պահպանէ զմեզ:

Ո՛վ տէր, մեզ ալ մասնակից ըրէ՝ քու սուրբ առաքեալներուդ հետ, որ արժանի եղան զքեզ տեսնելու յարութիւն առած ատենդ. արժանի ըրէ՛, ո՛վ տէր, զքեզ տեսնելու քու երկրորդ գալուդ (վերջին դատաստանին). օրհնեա՛լ ըլլայ երկինքի մէջ նա որ զքեզ աշխարհ ղրկեց:

Ո՛վ ահաւոր դատաւոր, երբ ատեանին մէջ նստիս, յիշէ՛ մեր ննջեցեալները սուրբ աստուածածնին աղաչանքով երբ գաս անպատմելի փառքով, որովհետեւ քեզի կը վերաբերի միշտ փառքը:



# ԿԱՆՈՆ ՀԱՄԲԱՐՁՄԱՆ ՔՐԻՍՏՈՍԻ

ԱՀ Համբարձաւ տէրն մեր յերկինս ասելով աշա-
ՐՅ կերտացն, նստարուք ի քաղաքիդ երուսաղէմ,
ԻՐ մինչեւ զգենուցուք զզօրութիւն ի բարձանց:

Միաբանեալ սուրբ առաքեալքն միախոհ եւ միակրօն, միաբան նստէին ի սուրբ վերնատանն, եւ ակն ունէին գալստեան սուրբ հոգւոյն:

Յանկարծակի եհաս ի նմանութիւն լուսոյ փայլման եւ եկեալ բնակեցաւ ի սուրբ առաքեալսն, մինչդեռ նստէին ի սուրբ վերնատունն:

Համբարձաւ տէրն մեր Քրիստոս օրհնութեամբ ընդ ամպս երկնից, եւ առաքելոցն երկրպագեալ դարձան յերուսաղէմ, միաբանութեամբ վերառաքէին զաղօթս:

Մտեալ ի յերկինս բիւրաւոր զօրօք բազմութեամբ հրեշտակաց, որք աղաղակէին եւ ասէին, օրհնեալ եկեալ ի յանունն տեառն:

Նստեալ ընդ աջմէ ծնողին կատարելով զխոստացեալ պարգեւսն, մխիթարիչ սուրբ հոգին գայ առ մեզ, աղբերացուցանել զմեծ զողորմութիւն:

Հ Օրհնեսցի պսակ քաղցրութեան քո տէր որ պա-
ՐԻ հեցեր զմեզ յերկրի, այսօր համբարձար փա-
ռօք յերկինս առ հայր հրեշտակաց դասուք, օրհնեալ տէր Աստուած հարցն մերոց:

Հիացան վերինքն ընդ մարդկային քո կերպ, հարցաքանեալք զԵսայեայն՝ ո՞վ է սա դիմեալ յերկրէ արիւնազգեստեալ, օրհ:

համբարձէք իշխանք զդրունս ձեր ի վեր եւ մտցէ թագաւոր փառաց:

Հիացան վերնականն իշխանութիւնքն եւ սոսկալի ձայնիւ աղաղակէին առ միմիանս, ո՛վ է սա թագաւոր փառաց եկեալ մարմնով եւ սքանչելի զօրութեամբ, համբարձ:

Եղանակէին վերնականն պետութիւնքն հրաշալի ձայնիւ երգէին երգ նոր ասելով՝ սա ինքն է թագաւոր փառաց փրկիչ աշխարհի եւ ազատիչ ազգի մարդկան, համբար:

ՀԲ Որք տնակից եղաք նմանութեան մահու քո որ-
ՏՅ դի Աստուծոյ, արժանաւորեա զմեզ կերպարանակից լինել քեզ փառաց թագաւոր, քեզ երգեսցեն եկեղեցիք սրբոցն զերգս հոգեւորս:

Զհին մարդն խաչակից քեզ արարեր եւ զխայթոց մեղացն շիջուցեր, ազատեցեր զմեզ կենարար փայտիւն յորում մածար, եւ շիթք արեան քո արբուցին զտիեզերս, քեզ երգես:

Վասն գթութեանդ քո աստուածային մարդեղութեանդ հաւասարեցեր զմեզ մարմնոյ քո եւ արեան, պատարագաւդ հօր ի հոտ անուշից զմարմինդ առ ի մէնջ, եւ համբարձար լուսափայլ ամպօք, յայտնեցար իշխանութեանց եւ պետութեանց՝ որք հիացեալ հարցանէին եթէ այս ո՛վ է որ դիմեալ գայ յԵդովմայ, եւ յեկեղեցւոյ քո ուսան զբազմապատիկ զիմաստութիւնս քո, քեզ:

*Բարեխօսէ՛ մեզի համար, ո՛վ աստուածածին Մարիամ, որ դուն Աստուածը ծնար, որ իր ամենազօր եւ սքանչելի փառքով Իսրայէլի հովիւն էր.*

---

գձ Ի քէն հայցեմք հայր գթութեանց եւ Աստուած մխիթարութեանց, ի տխրական գիշերային մերձեալ ժամուս, մխիթարեա զմեզ ի տրտմութեանց մեղաց եւ շ-նորհեա զուրախութիւն գործովք արդարութեան, աղաչանօք սուրբ աստուածածնին եւ ամենայն արդարոց:

Ըստ քաղցրագոյն աստուածային քո հրամանի կոչման որդի Աստուծոյ, եկեալ եմք առաջի քո յերեկոյիս աշխատեալք եւ ծանրաբեռնեալք, թեթեւացո ի ծանրութեանց մեղաց զանձինս, եւ զօրացո բառնալ կամաւ զքաղցր լուծ քոց պատուիրանաց, աղաչա:

Պաղատիմք առ քեզ հոգւով ի հանգստեան հասեալ ժամուս մարդասէր հոգի Աստուծոյ, յորժամ նորոգես զերեսս երկրի եւ վերստին ստանաս զոգիս մարդկան, նորափետուր զարդարեա զննջեցեալսն մեր զծնեալսն ի քէն սուրբ աւազանաւն, աղաչա:

Զկենդանագիր անարատ ծննդի քո արկանեմք առաջի անոխակալ տէրութեանդ քո, յորժամ գաս փառօք հօր դատել զթշնամին խաչի քո, ներեա յանցանաց մերոց բարեխօսութեամբ մօր քո եւ կուսի, աղաչեմք ըզ-զքեզ տէր պահպանեա զմեզ ընդ հովանեաւ խաչի քո սուրբ:

Հաղորդս արա եւ զմեզ տէր ընդ սրբոց քոց առաքելոցն, որք արժանի եղեն տեսանել զքեզ ի յարութեան քո, արժանաւորեա տէր տեսանել զքեզ ի միւսանգամ քո գալստեանն, օրհնութիւն առաքողին ի բարձունս:

Ի նստել Քո յատենի դատաւոր անեղ աղաչանօք սուրբ աստուածածնին յիշեա զննջեցեալսն մեր, յորժամ գայցես անճառ փառօք, քանզի Քո են փառք յաւիտեանս ամէն :

# ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Ո՛վ գթութեանց հայր և մխիթարութեանց Աստուած, կը խնդրենք քեզմէ մեղքի տրտմութիւններէն մխիթարէ՛ զմեզ երբ ահա կը մօտենայ գիշերային տըխուր ժամը, և արդարութեան գործերով ուրախութիւն տուր մեզի սուրբ Աստուածածնին և բոլոր արդարներուն աղաչանքով :*

*Ո՛վ Աստուածորդի, քու աստուածային ձայնիդ քաղցր հրամանին համեմատ՝ այս իրիկուն քու առջևդ եկած ենք յոգնած և ծանր բեռներու տակ ընկճուած, մեր անձերը թեթեւցուր մեղքերու ծանրութիւններէն, և ուժ տուր. որ մեր ազատ կամքով կրենք քու պատուիրաններուդ լուծը, սուրբ աստուածած :*

*Ո՛վ մարդասէր հոգի Աստուծոյ, հոգիով կը պաղատինք քեզի այս հանգստեան ժամուն համնելով, երբ նորոգես երկրի երեսը և դարձեալ ձեռք ձգես մարդոց հոգիները, նորոգէ և զարդարէ՛ մեր ննջեցեալները՝ որ քեզմէ ծնած են քու սուրբ աւազանովդ, սուրբ աստուածած :*

*Քու ներողամիտ տէրութեանդ առջև կը դնենք քու անարատ ծնողիդ (Մարիամու) պատկերը. երբ փառքովդ գաս դատելու քու խաչիդ թշնամին*

(սատանան), մեր յանցանքներուն ներէ՛ քու մօրդ և կոյսին բարեխօսութեամբ. կ'աղաչենք քեզի, ո՛վ տէր, քու սուրբ խաչիդ հովանիին տակ պահպանէ զմեզ։

Ո՛վ տէր, մեզ ալ մասնակից ըրէ՛ քու սուրբ առաքեալներուդ հետ, որ արժանի եղան զքեզ տեսնելու յարութիւն առած ատենդ. արժանի ըրէ՛, ո՛վ տէր, զքեզ տեսնելու քու երկրորդ գալուդ (վերջին դատաստանին). օրհնեա՛լ ըլլայ երկնքի մէջ նա որ զքեզ աշխարհ ղրկեց։

Ո՛վ ահաւոր դատաւոր, երբ ատեանին մէջ նստիս, յիշէ՛ մեր ննջեցեալները սուրբ աստուածածնին աղաչանքով երբ գաս անպատմելի փառքով, որովհետև քեզի կը վերաբերի միշտ փառքը։



# ԿԱՆՈՆ ՀԱՄԲԱՐՁՄԱՆ ՔՐԻՍՏՈՍԻ

ԱՀ Համբարձաւ տէրն մեր յերկինս ասելով աշա-
ՐՅ կերտացն, նստարուք ի քաղաքիդ Երուսաղէմ,
ԿՐ մինչեւ զգենուցուք զզօրութիւն ի բարձանց :

Միաբանեալ սուրբ առաքեալքն միախոհ եւ միակրօն, միաբան նստէին ի սուրբ վերնատանն, եւ ակն ունէին գալստեան սուրբ հոգւոյն :

Ցանկարծակի եհաս ի նմանութիւն լուսոյ փայլման եւ եկեալ բնակեցաւ ի սուրբ առաքեալսն, մինչդեռ նստէին ի սուրբ վերնատունն :

Համբարձաւ տէրն մեր Քրիստոս օրհնութեամբ ընդ ամպս երկնից, եւ առաքելոցն երկրպագեալ դարձան յԵրուսաղէմ, միաբանութեամբ վերառաքէին զաղօթս :

Մտեալ ի յերկինս բիւրաւոր զօրօք բազմութեամբ հրեշտակաց, որք աղաղակէին եւ ասէին, օրհնեալ եկեալ ի յանուանն տեառն :

Նստեալ ընդ աջմէ ծնողին կատարելով զխոստացեալ պարգեւսն, մխիթարիչ սուրբ հոգին գայ առ ձեզ, աղբերացուցանել զմեծ զողորմութիւն :

Հ Օրհնեսցի պսակ քաղցրութեան քո տէր որ պա-
ՐԷ հեցեր զմեզ յերկրի, այսօր համբարձար փա-
ռօք յերկինս առ հայր հրեշտակաց դասուք, օրհնեալ տէր Աստուած հարցն մերոց :

Հիացան վերինքն ընդ մարդկայինն քո կերպ, հարցաքանեալք զնսայեայն՝ ո՛վ է սա դիմեալ յերկիրէ արիւնազգեստեալ, օրհ :

Երգէին հրեշտակքն զդաւթեան առածն առ բարապանս դրանց երկնից, ասեն՝ համբարձէք իշխանք ըզդրունս ձեր ի վեր եւ մտցէ արքայ., օրհ:

Գ Զտէր օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան:

Որ ելն ի կառս իւր եւ ընկենաց զիշխանն մահու:

Որ եդ յամպս զգնացս իւր եւ վերասլացաւ առ հայր ի յերկինս, օրհ:

Որ նստի ընդ աջմէ հօր հաւասար սուրբ հոգւոյն, օրհնեա:

Ո Որ ողորմութեամբ քո հիմնեցեր զաշխարհս, եւ իջեալ փրկեցեր ի յանիծիցն Ադամայ, այսօր համբարձար փառօք յերկինս տէր ողորմեա մեզ Աստուած:

Որ ելեր ի բարձրադիտակ քառաթեւին առնելով զհեծելութիւն փրկութեան, այսօր:

Որ երեքօրեայ թաղմամբ քով դասապարտեցեր զդաւաճանող վիշապն, այսօր:

Տ Իշխանութիւնք երկնից զարհուրեցան տեսանելով զելս քո Քրիստոս, ընկեր առ ընկեր սարսեալ ասէին՝ ո՞վ է սա թագաւոր փառաց:

Սա է մարմնացեալ բանն Աստուած որ ի խաչին զմեղս սպան, եւ վերացեալ փառօք գայ յերկինս տէր հզօր զօրութեամբ իւրով:

Սա է որ ի գերեզմանէն յարեաւ եւ աւերեաց ըզդժոխս, եւ վեր համբարձեալ փառօք գայ առ հայր՝ տէր կարող ի պատերազմի:

ՃՇ Որ համբարձաւն այսօր աստուածային իշխա-
–Ջ նութեամբ ի հայրական ի կառս սպասաւորելով ի հրեշտակական դասուցն որք նուագէին ասելով՝

համբարձէք իշխանք զդրունս ձեր ի վեր եւ մտցէ թագաւոր փառաց :

Հիացան վերնականն իշխանութիւնքն եւ սոսկալի ձայնիւ աղաղակէին առ միմիանս, ո՛վ է սա թագաւոր փառաց եկեալ մարմնով եւ սքանչելի զօրութեամբ, համբարձ :

Եղանակէին վերնականն պետութիւնքն հրաշալի ձայնիւ երգէին երգ նոր ասելով՝ սա ինքն է թագաւոր փառաց փրկիչ աշխարհի եւ ազատիչ ազգի մարդկան, համբար :

Հբ Որք տնակից եղաք նմանութեան մահու քո որ-
տձ դի Աստուծոյ, արժանաւորեա զմեզ կերպարանակից լինել քեզ փառաց թագաւոր, քեզ երգեսցեն եկեղեցիք սրբոցն զերգս հոգեւորս :

Զհին մարդն խաչակից քեզ արարեր եւ զխայթոց մեղացն շիջուցեր, ազատեցեր զմեզ կենարար փայտիւն յորում մածար, եւ շիթք արեան քո արբուցին զտիեզերս, քեզ երգեն :

Վասն գթութեանդ քո աստուածային մարդեղութեանդ հաւասարեցեր զմեզ մարմնոյ քո եւ արեան, պատարագաւդ հօր ի հոտ անուշից զմարմինդ առ ի մէնջ, եւ համբարձար լուսափայլ ամպօք, յայտնեցար իշխանութեանց եւ պետութեանց՝ որք հիացեալ հարցանէին եթէ այս ո՛վ է որ դիմեալ գայ յԵդովմայ, եւ յեկեղեցւոյ քո ուսան զբազմապատիկ զիմաստութիւնս քո, քեզ :

# ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

Մեր տէրը երկինք համբարձաւ՝ աշակերտներուն ըսելով՝ նստեցէք Երուսաղէմ քաղաքին մէջ, մինչև որ բարձունքէն ընդունիք զօրութիւնը ։

Սուրբ առաքեալները մէկ խորհուրդով և մէկ կրօնքով միաբան կը նստէին սուրբ վերնատունին մէջ, և սուրբ հոգիին գալուն կ՚սպասէին ։

Յանկարծ հնչաւ պայծառ լոյսի նման և բնակեցաւ սուրբ առաքեալներուն մէջ, երբ սուրբ վերնատան մէջ կը նստէին ։

Մեր տէրը Քրիստոս օրհնութեամբ համբարձաւ երկնից ամպերուն մէջէն, և առաքեալները երկրպագութիւն ընելով Երուսաղէմ դարձան, և միաբերան աղօթքներ կ՚ուղղէին դէպ ի երկինք ։

Երկինք մտաւ հրեշտակներու բիւրաւոր զօրքերով որք բարձրաձայն կ՚ըսէին՝ օրհնեա՜լ ըլլայ այն որ տիրոջը անունով կուգայ ։

Ծնողին (հայր Աստուծոյ) աջ կողմը նստաւ կատարելով իր խոստացած պարգևը թէ՝ մխիթարիչ սուրբ հոգին պիտի գայ ձեզի, մեծ ողորմութիւնը աղբիւրի պէս հոսեցնելու համար ։

Հ Ո՛վ տէր, օրհնեալ ըլլայ քու քաղցր գործիդ կատարումը, որ երկրի վրայ պահեցիր զմեզ, այսօր հրեշտակներու դասերուն հետ փառքով երկինք համբարձար հայր Աստուծոյ քով. օրհնեալ ես, ո՛վ մեր հայրերուն տէր Աստուածը ։

Վերնաբնակները ապշեցան քու մարդկային կեր-

պարանքիդ վրայ, և իրարու կը հարցնէին Եսայիին ը-սածը թէ՝ ո՞վ է ասիկա որ արիւնի պէս կարմիր ըզ-գեստներ հագած կուգայ երկրէն, օրհ։

Հրեշտակները կ'երգէին Դաւիթին խօսքը երկնքի դռնապաններուն, կ'ըսեն՝ ո՛վ իշխաններ, ձեր դռու-ները վեր վերցուցէք և թագաւորը (Քրիստոս) թո՛ղ մտնէ, օրհ։

Օրհնեցէք տէրը և ի սպառ փառաւորեցէք զայն։

Որ իր կառքին (հրեշտակներուն) վրայ հեծաւ և ընկճեց մահուան իշխանը (սատանան), օրհ։

Որ ամպերուն վրայէն քալեց և երկինք թռաւ հօ-րը, օրհ։

Որ հայր Աստուծոյ աջ կողմը կը նստի սուրբ հո-գիին հաւասար, օրհ։

Ո Քու ողորմութեամբդ աշխարհը հաստատեցիր, և իջնելով փրկեցիր Ադամին անէծքէն, այսօր փառ-քով երկինք համբարձար, տէ՛ր ողորմէ մեզի։

Որ բարձրահայեաց քառաթեւին (խաչին) վրայ ելար, փրկութեան գործիք ընելով զայն, այսօր։

Որ երեք օր թաղուելով դատապարտեցիր դաւա-ճան վիշապը (սատանան), այսօր։

Տ Երկնքի իշխանութիւնները սարսափեցան տես-նելով քու հոն ելնելդ, ո՛վ Քրիստոս, սարսափահար կ'ըսէին իրարու, ո՞վ է այս փառաւոր թագաւորը։

Սա է մարմին առնող բանն Աստուածը որ խաչին վրայ մեղքը սպաննեց, և իր զօրութեամբ հզօր տէրը փառքով երկինք կուգայ։

Սա է որ գերեզմանէն յարութիւն առաւ և դը-ժոխքը քանդեց, և պատերազմի մէջ կարող տէրը փառքով կուգայ հօրը քով։

ՃԶ Այսօր աստուածային իշխանութեամբ հայրական կառքին վրայ հեծաւ, հրեշտակները կը ծառայեն, և երգելով կ'ըսեն, ո՛վ իշխաններ, վեր վերցուցէք ձեր դուռները և թո՛ղ մտնէ փառաւոր թագաւորը (Քրիստոս):

Վերին իշխանութիւնները ապշեցան և անհուելի ձայնով կ'աղաղակէին իրարու, ո՛վ է այս փառաւոր թագաւորը որ մարմինով և սքանչելի զօրութեամբ կուգայ. ո՛վ իշխ.

Վերին պետութիւնները հրաշալի ձայնով կ'երգէին նոր երգ մը՝ ըսելով, ահիկա նոյն ինքն փառաւոր Թագաւորն է, աշխարհի փրկիչ և մարդկային ազգին հոգեւոր ազատարարը, ո՛վ իշխ:

ՀԲ Ո՛վ որդի Աստուծոյ, մենք որ քեզի պէս մեռանք (մեղքերուն համար), ո՛վ փառաւոր Թագաւոր, արժանի ըրէ նաև քու կերպարանքդ հագնիլ. սուրբերուն ժողովները հոգեւոր երգեր պիտի երգեն քեզ:

Հին մարդը (մեղանչող մարդկութիւնը) քեզի հետ խաչեցիր և մարեցիր մեղքին խայթոցը, ազատեցիր ըզմեզ կենարար փայտովը որուն վրայ կառչեցար, և քու արեան կաթիլները տիեզերքը ոռոգեցին. սուրբե:

Քու աստուածային մարդեղութեանդ գթութեամբ հաղորդեցիր զմեզ քու մարմինիդ և արիւնիդ, մեզմէ առած մարմինդ հայր Աստուծոյ զոհեցիր անոյշ հոտերով և լուսափայլ ամպերով համբարձար, յայտնըւեցար երկնային իշխանութիւններուն և պետութիւններուն, որք զարմանքով կը հարցնէին թէ՝ ո՞վ է ահիկա որ Եդովմէն (հեթանոս, կռապաշտ աշխարհէն) կուգայ, և քու եկեղեցիէդ սովրեցան քու բազում իմաստութիւններդ. սուրբերուն:



# ԿԱՆՈՆ ՍՐԲՈՅ ՊԵՆՏԵԿՈՍՏԷԻՆ
## (ՀՈԳԵԳԱԼՍՏԵԱՆ)

---

ԱՀ Առաքելոյ աղաւնոյ իջանելով մեծաձայն
ՏՁ հնչմամբ ի բարձանց, ի նմանութիւն լուսոյ փայլման հրազինեաց անկիզելի զաշակերտսն, մինչդեռ նստէին ի սուրբ վերնատանն :

Աննիւթական աղաւնի, անքննելի որ քննէ զխորս Աստուծոյ, զոր առեալ ի հօրէ պատմէ զահաւոր եւ ըզ-միւսանգամ գալուստն, զոր քարոզեցին համագոյական :

Օրհնութիւն ի բարձունս եղողին ի հօրէ հոգւոյն սրբոյ, որով առաքեալքն արբեցան անմահական բաժակաւն, եւ հրաւիրեցին զերկիրս ի յերկինս :

Կենդանարար Աստուած մարդասէր հոգի, զժողովեալսն միաբանական սիրով լուսաւորեցեր հրեղինօք լեզուօք, վասն որոյ եւ մեք այսօր տօնեմք զգալուստ քո սուրբ :

Զուարճացան քո գալստեամբն սուրբ առաքեալքն, կոչելով ի միասին զցրուեալսն ի միմեանց բազմաձայն լեզուօք, վասն :

Հոգեւորական սուրբ մկրտութեամբ զարդարեցեր նոքօք զտիեզերս ի զգեստս լուսափայլս եւ նորափետուրս, վասն որոյ :

ԲԿ Երրորդութիւն անբաժանելի եւ զօրութիւն երկնային լոյս ծագեալ յաշխարհ, նմա հանցուք զօրհնութիւնս երգով :

Որ էջն յերկնից այսօր եւ հանգեաւ յառաքեալսն ճեմարիս սուրբ հոգին, նմա :

Որ ի խորհուրդս փրկականս այսօր ընդ իջանել յառաքելոյն ծանուցաւ մարգարէին , նմա :

Հ Զհոգւոյն զգալուստն տօնեմք որ միաբանեաց

-Ձ զառաքեալսն հանգչելով ի նոսա հրեղէն լեզուօք , օրհնեալ յաւիտեանս :

Զերեւումն հոգւոյն տօնեմք վերաբերեալ Աստուած խոստովանիմք նորոգող եւ կենդանարար , օրհ :

Այսօր ուրախացեալք հոգւովն խոստովանիմք Աստուած զհոգին սուրբ բաշխումն եւ լցուցիչ զամենայն , օրհ :

Գ Զսէր օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեանս :

Զելողն ի հօրէ զէակից որդւոյն , սուրբ զհոգին օրհնե :

Զեկեալն այսօր Աստուած հրեղինօք լեզուօք , առ քանն ընտրութեան օրհնե :

Մ Այսօր նոր ժողովուրդք ցնծացէք ընդ գալուստ հոգւոյն սրբոյ , մեծացուցանելով զելօղն ի հօրէ :

Այսօր ցնծան առաքեալքն զարդարեալք ի շնորհաց հոգւոյն սրբոյ մեծացու :

Այսօր զուարճացան արարածք հօմարիս գալստեամբ հոգւոյն սրբոյ , մեծացու :

Ո Որ յամենայնի ես աստուածութիւն , եւ ի ձայն հնչման իջեր յերկնից սուրբ հոգի , ողորմեա մեզ :

Որ զամենայն լնուս զօրութեամբ քով , եւ ի դասս առաքելոցն իջեր բնակել սուրբ հոգի , ողորմ :

Որ անբաժանելի ես յաստուածութեան եւ ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսն սուրբ հոգի , ողորմ :

Տ Որ ի քրոբէական կառս հանգչիս այսօր իջեր յերկնից ի դասս առաքելոցն սուրբ հոգի, օրհնեալ ես թագաւոր անմահ:

Որ գնաս ի վերայ թեւոց հողմոց, այսօր ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեաւ յառաքեալսն սուրբ հոգի, օրհն:

Որ խնամես տեսչութեամբ զքո զարարածս, այսօր եկիր ի հաստատել զեկեղեցի քո սուրբ հոգի, օրհ:

Տ Ժողովեալ ընտրելոց մետասանիցն, սպասեալ մնային աւետեացն հօր հաւատով ի վերնատանն:

Սուրբ հոգին երեւեալ սրբոցն լցոյց խնդութեամբ սուրբ զառաքեալսն հաւատով ի վերնատանն:

Ո՛ք արբին զհուրն կենդանի եւ ընթացեալք արբուցին տիեզերաց, որք արբինն կենդանացան:

ՁԸ Որ ի հարաօարծ ի յաղբերէն յառաջ բղխեալ
ԲՅ անհատաբար ի յորդւոյ տիրապէս սուրբ հոգին այսօր ի յերկնից սաստիկ հեղեալ ի դասս առաքելոցն լցուցիչ բոլորից, զնա օրհնեսցուք երկրպագելով:

Որ յանսկիզբն եւ ի միօս ի յէէն նոյնագոյ բնութեամբ, անորիօ բաժանմամբ ի յորդւոյ արարչակից սուրբ հոգին այսօր հրով բաժանեալ լեզուս քարոզիցն, ի լոյս ածեալ զազգս մարդկան բաժանմամբ պէս պէս շնորհաց, զնա:

Որ ի վերայ ջուրցն գոլով գոյացոյց զարարածս, անանջրպետն ի հրոյ եւ յորդւոյ իշխանակից սուրբ հոգին այսօր վերածնեաց զազգս ամենայն, ջրոյ կենդանւոյ բղխեալ յերուսաղէմ, զնա:

# ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

Դրկուած աղաւնին (սուրբ հոգին) բարձրաձայն հնչումով երկինքէն իջաւ, և պայծառ լոյսի նման կըրակով զինեց աշակերտները առանց այրելու զանոնք, երբ սուրբ վերնատունին մէջ նստած էին։

Աննիւթ աղաւնի և անքննելի, որ կը քննէ Աստուծոյ խորին խորհուրդները, և հայր Աստուծմէ առնելով կը պատմէ Քրիստոսի անհաւատ և երկրորդ գալուստը, առաքեալները քարոզեցին թէ սուրբ հոգին ալ համագոյակից է հայր Աստուծոյ և որդի Աստուծոյ հետ։

Օրհնեալ ըլլայ բարձունքին մէջ սուրբ հոգին որ հայր Աստուծմէ կը բղխի, որուն միջոցաւ առաքեալները գինովցան անմահական բաժակով, և երկրի բընակիչները երկինք հրաւիրեցին։

Ո՛վ մարդասէր հոգի Աստուած, որ կեանք կուտաս, հրեղէն լեզուներով լուսաւորեցիր զանոնք որ միաբանական սիրով հաւաքուած էին, ուստի մենք ալ այսօր կը տօնենք քու սուրբ գալուստդ։

Սուրբ առաքեալները ուրախացան քու գալուդ վրայ, և զանազան տարբեր լեզուներով իրարմէ բաժնուածները ի մի կոչեցին, ուս։

Անոնց (առաքեալներուն) միջոցաւ հոգեւոր և սուրբ մկրտութեամբ ամբողջ աշխարհը զարդարեցիր լուսափայլ և նորափետուր զգեստներով, ուստի։

Անբաժանելի երրորդութիւնը և երկնային զօրութիւնը լոյս ծագեցաւ աշխարհի վրայ, օրհնենք զանիկա երգերով։

Ճշմարիտ սուրբ հոգին այսօր երկինքէն իջաւ և առաքեալներուն վրայ հանգչեցաւ, օրհ ։

Մարգարէն կանուխ գուշակեց փրկութեան խորհուրդով առաքեալներուն վրայ անոր իջնելը, օրհ ։

Հ Կը տօնախմբենք սուրբ հոգիին գալուստը, որ առաքեալները մխիթարեց հրեղէն լեզուներով անոնց վրայ հանգչելով, ի սպառ կ'օրհնենք զայն ։

Կը տօնախմբենք սուրբ հոգիին երեւիլը, աւելցընելով թէ կը դաւանինք զայն իբրև նորոգող և կենդանարար Աստուած, ի սպառ ։

Այսօր հոգիով ուրախացած՝ իբրև Աստուած կը դաւանինք սուրբ հոգին, որ կը բղխի և կը լեցնէ զամէնքը, ի սպառ ։

Օրհնեցէք տէրը և ի սպառ փառաւորեցէք զայն ։

Սուրբ հոգին որ հօրմէ կ'ելնէ, և որդի Աստուծոյ հետ նոյն էութիւնը ունի, օրհ ։

Այսօր իբրև Աստուած եկաւ հրեղէն լեզուներով ընտրելու համար քրիստոնէական վարդապետութիւնը, օրհ ։

Ս Ով նոր (քրիստոնեայ) ժողովուրդներ, այսօր հրճուեցէք սուրբ հոգիին գալուն վրայ, փառաւորելով զայն, որ հայր Աստուծմէն կ'ելնէ ։

Այսօր առաքեալները կը հրճուին, սուրբ հոգիին շնորհներով զարդարուած, փառաւորե ։

Այսօր արարածները ուրախացան սուրբ հոգիին իրապէս գալուն վրայ, փառաւորե ։

Ո Ո՛վ սուրբ հոգի, որ ամէն բանի մէջ Աստուած ես, և բարձրաձայն իջար երկինքէն, ողորմէ՛ մեզի ։

*Որ ամէն բան կը լեցնես քու զօրութեամբդ, և վար իջար բնակելու առաքեալներու դասին վրայ, ողորմ։*

*Ո՛վ սուրբ հոգի, որ աստուածութեան մէջ անբաժանելի ես (հայր Աստուծմէն և որդի Աստուծմէն), և հրեղէն լեզուներու բաժնուելով առաքեալներուն վրայ հանգչեցար, ողորմ։*

Ց *Ո՛վ սուրբ հոգի, որ քերոբէներէ ձևացած քու կառքիդ վրայ կը հանգչիս, այսօր երկինքէն իջար առաքեալներու դասին վրայ, օրհնեալ ըլլաս, ո՛վ անմահ թագաւոր։*

*Ո՛վ սուրբ հոգի, որ հովերու թևերուն վրայ կը քալես, այսօր առաքեալներուն վրայ հանգչեցար հրեղէն լեզուներու բաժնուելով, օրհ։*

*Ո՛վ սուրբ հոգի, որ հովերու թևերուն վրայ կը քալես, այսօր առաքեալներուն վրայ հանգչեցար հրեղէն լեզուներու բաժնուելով, օրհ։*

*Ո՛վ սուրբ հոգի, որ կը նախախնամես քու արարածներդ, այսօր եկար հաստատելու քու եկեղեցիդ, օրհ։*

Տ *Ընտրեալ տասնեւմէկ առաքեալները հաւաքուելով, վերնատունին մէջ հաւատքով կ'սպասէին հայր Աստուծոյ խոստումին։*

*Սուրբ հոգին սուրբերուն երեւելով, ուրախութեամբ և հաւատքով լեցուց սուրբ առաքեալները վերնատունին մէջ։*

*Որ կենդանի կրակը խմեցին, և փութացին ամբողջ աշխարհի ալ խմցնել. խմողները կեանք առին։*

ՑՇ *Այսօր սուրբ հոգին, որ հայր Աստուծմէ չար-*

ժամ աղբիւրէն կը բղխի իսկապէս և որդիէն չի բաժանուիր, սաստիկ ձայնով երկինքէն Թափեցաւ առաքեալներու դասին վրայ և զամէնքը լեցուց. օրհնենք զայն երկրպագութեամբ։

Այսօր սուրբ հոգին, որ կ'ելնէ անսկիզբ և մշտագոյ հայր Աստուածմէն, նո՛յն բնութեամբ, և որդի Աստուածմէն կը բաժնուի առանց տարբերութեան, կրակով կը բաժնէ քարոզիչներուն (առաքեալներուն) լեզուները, և մարդկային ազգը կը լուսաւորէ զանազան շնորհներ բաշխելով, օրհ։

Այսօր սուրբ հոգին, որ (աշխարհի սկզբնաւորութեան ատեն) ջուրերուն վրայ ըլլալով արարածները ստեղծեց, որդի Աստուածմէ և հայր Աստուածմէ անբաժան է, անոնց հետ նոյն իշխանութիւնը ունի, նորէն ծնունդ տուաւ բոլոր ազգերուն, կենդանի ջուր բղխելով Երուսաղէմի մէջ, օրհ։



# ԿԱՆՈՆ ԵՐԿՐՈՐԴԻ ԱՒՈՒՐՆ

Աչ Նոյն եւ նման հօր եւ որդւոյ հոգիդ ամեղ
Բձ եւ համագոյ, բղխումն հօր անքննաբար առօղ
Ձե հոգւոյ անճառաբար, ի վերնատունն այսօր իջեր զհոգիդ շնորհաց քոց արբուցեր, արբո՛ եւ մեզ ողորմութեամբ ի բաժակէդ իմաստութեան:

Էից ստեղծող արարածոց որ շրջէիր ի վերայ ջրոց, նոյն եւ ի ջուրսն աւազանին ի շնորհել մեզ քում էակցին, զգուես սիրով աղաւնակերպ զմարդիկ ծնանիս աստուածակերպ, արբո՛:

Ռաբունի վերնոցն իմանալեաց եւ ստորին այսր ըզգալեաց, որ մարգարէս տաս ի հովուաց եւ առաքեալս ի ձկնորսաց, աւետաւոր զմաքսաւորս քարոզ բանին քում զհալածողս, արբո:

Սարսափելի հողմոյ նման ահեղագոչ սաստիկ հընչմամբ երեւեցար ի վերնատանն ճոգիդ դասուն երկոտասանն, որք առ ի քէն մկրտեցան որպէս զոսկի հրով մաքրեցան, մաքրեա ի մէնջ զմէգ մեղաց եւ զգեցո զլոյս փառաց:

Էկիր յերկիր աստուածաբար դատել զաշխարհս իշխանաբար, ընդ արդարութեան եւ ընդ մեղաց եւ ընդ չարին դատաստանաց, բացեր զգանձդ անհիւթական պարգեւս ետուր որդւոց մարդկան, մաքր:

Սէրն ի սիրոյ զսէրդ առաքեաց յինքն զանդամս իւր քեւ յօդեաց, զեկեղեցի իւր զոր շինեաց եօթն սեամբ քո հաստատեաց, տնտես ի նմա եդ զառաքեալսն եօթնեակ շնորհօք քո զարդարեաց, մաքր:

Հ Որ անհմանալիդ ես յէութեան եւ անպատում
Վ հոգիդ ճշմարիտ, անսկզբնաբար բղխումն ի Հօրէ, եւ համագոյակից որդւոյն միածնի. օրհնեմք զքեզ Աստուած հարցն մերոց:

Որ կատարեալ անձնաւորութեամբ յերից կատարելոց մի եւ նոյն բնութիւն, որով ընդ Հօր եւ ընդ որդւոյ միշտ երկրպագիս յարարածոց հոգի Աստուծոյ, օրհ:

Որ համապատիւ Հօր եւ որդւոյ քարոզեցին զքեզ աստուածաբանքն եկեղեցւոյ, յոր մկրտիմք եւ դաւանիմք համագոյ երրորդութիւն անբաժանելի, օրհ:

Գ Զտէր օրհնեցէք բարձր արարէք զբաշխօղն շնորհաց:

Եկայք նոր արարածք ի Քրիստոս նորածնեալք աւազանաւն ի հոգւոյն սրբոյ, բարձր:

Նոր քահանայութիւն վերապատուեալ ի Քրիստոսէ օծմամբ սուրբ հոգւոյն, բարձր:

Ո Որ առաքեցար ի Հօրէ հոգիդ անեղ եւ համագոյ աղաչանօք տնօրինաբար քում էակցին լինել մխիթարիչ սուրբ առաքելոցն, աղաչեմք զքեզ ողորմեա:

Որ իջեր տիրաբար յերկնից սաստիկ հողմոյ նման Աստուած յայտնապէս, եւ ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար ի դասս առաքելոցն, աղաչ:

Որ արբուցեր երկնաւոր գինեաւն իմաստութեան զհոգիս սրբոց քոց առաքելոցն, որք արբուցին տրտմեցելոց որդւոց Ադամայ զբաժակն ուրախարար յայգւոյն եդեմայ, աղաչ:

Տ Որ յերկնային զօրս անմարմնոցն նախ հեղեր առատապէս հոգիդ ճշմարիտ, զաստուածային եւ զգերագոյն քո իմաստութիւնդ լինել փառաբանիչ սուրբ

երրորդութեանդ, ընդ նոսին փառաւորեմք զերրեակ միութիւնդ :

Որ զկերպարանս աստուածայինն ստեղծեալ երրորդութեանդ խորհրդակցութեամբ զարդարեցեր փչմամբ շնորհաց քոց կենդանարար, եւ ընդ ծնեալսն առ ի նմանէ խօսեցար օրհնօք եւ մարգարէիւք, ընդ նո :

Որ յերկրորդի լինելութեանս յետ յարութեան քում էակցին մտեալ ի վերնատունն դրօշմ փակեալովք շնորհելով ըստ առաջին փչմանն զքեզ մետասանիցն, առաքելոցն ասաց՝ առէք հոգի սուրբ, ընդ նո :

# ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Ո՛վ Հոգի Աստուած, Հայր Աստուծոյ և Որդի Աստուծոյ հետ նոյն և նման ես, մէկէ մը ստեղծուած չես, նոյն գոյութիւնը ունիս անոնց հետ, Հայր Աստուծմէ կը բղխիս անքննելի կերպով, Որդի Աստուծմէ կ'առնես անպատմելի կերպով, այսօր վերնատունը իջնելով քու շնորհներուդ հոգին խմցուցիր. մեզի ալ մեղքցիր և քու իմաստութեանդ բաժակէն խմցուր :*

*Արարածներուն ստեղծիչը, որ ջուրերուն վրայ կը պտըտէիր, նոյնպէս աւազանին (մկրտութեան) ջուրերուն վրայ՝ քու էակիցիդ (Քրիստոսի) շնորհիւ՝ աղաւնիի պէս սիրով կը գուրգուրաս, և աստուածային կերպարանքով ծնունդ կուտաս մարդոց, մեզի ալ :*

*Երկնային հոգեւոր էակներուն և այս աշխարհի նիւթական էակներուն վարդապետն ես, հովիւներէն*

մարգարէ կը հանես, ձկնորսներէն առաքեալ, մաքսաւորներէն աւետարանիչ, զքեզ հալածողներէն քարոզիչներ, մեզի ալ։

Սարսափելի հովի մը նման, ահաւելի և սաստիկ ձայներով, ո՛վ հոգի Աստուծոյ, վերնատան մէջ երևցար տասներկու առաքեալներուն որ քեզմէ մկրտուեցան և ոսկիի պէս կրակով մաքրուեցան, մեր վրայէն մաքրէ՛ մեղքերուն մշուշը և փառքի լոյս հագցուր։

Երկրի վրայ եկար իբրև Աստուած, իբրև իշխան երկիրը դատելու արդարութեան համար, մեղքին համար, և չարը (սատանան) դատապարտելու համար, աննիւթական գանձդ բացիր և պարգևներ տուիր մարդոց, մաքրէ՛։

Սէր հայր Աստուծմէ ծնող սէր Քրիստոս զրկեց զքեզ որ սէր ես, քեզմով իրեն միացուց իր անդամները (քրիստոնէական եկեղեցիին զաւակները), քու եօթն օւներովդ (շնորհներով) ամրացուցիր իր շինած եկեղեցին, անոր տնտես դրաւ առաքեալները զոր զարդարեց քու եօթն շնորհներով, մաքրէ՛։

Է Ո՛վ ճշմարիտ հոգի, որուն էութիւնը ըմբռնել անկարելի է և անպատմելի է, առանց սկիզբ ունենալու հայր Աստուծմէ կը բղխիս և միածին որդիին հետ նոյն գոյութիւնը ունիս, կ'օրհնենք զքեզ, ո՛վ մեր հայրերուն Աստուածը։

Կատարեալ անձնաւորութեամբ, երեք կատարեալներէն ըլլալով մէկ և նոյն բնութեամբ, ո՛վ Աստուծոյ հոգի, միշտ կը պաշտուիս հայր Աստուծոյ և որդի Աստուծոյ հետ, կ'օրհ։

Եկեղեցիին աստուածաբանները հայր Աստուծոյ և

որդի Աստուծոյ հետ նոյնապատիւ քարոզեցին զքեզ, որով կը մկրտուինք և կը խոստովանինք համագոյ և անբաժան երրորդութիւնը, կ'օրհ։

Օրհնեցէք տէրը, փառաւորեցէք զայն որ շնորհ կը բաշխէ։

Քրիստոսով պատրաստուած նոր արարածներ, որ սուրբ հոգիէն դարձեալ ծնաք մկրտութեան աւազանին մէջ, եկէք փառա։

Նոր քահանաներ Քրիստոսէ պատուուած, և սուրբ հոգիէն օծուած, փառաւորե։

Ո Ո՛վ անեղ և համագոյ հոգի, որ հայր Աստուծմէ ղրկուեցար քոն էակիցիդ (Քրիստոսի) իբրև մարդ աղաչելուն համար, սուրբ առաքեալներուն մխիթարիչ ըլլալու, կ'աղաչենք քեզի, ողորմէ՛։

Որ սաստիկ հովի մը նման իսկապէս իջար երկինքէն, յայտնապէս իբրև Աստուած, և հրեղէն լեզուներու բաժնուելով, հանգչեցար առաքեալներու խումբին վրայ, կ'աղաչ։

Որ իմաստութեան երկնաւոր գինիով գինովցուցիր քու սուրբ առաքեալներուդ հոգիները, որ Ադամի տրտմած որդիներուն խմցուցին Եդեմի այգիէն ուրախարար բաժակը, կ'աղաչ։

Տ Ո՛վ ճշմարիտ հոգի, որ նախ և առաջ երկնային անմարմին զօրքերուն վրայ առատօրէն թափեցիր քու աստուածային և բարձրագոյն իմաստութիւնդ՝ որպէսզի սուրբ Երրորդութիւնդ փառաբանեն, անոնց հետ կը փառաւորենք երեքանձնեայ միութիւնդ։

Երրորդութեան խորհրդակցութեամբ աստուածային կերպարանքը (Ադամը) ստեղծելով զարդարեցիր քու

կենդանարար շնորհքդ փչելով, և անկէց վերջ ծնած-ներուն հետ օրէնքներով և մարգարէներով խօսեցար, անոնց հետ ։

Երկրորդ ստեղծագործութեան (Քրիստոսով) ատեն քու էակիցդ իր յարութենէն վերջ վերնատունը մտաւ դուռները գոց, և առաջին փչումին պէս դքեզ շնորհեց տասնեւմէկին, ըսելով անոնց՝ առէք սուրբ հոգին, անոնց հետ ։



## ԿԱՆՈՆ ԵՐՐՈՐԴԻ ԱՒՈՒՐՆ

Ա: Այսօր երկնայինքն ուրախացան ընդ երկրա-
Բհ ւորացս նորոգումն, քանզի նորոգօղն էից հո-
կե գին էջ ի սուրբ վերնատունն, որով նորոգե-
ցան դասք առաքելոցն:

Այսօր հողանիւթեայ բնութիւնս ցնծայ ընդ հօր հաշտութեան, քանզի որ եբարձ զհոգին ի մարդկանէ մարմին եղելոց դարձեալ վերստին զնոյն պարգեւէ:

Այսօր մանկունք եկեղեցւոյ տօնեն ցնծութեամբ ըզգալուստ սուրբ հոգւոյն, որով զարդարեցան ի զգեստս լուսափայլս եւ զերապայծառս, երգեն ընդ սրոբէսն զերեքսրբենին:

Որ զմիաբանեալսն յաշտարակին բաժանմամբ լեզուացն քակեաց, այսօր զբաժանեալ լեզուս ազգաց միաբանեաց դարձեալ ի սուրբ վերնատունն. ամենայն հոգիք օրհնեցէք զհոգին Աստուծոյ:

Որ էջ հոգին տեառն եւ առաջնորդեաց երկոտասան ցեղիցն իսրայէլի ի յանապատին, այսօր երկոտասան առաքելոցն առաջնորդէ ի յաւետարանն, ամենայն հոգիք:

Որ ելից հոգին տեառն զբեսելիէլ ճարտարապետ խորանին, այսօր շինէ զմարդիկ խորան սուրբ երրորդութեանն, ամենայն հոգիք:

Հ Որ բոլորից ես պատճառ էից անպատճառից
Տծ եւ որոց պատճառաւ, հայր անծին եւ անըս-
կիզբն, որդւոյ պատճառ անժամանակ ծննդեամբ եւ հոգւոյ բղխման անքննաբար, օրհնեալ տէր Աստուած հարցն մերոց:

Որ կամաւ հօր եւ սուրբ հոգւոյն անեղակից բանդ Աստուած ի հայրական ծոցոյ իջեր աւետօք Գաբրիէլի որ զհոգին բերկրեալ կուսին յորմէ ծնար մարմնով անճառաբար ի հոգւոյն սրբոյ, օրհ:

Որ մարգարէիւքն գուշակէյեր հոգիդ յառաջագոյն զգալուստ քում էակցին, եւ ի յորդանան վկայեցեր աղաւնակերպ իջմամբ ի վերայ մարմնացեալ բանին, օր:

Կ Զտէր օրհնեցէք բարձր արարէք զնա յաւիտեան:

Այսօր համագոյակիցն հօր եւ որդւոյ հոգին հրափայլ ծագմամբ իջեալ ի վերնատունն մկրտեաց զդաս առաքելոյն ի հուրն անկիզելի, զտէր:

Այսօր արարչակիցն հօր եւ որդւոյ հոգին բղխեալ անհիւթական ջուր կենդանի յերուսաղէմ իմաստութեան եւ մաքրութեան մեղաց, զտէր:

Ո Որ ի վերայ բղխեալ գաւազանին յեսսեայ հանգեար եօթնարփեան շնորհօք, հոգի Աստուծոյ եւ խորհրդոյ, հոգի հեզութեան եւ զօրութեան, հոգի իմաստութեան եւ գիտութեան, հոգի երկիւղի աստուածապաշտութեան, աղաչեմք շնորհեա եւ մեզ ողորմութեամբ ի քոյ պարգեւացդ:

Որ զգուշակեալն քո Եսայեաւ ելից օծեալն ի քէն մարմնով, ասէ՝ հոգի տեառն ի վերայ իմ, զոր ի տնօրէնութեանն խոնարհութեամբ ընթերցեալ որ վասն իւր գրեան մարգարէին, աղաչ:

Որ զառաքումն առ ի հօրէ ի եւ հոգւոյդ բանին յաշխարհ մարգարէիւն ծանուցեր, զոր ի դիմաց մարդացելոյն բարբառիւր առ մարդկութիւնն՝ տէր տէր առաքեաց զիս եւ հոգի նորա, աղաչ:

Տ Ընդ երկնայնոց հոգեղինաց դասուցն հոգւոցն

ստեղծողին երգեմք , փառաւորեալ է գալուստ հոգւոյն Սրբոյ :

Ընդ առաքելոց խմբիցն այսօր զուարճացեալք վերագոչեմք հոգւով , փառաւոր :

Աստանօր վերնատունն սիօնի որդիք նորոյ երգեցէք ձայնիւ վերնոցն , փառա :

Ի ձայն ցնծութեան ամենայն հոգիք տացուք զմեզ նորոգողին զփառս , փառա :

---

# ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Հրեշտակները այսօր ուրախացան մեր՝ երկնաւորներուս նորոգուելուն վրայ , որովհետև արարածները նորոգող հոգին վերնատունը իջաւ , որով նորոգուեցան առաքեալները :*

*Մեր հողեղէն բնութիւնը այսօր կը հրճուի հայր Աստուծոյ մեզի հետ հաշտուելուն վրայ , որովհետև նա որ ( Ջրհեղեղին ժամանակ ) իր հոգին վերցուց մարմին եղող մարդիկներէն , դարձեալ կը շնորհէ նոյն հոգին :*

*Եկեղեցին մանուկները այսօր ուրախութեամբ կը տօնեն սուրբ հոգիին գալուստը , որուն շնորհիւ լուսափայլ և յորդ պայծառ զգեստներով զարդարուեցան . և սերովբէներուն հետ կ'երգեն սո՛ւրբ , սո՛ւրբ , սո՛ւրբ :*

*Ո՛վ բոլոր հոգիներ , Աստուծոյ հոգին օրհնեցէք , որ լեզուները բաժնելով քակեց աշտարակին մէջ գըռնուողներուն միաբանութիւնը , և այսօր դարձեալ սուրբ վերնատունին մէջ համաձայնեցուց ազգերուն բաժնըւած լեզուները :*

Տիրոջը հոգին որ իջաւ և անապատին մէջ առաջնորդ եղաւ Իսրայէլի տասներու ցեղերուն, այսօր իր աւետարանով առաջնորդ կ'ըլլայ տասներկու առաքեալներուն. ո՛վ բոլոր հոգիներ, Աստուծոյ հոգին օրհնեցէք ։

Տիրոջը հոգին, որ լեցուց Երուսաղէմի տաճարին ճարտարապետ Բեսելիէլը, այսօր սուրբ Երրորդութեան խորան կը շինէ մարդիկը, ո՛վ բոլոր ։

Հ Ո՛վ հայր Աստուած, որ մէկէ մը ծնած չես և սկիզբ չունիս, պատճառ ես բոլոր անպատճառ և պատճառաւոր էակներուն, անժամանակ ծնունդով պատճառ ես որդիին, և հոգին քեզմէ կը բղխի անքննելի կերպով, օրհնեալ ես, ո՛վ մեր հայրերուն տէր Աստուածը ։

Ո՛վ բանդ Աստուած, որ հայր Աստուծոյ և սուրբ հոգիին կամքով հայրական ծոցէն իջար Գաբրիէլ հրեշտակին բարի լուրովը, որ հրճուեցուց կոյսին հոգին, որմէ մարմինով ծնար անպատմելի կերպով սուրբ հոգիին միջոցաւ, օրհ ։

Ո՛վ հոգի, որ առաջուց մարգարէներու միջոցաւ գուշակեցիր քու էակիցիդ գալուստը, և Յորդանանի մէջ վկայեցիր՝ մարմին առնող բանն Աստուծոյ վրայ իջնելով աղաւնիի պէս, օրհ ։

Օրհնեցէք տէրը, ի սպառ փառաւորեցէք զայն ։

Հայր Աստուծոյ և որդի Աստուծոյ գոյակից հոգին այսօր հրափայլ ծագումով վերնատունը իջնելով, առաքեալները մկրտեց անկիզելի կրակովը, օրհ.

Հայր Աստուծոյ և որդի Աստուծոյ արարչակից հոգին այսօր Երուսաղէմի մէջ բղխեցուց իմաստութեան

և մեղքի մաքրութեան անհիւթական կենդանի ջուր, օրհ։

Ո Եօթն շնորհներով հանգչեցար Յեսսէի (Դաւթի) սերունդին վրայ, Աստուծոյ և խորհուրդի հոգի, խոնարհութեան և զօրութեան հոգի, իմաստութեան և գիտութեան հոգի, աստուածպաշտութեան և երկիւղի հոգի. կ՚աղաչենք մեզի ալ շնորհ ըրէ ողորմութեամբ քու պարգևդ։

Մարմինով քեզմէ օծուածը (Քրիստոս) կատարեց Եսայիին գուշակածը, ըսաւ՝ տիրոջը հոգին իմ վրաս, և մարգարէին իրեն մասին ըսած խօսքը խոնարհութեամբ կարդաց իր տնօրէնութեան (աշխարհի վրայ գտնուած) ատեն, կ՚աղաչ։

Մարգարէին միջոցաւ յայտնեցիր բանն Աստուծոյ աշխարհ գալը հայր Աստուծոյ և Հոգիիդ կողմէ, մարգարէն մարդացեալին (Քրիստոսի) կողմէ կը խօսէր մարդկութեան թէ Տէրը և անոր Հոգին ղրկեց զիս, կաղաչ։

Տ Երկնային հոգեղէն հրեշտակներուն հետ կ՚երգենք հոգիները ստեղծողին. սուրբ հոգիին գալուստը փառաւորուած է։

Առաքեալներուն խումբին հետ այսօր ուրախանալով կ՚աղաղակենք հոգիով դէպ ի երկինք. սուրբ։

Հոս է Սիոնի վերնատունը, նոր սիոնի որդիներ, հրեշտակներուն ձայնով երգեցէք, սուրբ։

Մենք՝ բոլոր հոգիներս, ուրախութեան ձայնով փառք տանք անոր որ զմեզ նորոգեց. սուրբ հոգիին գալուստը փառաւորուած է։



# ԿԱՆՈՆ ՉՈՐՐՈՐԴԻ ԱՒՈՒՐՆ

ԱՀ Արեգակն արդարութեան Քրիստոս ծագեալ
ՓՅ յաշխարհ հալածեաց զխաւարն անգիտութեան,
ԿԲ եւ յետ մահու եւ յարութեան համբարձաւ առ
Հայր յորմէ ծագեաց, որ երկրպագի յերկնաւորաց եւ յերկրաւորաց ընդ Հօր եւ սուրբ Հոգւոյն, վասն որոյ եւ մեք երկիր պագանեմք Հօր Հոգւով եւ ճշմարտութեամբ:

Որ փոխանակ ծագածին բանին որ էլ յերկինս, առաքեցաւ աւետիքն Հօր ի բարձանց Հոգին ճշմարտութեան, մխիթարել զորս յաղագս տրտմեցելոց եւ հրազինել զընտրեալ զդասս առաքելոցն, վասն:

Այսօր տրտմականն եւ զիջրայինն լուծան երկուքն ծննդեան նախամօրն, քանզի զծնեալսն մարմնով ի մահ եւ յապականութիւն վերստին ծնանի Հոգին յորդիս լուսոյ Հօրն երկնաւորի, վասն:

Որ համագոյդ ես Հօր եւ Որդւոյ աննմանաբար բղխումն ի միշտ էին, այսօր բղխեցեր ջուր կենդանի յերուսաղէմ, Հոգի Աստուծոյ ողորմեա:

Որ արարչակից ես Հօր եւ Որդւոյ, որով կենդանածեալք ի ջուրց արարածք այսօր որդիս Աստուծոյ ծնանիս ի ջուրց, Հոգի Աստուծոյ, ողորմեա:

Որ փառակից ես Հօր եւ Որդւոյ եւ քննես զխորս Աստուծոյ, այսօր խորագէտս իմաստից զյիմարս աշխարհի արարեր, Հոգի:

Հ Որ անքննին ես յէութեան համագոյ երրոր-
Գէ դութիւն, երեքսրբեան մի տէրութիւն միով բնութեամբ աստուածութիւն, զքեզ բարեբանեմք Աստուած հարցն մերոց:

Որ ես պատճառ որդւոյ ծննդեամբ հայր յառաջ քան զյաւիտեանս, յորմէ հոգիդ ճառագայթեալ անորիշ բաժանմամբ, զքեզ:

Որ էակիցդ ես հօր որդի լոյս ի լուսոյ ծագումն անճառ, անեղակից սուրբ հոգի հօր եւ որդւոյ հաւասար, զքեզ:

Գ Զտէր օրհնեցէք բարձր արարէք զբղխեալն ի հօրէ:

Այսօր ամենայն հոգիք բանաւորաց սուրբ զհոգին ճշմարտութեան, որ բոցատիպ լեզուօք անեղագոչ սաստիկ հողմոյ հնչմամբ իջեալ ի յերկնից, օրհնեցէք ի ձայն գոհութեան բարձր արարէք զնա յաւիտեան:

Այսօր քահանայք եկեղեցւոյ սուրբ զհոգին կենդանարար որ բաշխէ առատապէս զբազմապատիկ պարգեւս յեկեղեցիս արդարոց, գովեցէք հոգեւոր երգով, բարձր արարէք զնա:

Ո Աղբիւր կենաց բաշխող շնորհաց հոգիդ իջեալ ի բարձանց, զանապական պարգեւս քո բաժանեցեր յառաքեալսն:

Որ ի վերայ ջուրցն գոլով ստեղծանէիր զարարածս, իջեալ ի ջուրս աւազանին ծնանիս որդի Աստուծոյ:

Որ զարդարեալ նորոգես միշտ զնոր քո զեկեղեցի, պէսպէս շնորհաց քոց պարգեւօք փայլին մանկունք սորա:

Տ Հոգիք հրեղինացն այսօր տօնին ընդ մեզ ըզգալուստ հոգւոյն Աստուծոյ:

Տեսանողն յառաջ նշանակէր զառատաբուղխ վտակ իմաստից ի մեզ հեղեալ ի հոգւոյն:

Վէմն հաւատոյ զմայլեալ անմահական բաժակաւն այսօր բաշխէր ծարաւեաց:

Գետոցն այս գնացիւք ցնծայ քաղաքն Աստուծոյ սիոն մայր եկեղեցի ։

Վասն որոյ եւ մեք երրեակ եւ մի աստուածութեանն երգեմք զփառս ի բարձունս ։

# ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Քրիստոս, արդարութեան արեւը, աշխարհի վրայ ծագելով ցրուեց տգիտութեան խաւարը, և մեռնելէն ու յարութիւն առնելէն վերջ համբարձաւ հայր Աստուծոյ քով՝ որմէ ծագեցաւ. երկնաւորները ու երկրաւորները երկրպագութիւն կ'ընեն անոր հայր Աստուծոյ և սուրբ հոգիին հետ. ուստի մենք ալ հոգիով և ճշմարտութեամբ երկրպագութիւն կ'ընենք հայր Աստուծոյ ։*

*Ճշմարտութեան հոգին, հայր Աստուծոյ խոստումը, բարձունքէն ղրկուեցաւ իր ծոցէն ծնած բանն Աստուծոյ տեղ որ երկինք ելաւ, մխիթարելու Ադամին տրտմած սերունդը, և կրակով զինելու առաքեալներուն ընտրեալ դասը. ուստի ։*

*Նախամայր Եւայի տխուր և խաւարային ցաւերը այսօր բուժուեցան, որովհետեւ սուրբ հոգին մահուան և ապականութեան համար ծնածները նորէն կը ծնի իբրեւ լուսաւոր որդիներ երկնաւոր հօր. ուստի ։*

*Ո՛վ Աստուծոյ հոգի, որ մշտագոյ էակէն անպատմելի կերպով կը բղխիս, գոյակից ես հայր Աստուծոյ և որդի Աստուծոյ, այսօր կենդանի ջուր բղխեցուցիր Երուսաղէմի մէջ. ողորմէ՛ ։*

*Ո՛վ Աստուծոյ հոգին որ հայր Աստուծոյ և որդի Աստուծոյ հետ ստեղծագործութեան մասնակից եղար, ջուրերէն կենդանացած արարածները այսօր ալ ջուրերէն կը ծնիս իբրև Աստուծոյ որդիներ. ողորմէ՛։*

*Ո՛վ Աստուծոյ հոգի, որ հայր Աստուծոյ և որդի Աստուծոյ հետ նոյն փառքը ունիս և Աստուծոյ գաղտնիքները կը քննես, այսօր իմաստուն և խորագէտ ըրիր աշխարհի յիմարները. ողորմէ՛։*

Հ *Դուն որ էութեամբ անքննելի ես, համագոյ Երրորդութիւն, երեքսրբեան մէկ տէրութիւն, մէկ բնութեամբ աստուածութիւն, կը գովաբանեմք զքեզ ո՛վ մեր հայրերուն Աստուածը։*

*Ո՛վ հայր, որ բոլոր ժամանակներէն առաջ ծնար և պատճառ եղար որդիին, հոգին քեզմէ կը ճառագայթէ անջատ բաժանումով, կը գովաբա։*

*Ո՛վ որդի Աստուած, որ հայր Աստուծոյ հետ նոյն էութիւնը ունիս, լոյս Աստուծմէ լոյս ծագում ես անպատմելի կերպով, անեղակից սուրբ հոգի, հայր Աստուծոյ հաւասար, կը գովաբա։*

*Օրհնեցէք տէրը, փառաւորեցէք զայն որ հօրմէն կը բղխի։*

*Ո՛վ բանաւոր էակներու հոգիներ, այսօր երախտագիտական ձայներով օրհնեցէք և ի սպառ փառաւորեցէք ճշմարիտ սուրբ հոգին, որ բոցեղէն լեզուներով ահեղաձայն սաստիկ հովի հնչումով իջաւ երկինքէն։*

*Ո՛վ եկեղեցիին քահանաներ, այսօր հոգեւոր երգերով գովեցէք և ի սպառ փառաւորեցէք կենդանարար սուրբ հոգին, որ արդարներու ժողովներուն առատօրէն կը բաշխէ բազմապատիկ շնորհները։*

Ո Ո՛վ հոգի, կեանքի աղբիւր որ շնորհք կը բաշխես երկինքէն իջնելով, քու անապական պարգեւներդ առաքեալներուն բաժնեցիր։

Դուն որ ջուրերուն վրայ ըլլալով արարածները կը ստեղծէիր, աւազանին ջուրերուն վրայ իջնելով կը ծնիս իբրեւ Աստուծոյ որդիներ։

Քու նոր եկեղեցիդ կը զարդարես, կը նորոգես, սուրբ մանուկները (հաւատացեալները) զանազան պարգեւներով և շնորհներով կը փայլին։

Տ Հրեղէն հրեշտակները այսօր կը տօնեն մեզի հետ Աստուծոյ հոգիին գալուստը։

Մարգարէն առաջուց կը գուշակէր թէ հոգին առատօրէն պիտի թափէ մեր վրայ իմաստութեան գետ մը։

Հաւատոյ վէմը (Պետրոս) անմահական բաժակովը գինովցած այսօր կը բաշխէր ծարաւիներուն։

Այս գետերուն ընթացքին վրայ կը հրճուի Աստուծոյ քաղաքը, Սիոն, քրիստոնէական մայր եկեղեցին։

Ուստի մենք ալ երեքանձնեայ և մէկ աստուածութեան երգենք. փառաւորեա՜լ թող ըլլայ Աստուած որ երկինքը կը բնակի։



# ԿԱՆՈՆ ՀԻՆԳԵՐՈՐԴԻ ԱՒՈՒՐՆ

ԱՀ Զանսկզբնաբար բղխումն ի հօրէ զհոգին ճըշ-
ՏԷ մարիտ, որ հնչմամբ ձայնի էջ ի վերնատունն
Կ այսօր նման սաստիկ հողմոյ, զոր փառաւո-
րեմք հոգեւոր երգով:

Զհամագոյակիցն հօր եւ որդւոյ զբաշխողն շնորհաց, որ ի հրեղէն լեզուս բաժանեալ զբանն ընտրութեան լեզուաց շնորհեաց սուրբ առաքելոցն, զոր:

Զաղբիւրն իմաստութեան զկատարեալն անձնաւորութեամբ, որ խօսեցաւ յօրէնս եւ ի մարգարէս եւ յաւետարանս, զոր:

Այսօր ցնծան դասք առաքելոցն գալստեամբ հոգւոյն Աստուծոյ, զորս մխիթարեաց փոխանակ բանին մարմնացելոյ եղեալ ընդ նոսա, փառս տացուք նմա սրբասաց ձայնիւ:

Այսօր բղխեաց ջուր կենդանին յներսուստ յորմէ լցան գետք աստուածայինք, եւ ընթացեալք արբուցին տիեզերաց զքառավտակ աղբիւրն Եդեմայ, փառս:

Այսօր ցօղով իմանալեաւ յամպոց հոգւոյն զուարթացան բոյսք եկեղեցւոյ, պարարտացան դաշտք արդարութեամբ եւ գեղեցկացան անապատք մաքուր կուսութեամբ, փառս:

Հ Անեղանելիդ Աստուած եւ եղելոցս էակ, որ առաքեցեր յաշխարհ զանեղակից քո զհոգիդ ի փառս միածնի որդւոյ քո, օրհնեալ ես տէր Աստուած հարցն մերոց:

Ծագումն ի հօրէ անճառ ծննդեամբ, որ ետուր

մխիթարիչ առաքելոց քոց սրբոց զհոգիդ քո տիրակից գոլով, օրհ:

Հոգիդ Աստուծոյ անեղ էութիւն, կատարեալ անձնաւորութեամբ եւ կատարող բոլորից, ընդ Հօր եւ ընդ Որդւոյ միաւորեալ բնութեամբ, օրհ:

Գ Ամենայն հոգիք զհոգին սուրբ գովեսցէ, զէակիցն ընդ Հօր եւ Որդւոյ երեքսրբեան ձայնիւ:

Զհուրն երկնային զարկեալ բանին յերկիր բանաւոր, որ մկրտեաց այսօր զառաքեալսն ի սուրբ վերնատունն, ամենայն:

Զեղօղն ի Հօրէ զառատաբուղխ աղբիւրն իմաստից, որ խօսեցաւ զհին եւ զնոր օրէնս Աստուծոյ, ամենայն:

Ո Իջեր տէր զօրութեամբ քով յաշխարհ եւ զմեռեալ բնութիւնս ի կեանս վերափոխեցեր:

Ելեր տէր առ Հայր փառօք ի յերկինս, եւ մխիթարիչ առաքելոցն առաքեցեր սուրբ զհոգիդ:

Բացեր տէր այսօր զգանձդ երկնային, եւ բաշխեցեր առատապէս պարգեւս աղքատ բնութեանս:

Տ Այսօր աղբիւր գիտութեան բղխեալ ի սուրբ վերնատունն, յորմէ լցան տիեզերք զնացիւք գետոցն ոռոգմամբ:

Այսօր իջեալ ի յերկիր Հօր աւետիքն ի բարձանց, տալ աւետիս Ադամայ դառնալ յԵդեմ վերստին:

Այսօր խնդայ նոր Սիոն որդւովք իւրովք զոր ծնաւ օծմամբ հոգւոյն նորոգեալ յորդիս լուսոյ եւ տուընջեան:

Այսօր ի ձայն զոհութեան զհոգին ընդ Հօր եւ Որդւոյ հոգիք ամենայն օրհնեսցէք զերեքսրբեանն երգելով:

Այսօր ցնծամք երկրաւորքս ընդ գալստեան երկնայնոյն, եւ պարելով ընդ հրեշտակս երգեմք զփառս ի բարձունս:

# ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Հոգեւոր երգերով կը փառաւորենք հայր Աստուծմէ անսզբնաբար բղխող ճշմարիտ հոգին, որ այսօր սաստիկ հովի մը պէս ահեղ ձայնով վերնատունը իջաւ։*

*Հայր Աստուծոյ և որդի Աստուծոյ համագոյակից է, և շնորհք կը բաշխէ, և հրեղէն լեզուներու բաժնուելով լեզուներու ընտրութեան վարդապետութիւնը սուրբ առաքեալներուն շնորհեց։*

*Իմաստութեան աղբիւրը, և անձնաւորութեամբ կատարեալը. որ խօսեցաւ օրէնքներուն, մարգարէներուն և աւետարաններուն մէջ։*

*Աստուծոյ հոգիին գալուն վրայ այսօր կը հրճուէին առաքեալները, զորս մխիթարեց մարմնացեալ բանն Աստուծոյ տեղ որ անոնց հետ գտնուեցաւ ժամանակ մը. փառք տանք անոր՝ սո՛ւրբ սո՛ւրբ սո՛ւրբ եղանակելով։*

*Այսօր կեանք տուող ջուր մը բղխեց Երուսաղէմի մէջ, որմէ լեցուեցան աստուածային գետերը, և առաքեալները աշխարհի վրայ երթալով խմցուցին Եդեմի (դրախտին) աղբիւրը, որ չորս գետերէ կը բաղկանար. փառք տանք։*

*Այսօր եկեղեցիին բոյսերը (նոր հաւատացեալները) դուարճացան հոգիին ամպերէն իջնող հոգեւոր ցօղով, դաշտերը արդարութեամբ պարարտացան, և անապատները գեղեցկացան մաքուր կոյսերով. փառք։*

Հ *Ո՛վ Աստուած, որ մէկէ մը ստեղծուած չես, և բոլոր արարածներուն արարիչն ես, որ աշխարհ ղըր-*

կեցիր քու հոգիդ որ քեզի պէս մէկէ մը ստեղծուած չէ, և այս կերպով փառաւորեցիր քու միածին որդիդ. օրհնեա՛լ ես ո՛վ մեր հայրերուն տէր Աստուածը ։

Ո՛վ որդի Աստուած, որ անպատմելի ծնունդով հայր Աստուծմէ ծագեցար, և քու սուրբ առաքեալներուդ իբրև մխիթարիչ տուիր քու Հոգիդ որուն հետ նոյն տէրութիւնը ունիս. օրհ՝ ։

Ո՛վ Աստուծոյ հոգի, անեղ էութիւն, անձնաւորութեամբ կատարեալ և բոլոր արարածները կը լեցնես, հայր Աստուծոյ և որդի Աստուծոյ հետ միացած ես բընութեամբ, օրհ ։

Ո՛վ բոլոր հոգիներ (մարդիկ), գովեցէք սուրբ հոգին սուրբ սուրբ սուրբ աղաղակելով, նա հայր Աստուծոյ և որդի Աստուծոյ հետ նոյն էութիւնը ունի ։

Որ բանն Աստուծոյ բանաւոր երկրի վրայ ձգած երկնային կրակն է, որ այսօր առաքեալները մկրտեց սուրբ վերնատունին մէջ ։

Իմաստութեան առատաբուխ աղբիւրն է, հայր Աստուծմէ բղխող, որ Աստուծոյ հին ու նոր օրէնքները խօսեցաւ ։

Ո Ո՛վ տէր, քու ողորմութեամբդ աշխարհի վրայ իջար և մեր մեռած բնութիւնը կենդանացուցիր ։

Ո՛վ տէր, փառքով ելար երկինք քու Հօրդ քով, և քու սուրբ Հոգիդ ղրկեցիր իբրև մխիթարիչ առաքեալներուն ։

Ո՛վ տէր, այսօր բացիր քու երկնային գանձարանդ, և մեր աղքատ բնութեան պարգևներ բաշխեցիր առատօրէն ։

Տ Այսօր գիտութեան աղբիւր մը բղխեցաւ սուրբ

վերնատունին մէջ, ուրկէ լեցուեցաւ ամբողջ աշխարհ գետերուն ընթացքէն ոռոգուելով ։

Այսօր հայր Աստուծոյ խոստումը (հոգին) երկրի վրայ իջաւ բարձունքէն, բարի լուր տալու Ադամին որպէսզի նորէն Եդեմ դառնայ ։

Այսօր Նոր Սիոն (քրիստոնէական եկեղեցին) կ'ուրախանայ իր ծնած որդիներով, զոր հոգիով օծելով՝ լուսաւոր և պայծառ որդիներու փոխեց ։

Ո՛վ բոլոր հոգիներ, սո՛ւրբ, սո՛ւրբ, սո՛ւրբ երգելով օրհնեցէք հոգին երախտագիտական ձայնով հայր Աստուծոյ և որդի Աստուծոյ հետ ։

Մենք՝ երկրաւորներս այսօր կը հրճուինք երկնաւորին (սուրբ հոգիին) գալուն վրայ, և հրեշտակներուն հետ պար բռնելով կ'երգենք՝ փառաւորեա՜լ թող ըլլայ Աստուած որ երկինքը կը բնակի ։



# ԿԱՆՈՆ ՎԵՑԵՐՈՐԴԻ ԱՒՈՒՐՆ

Անմահական բաժակ հեղեալ յերկնից սուրբ հոգի, զոր արբին ի վերնատանն դասք սուրբ առաքելոցն, օրհնեալ ես սուրբ հոգիդ ճշմարիտ:

Առաքեալս ծաւալեալ ի մեզ հուրն կենդանի՝ քանզի արբեալք առաքելոցն եւ արբուցին տիեզերաց, օրհ:

Այսօր մեծապէս ցնծան եկեղեցիք հեթանոսաց, ըմպեալք ուրախութեամբ ի քէն կենդանարար բաժակ, օրհ:

Անսկիզբն Աստուած սուրբ հոգի զմարգարէութեանց նախագուշակումն արտափայլեալ լուսազարդեցեր առաքեալս հեղեալ յառաքեալսն:

Անժամանակ որդի միածին, զխոստացեալ պարգեւս աւետեացն ի վերնատունն աւարտեալ լցեր, առաքս:

Ամենակալ հայր երկնաւոր զանբաժանելի լուսոյդ զծագումն հողեղինացս շնորհեցեր, առաքս:

Անճառելի բղխումն ի հօրէ հոգիդ ճշմարիտ, այսօր ի վերնատունն խորհրդոյ խոնարհեալ հանգեար յառաքեալսն, Աստուած հարցն մերոց:

Անքննելի խորոցդ Աստուծոյ քննօղ ընդ հօր միաւոր, այսօր ի հրեղէն թեւոցն խոնարհեալ հանգեար յառաքեալսն, Աստուած:

Անսպառ աղբիւր լուսոյ սուրբ հոգի այսօր ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսն, Աստուած:

Գ Զտէր օրհնեցէք բարձր արարէք զհոգին ճշմարիտ:

Որ անճառ խոնարհութեամբ հանգեաւ յառաքեալսն, պանծալի արփիափայլ պսակ եդեալ ի նոսա, բարձր:

Որ զանճառելի խորհուրդ երրորդութեանն յայտնեաց նոցա, իմաստութեան աղբիւր կենդանի բղխեալ ի նոսա, բարձր:

Ո Որ ի հայրական իսկութենէն յառա՛ջ բղխեալ աղբիւր լուսոյ, եւ ճառագայթարձակ լուսովն զուարճացուցեալ լցեր զառաքեալսն, աղաչանօք սոցա ողորմեա:

Որ զէութիւն քո հրեղինաց հիացմամբ ցուցեր, նոյն ինքն իմանալի աստուածային լուսովն զուարճացուցեալ լցեր զառաք:

Որ զաշխարհատարած խաւարն ի սկզբան ի լոյս փոխեցեր, այսօր հրաշալի աստուածային լուսովն զուարճացու:

Որ հրաբորբոք ծաւալմամբ յառաջ խաղացեալ հոգին ճշմարիտ, եւ հրածորան աստուածային լուսովն զուարճացու:

Տ Որ ի հրացա՛յտ սաւառնաթեւիցդ վերայ նստիս, այսօր ի դասս հողեղինաց անպատմելի սիրով հեղեալ ի յերկնից, օրհնեալ ես սուրբ հոգի Աստուած:

Որ ի հրեղէն լեզուացն եւահիւսակ սրբաբանիս, այսօր ի շրթունս հողեղինացն հրածորան հեղեալ ի յերկնից, օրհ:

Որ հրակերպիցն արփիափայլ բոցով միշտ երեւիս, այսօր հողեղինացն հրանաշակ բաժակ հեղեալ ի յերկնից, օրհ:

# ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Սուրբ հոգին երկինքէն թափեցաւ իբրեւ նմանութիւն տուող բաժակ մը, զոր սուրբ առաքեալները խըմեցին վերնատունին մէջ. օրհնեալ ըլլաս, ո՛վ ճշմարիտ սուրբ հոգի։*

*Կեանք տուող կրակը առատօրէն մեր վրայ ծաւալեցաւ, որովհետեւ առաքեալները խմեցին եւ ափեզերքին ալ խմցուցին. օրհ։*

*Հեթանոսներէ ձեւացած քրիստոնէական եկեղեցիները այսօր մեծապէս կը հրճուին, քու կենդանարար բաժակիդ ազդած ուրախութենէն զմայլելով. օրհ։*

*Ո՛վ սուրբ հոգի, անսկիզբ Աստուած, մարգարէներուն առաջուց գուշակածը, քու գալուստդ, փայլեցնելով, առատօրէն լուսաւորեցիր՝ թափուելով առաքեալներուն վրայ։*

*Առանց ժամանակի եղող միածին որդի, քու խոստացած շնորհքդ, բարի լոյսը; վերնատունին մէջ առատեցիր եւ կատարեցիր։*

*Ո՛վ ամենակալ Հայր երկնաւոր, քու անբաժան լոյսիդ ծագումը մեզի՝ հողեղէններուս շնորհեցիր։*

Հ *Ո՛վ ճշմարիտ հոգի, որ անպատմելի կերպով հայր Աստուծմէ կը բղխիս, այսօր խորհրդաւոր վերնատունը իջնելով առաքեալներուն վրայ հանգչեցար. ո՛վ մեր հայրերուն Աստուածը։*

*Աստուծոյ անքննելի գաղտնիքները քննող, եւ հայր Աստուծոյ հետ մէկ, այսօր հրեշտակներուն հրեղէն թեւերէն վար իջնելով առաքեալներուն վրայ հանգչեցար. ո՛վ մեր։*

*Ո՛վ սուրբ հոգի, լոյսի անհատնում աղբիւր, այսօր հրեղէն լեզուներու բաժնուելով առաքեալներուն վրայ հանգչեցար. ո՛վ մեր ։*

*Օրհնեցէք Տէրը, փառաւորեցէք ճշմարիտ հոգին ։*

*Որ անպատմելի խոնարհութեամբ հանգչեցաւ առաքեալներուն վրայ իբրև փառապանծ և արեւու պէս փայլող պսակ մը զետեղուելով անոնց վրայ. փառս ։*

*Որ անոնց (առաքեալներուն) յայտնեց Երրորդութեան անպատմելի խորհուրդը, իմաստութեան կենանք տուող աղբիւր մը ցայտեցնելով անոնց վրայ. փառս ։*

Ո *Ո՛վ լոյսի աղբիւր, որ բուն հայր Աստուծմէ կը բղխես առաջուց, ճառագայթ արձակող լուսով ուրախացուցիր և լեցուցիր առաքեալները. ողորմէ՛ անոնց (առաքեալներուն) աղաչանքով ։*

*Դուն որ քու էութիւնդ ցուցուցիր հրեղէն հրեշտակներուն՝ հիացում պատճառելով անոնց, նոյնպէս հոգեւոր աստուածային լուսով ուրախացուցիր և լեցուցիր առաքեալները. ողորմ ։*

*Դուն որ սկիզբէն լոյսի փոխեցիր ընդհանուր աշխարհը պատող խաւարը, այսօր աստուածային հրաշալի լուսով ուրախացուցիր և լեցուցիր առաքեալները. ողորմէ՛ ։*

*Կրակի պէս բորբոքելով և ծաւալելով դէպ առաջ շարժեցար, ո՛վ ճշմարիտ հոգի, և կրակ կաթեցնող աստուածային լուսով ուրախացուցիր և լեցուցիր առաքեալները. ողորմէ՛ ։*

Տ *Դուն որ կրակ ցայտեցնող և իրենց թեւերը պարզող հրեշտակներուն վրայ կը նստիս, այսօր երկինքէն վար թափեցար հողեղէն մարդոց խումբին վր-*

րայ անպատմելի սիրով․ օրհնեա՜լ ես, ո՛վ սուրբ հոգի Աստուած ։

Դուն որ հրեշտակներուն հրեղէն լեզուներէն կը փառաբանուիս, սո՛ւրբ, սո՛ւրբ, սո՛ւրբ ձայնով, այսօր երկինքէն կրակի պէս կաթեցար հողեղէն մարդոց շըրթունքներուն վրայ․ օրհ ։

Դուն որ կրակէ կերպարանք ունեցող հրեշտակներուն միշտ արեւու պէս փայլող բոցով կ'երեւիս, այսօր երկինքէն հողեղէն մարդոց վրայ թափեցար իբրեւ հըրեղէն բաժակ․ օրհ ։



# ԿԱՆՈՆ ԵՕԹՆԵՐՈՐԴԻ ԱՒՈՒՐՆ

ԱՀ Ի հարաշարժ աղբերէն անհատահոսդ վտակ
ԳԼ կենդանարար սուրբ հոգի, օրհնեալ ես լոյս
ԿԲ ճշմարիտ:

Այսօր ի սուրբ վերնատունն եկեալ Աստուած ճշմարիտ հրաշազարդեաց զառաքեալսն ի լոյս փառաց քոց հոգի:

Հրճուողական խնդութեամբ աշակերտացն լցեալ, փառաւորելով երգէին օրհնեալ ես լոյս զերազանց:

Ի համբառնալ բանին յերկինս եւ ի նստիլ ընդ աջմէ հօր, զուարճացեալ առաքելոցն երկրպագէին, օրհնելով զհայր զառաքօղ բանին:

Համահաւաքեալ գունդք սրբոցն ի վերնատունն խորհրդոյ համբարձմամբ աչաց սպասէին հոգւոյն, օրհ:

Ցանկարծահաս հնչմամբ հեղեալ կենդանարար աղբիւր լուսոյ, անմահական կենաց լուսով զարդարեալ, արք օրհնէին զհայր զառաքօղ հոգւոյն:

Հ Անեղանելի հոգիդ սուրբ որ ես ընդ հօր փա-
ԵՅ ռակից, եւ էակից գոլով ծոցածին բանին, անհասանելիդ Աստուած հարցն մերոց:

Որ ի քառակերպեան աթոռդ բազմեալ հանգչիս, եւ սրբաբանեալ օրհնիս ի հրեղէն լեզուացն, անհա:

Այսօր մարդասիրապէս աստուածաբար իջեալ ի սուրբ վերնատունն, եւ զհրեղէն լեզուս բաժանեալ հանգչելով ի նոսա, անհա:

Գ Զտէր օրհնեցէք բարձր արարէք զհոգին ճշմարիտ Աստուած:

Զմխիթարիչ սուրբ Հոգին որ փոխանն միածնին իջեալ ի Հօրէ, որ Հրաշազարդեաց զսուրբ զառաքեալսն, բարձր:

Զերկնային ծորանն հեղեալ ի սուրբ վերնատունն, որ աստուածազարդ Հրազինեաց զսուրբ զառաքեալսն, բարձր:

Ո Հոգիդ ճշմարիտ որ զաստուածային զհրամանն քո զառածն դաւթեան լցեր, արբուցանելով առաքելոց զպարարտութիւն քո ի սուրբ վերնատանն, ողորմեա:

Որ առաքեցար ի Հօրէ կենդանարար վտակ եւ լոյս ճշմարիտ, արբուցանելով նոքօք որդւոց սիօնի զուղխս պարգեւութեան, ողորմ:

Որ կատարեցեր զփափաք ցանկութեան արտից նոցա, որք սպասեալ մնային մեծի գալստեանն քո ի սուր վերնատանն, ողորմ:

Տ Որ ի բեւս բեբեւս անձինս սաւառնեալ եւ Հրացայտ սերոբէից, վերանստեալ տեսչութեամբ խնամես զարարածս, Հոգիդ սուրբ, օրհնեալ ես յարարածոց քոց:

Որ սքանչելապայծառ Հրաշալի ձայնիւ ընդ Հօր եւ ընդ որդւոյ միշտ փառաբանիս, եւ խաղրութեամբ հաճիս յարարածս, Հոգիդ:

Այսօր աստուածային տեսչութեամբ ի վերնատունն հնչեալ հողմաձայն հնչմամբ, եւ զառաքեալսն արբուցեալ բաշխեցար յարարածս, Հոգիդ:

ՀԲ Հոգին սուրբ էր միշտ եւ է եւ եղիցի, ոչ ըն-
ՌՅ կրսեալ եւ ոչ դադարեալ, այլ միշտ ընդ Հօր եւ ընդ որդւոյ կարգեալ եւ բազեալ, եւ միշտ օրհնեալ է ի յաւիտեանս:

Էր միշտ ընդունող արքայ եւ յցուցիչ աստուածացուցիչ, եւ միշտ ընդ հօր եւ ընդ որդւոյ կարգեալ եւ թուեալ, եւ միշտ օրհ:

Մշտաշարժ ինքնաշարժ ինքնիշխան ինքնազօր ամենազօր, վասնզի շնչէ ուր կամի որքան ախորժէ յորժամ եւ որքան, եւ միշտ օրհ:

Ինքն յինքեան նոյն միշտ ընդ որս դասեցաւ աներեւոյթ անժամանակ, անայլայլելի անփոփոխելի, եւ միշտ:

Առանց որքանութեան, առանց որպիսութեան, առանց տեսութեան անշօշափելի, եւ միշտ:

Տէր առաքիչ որոշիչ տանար առնէ ինքն ինքեան, առաջնորդէ զօրացուցանէ որպէս եւ կամի բաժանէ զշնորհս, եւ միշտ:

Կեանք եւ կենդանարար լոյս եւ գոյացուցիչ լուսոյ, ինքն բարի աղբիւր բարութեան հոգի ուղիղ առաջնորդական, եւ միշտ:

Հոգի զօրութեան եւ երկիւղի, որով հայր ճանաչի եւ որդի փառաւորի, որոց մի կարգ մի պատիւ մի երկրպագութիւն, կատարելութիւն սրբութեան, եւ միշտ:

---

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Ո՛վ սուրբ հոգի, որ հայր Աստուծմէ չարժած աղբիւրէն անհատնում կերպով հոսելով գետի մը պէս՝ կեանք կուտաս. օրհնեա՜լ ըլլաս, ո՛վ ճշմարիտ հոգի:*

*Այսօր ճշմարիտ Աստուածը, հոգին, սուրբ վերնատունը գալով, առաքեալները հրաշքով զարդարեց քու փառքիդ լուսովը:*

*Աշակերտները լեցուելով հրճուեցնող ուրախութեամբ՝ փառք տալով կ՚երգէին. օրհնեա՜լ ըլլաս, ո՛վ գերազանց լոյս ։*

*Երբ բանն Աստուած երկինք համբարձաւ և հայր Աստուծոյ աջ կողմը նստաւ, առաքեալները ուրախութեամբ երկրպագութիւն կ՚ընէին, փառք տալով հայր Աստուծոյ՝ որ բանն Աստուածը ղրկեց ։*

*Սուրբերուն (նոր հաւատացեալներուն) խումբերը խորհրդաւոր վերնատունը հաւաքուելով հոգիին կ՚սպասէին աչքերնին երկինք վերցուցած, փառք ։*

*Լոյսին կենդանատու աղբիւրը (սուրբ հոգին) յանկարծ հասաւ և մեծ ձայնով թափուելով անմահ կեանքի լուսով զարդարեց առաքեալները, որ փառք կուտային Աստուծոյ, որ հոգին ղրկեց ։*

Հ *Ո՛վ սուրբ հոգի, որ մէկէ մը ստեղծուած չես, և հայր Աստուծոյ հետ նոյն փառքը ունիս, և անոր ծոցէն ծնող բանն Աստուծոյ հետ ալ նոյն էութիւնը, ո՛վ մեր հայրերուն անըմբռնելի Աստուածը ։*

*Չորս կերպարանք ունեցող հրեշտակներէն կազմուած քու աթոռիդ վրայ կը հանգչիս, և անոնց հրեղէն լեզուներով կ՚օրհնուիս սո՜ւրբ, սո՜ւրբ, սո՜ւրբ աղաղակով, ո՛վ ։*

*Այսօր մարդասիրութեամբ և իբրև Աստուած սուրբ վերնատունը իջնելով, հրեղէն լեզուները բաժնեցիր, և առաքեալներուն վրայ հանգչեցար, ո՛վ ։*

*Օրհնեցէք տէրը, փառաւորեցէք ճշմարիտ հոգին Աստուած ։*

*Մխիթարիչ սուրբ հոգին, որ միածին որդիին տեղ հայր Աստուծմէն իջնելով հրաշալի կերպով զարդարեց առաքեալները, փառաւոր ։*

Երկնային Զօրութիւնները սուրբ վերնատունին վրայ թափելով, իբրև Աստուած զարդարեց և կրակով զգե-նեց սուրբ առաքեալները, փառաւոր :

Ո Ո՜վ ճշմարիտ Հոգի, կատարեցիր քու աստուածային պատգամդ, Դաւիթին խօսքը, քու պարգե-ւացնող շնորհներդ խմցնելով աշակերտներուն՝ սուրբ վերնատունին մէջ. ողորմէ՛ :

Հօրմէն զրկուեցար իբրև, Մխիթարու հուր և իբրև ճշմարիտ լոյս, անոնց (առաքեալներուն) միջոցաւ Սիոնի (քրիստոնէական եկեղեցիին զաւակներուն) խմցնելով քու փափուկ ջուրերդ (շնորհներդ), ողորմէ՛ :

Կատարեցիր անոնց սիրտերուն փափաքն ու ցանկութիւնը, որ սուրբ վերնատունին մէջ կ'սպասէին քու մեծ գալուստիդ. ողորմէ՛ :

Տ Ո՜վ սուրբ Հոգի, որ աննիւթապէս թեթև թևերու վրայ կը թռչիս և կրակէ ցայտեցնող սերոբէ-ներուդ վրայ կը նստիս և կը նախախնամես արարած-ները, օրհնեալ ըլլաս քու արարածներէդ :

Անքննելի, պայծառ, հրաշալի ձայնով միշտ կը փառաւորուիս Հայր Աստուծոյ և որդի Աստուծոյ հետ, և քաղցրութեամբ կը նայիս արարածներուն. օրհ :

Այսօր աստուածային կարգադրութեամբ վերնա-տունին մէջ հնչեցիր հովի մը պէս, և առաքեալները կշտացնելով արարածներուն բաշխուեցար. օրհ :

ԺԲ Սուրբ Հոգին միշտ կար, կայ և պիտի կենայ, սկիզբ ունեցած չէ, դադրած ալ չէ, այլ միշտ Հայր Աստուծոյ և որդի Աստուծոյ հետ դասաւորուած և հաշտուած է, և ի սպառ կ'օրհնուի :

Միշտ կ'ընդունի (իրեն դիմողները), կը սիրէ,

կը լեցնէ և կ'առատացնէ, և միշտ հայր Աստուծոյ և որդի ։

Միշտ կը շարժի, ինքն իրմէ կը շարժի, բացարձակ տէր է, ուրիշի անկարօտ է, ամէն բանի կարող է, ուստիեւ կը փչէ ո՛ւր որ ուզէ, ո՛րքան մարդոց վրայ որ հաճի, ե՛րբ ուզէ և ո՛ր չափով որ ուզէ, և ի սպառ ։

Ինք իրեն մէջ, միշտ նո՛յն է որոնց հետ որ դասաւորուեցաւ, չի տեւանուիր, սկիզբ և վերջ չունի, չի փոխուիր, չայլայլիր, և ի սպառ ։

Քանակութիւն չունի, մասնաւոր որպիսութիւն չունի, տեսութեան տակ չիյնար, չի չօշափուիր, և ի սպառ ։

Տէր է, կը ղրկէ, կը զատէ, ինք իրեն համար բնակարան կ'ընէ (մարդիկը), կ'առաջնորդէ, կը զօրացնէ, իր ուզած կերպով շնորհք կը բաժնէ, և ի սպառ ։

Կեանք է, կեանք կուտայ, լոյս կը մատակարարէ, և լոյսը ի՛նք ստեղծած է, ինք բարի է, բարութիւնը իրմէ կը հոսի, ուղիղ կերպով կ'առաջնորդէ, և ի սպառ ։

Զօրութեան, երկիւղածութեան հոգի է, իրմով հայր Աստուած կը ճանչցուի, և որդի Աստուած կը փառաւորուի, որոնց կարգը մէկ է, պատիւը մէկ է, պաշտամունքը մէկ է, իբրև սուրբ կատարեալ են, և ի սպառ ։

—⊙ ՎԵՐՋ ⊙—

